…ԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՁԳ.

# ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ
# ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑԻՈՅ
## ԸՆԴԴԷՄ ԱՂԱՆԴՈՑ ՄԱՏԵՆԻՆ

---

ԳՐԵՑ
Հ. ԳՐԻԳՈՐԻՍ Ծ. Վ. ԳԱԼԷՄՔԵԱՐԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1919

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Փր. 10.—

ԾԸ[1]. Ակինեան Ն., Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 1—60:

ԾԸ[2]. Աճառեան Հր., Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61—106: Փր. 3.—

ԾԹ. Ակինեան Ն., Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը: 1909: Էջ ԾԲ+87: Փր. 2.—

Կ. Ակինեան Ն., Կիւրիոն Կաթողիկոս Վրաց: 1910: Էջ ԻԸ+315: Փր. 7.—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը: 1910: Էջ 73: Փր. 2.—

ԿԲ. Գիւտէրբոք Կ., Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանոս ժամանակ: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը+162: Փր. 4.—

ԿԳ. Սամուէլեան Խ., Մխիթար Գօշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը: 1911: Էջ ԺԲ+344: Փր. 7.—

ԿԴ. Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան: Ա. 1911: Էջ Ը+97: Փր. 2.—

ԿԵ[1]. Յովնանեան Հ. Ղ. Վ., Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն. Էջ 1–48:

ԿԵ[2]. Ակինեան Ն., Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք: 1911: Էջ 49-117: Փր. 3.—

ԿԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., Գրիգոր Մագիստրոսի "Գամագտականի" ամբողջական լուծումը: 1912: Էջ ԺԱ+162: Փր. 3.—

ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

# ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑԻՈՅ

## ԸՆԴԴԷՄ ԱՂԱՆԴՈՑ ՄԱՏԵՆԻՆ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՁԳ.

# ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

# ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑԻՈՅ

## ԸՆԴԴԷՄ ԱՂԱՆԴՈՑ ՄԱՏԵՆԻՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1919

Noragoyn aghberk' Eznkay koghpatswoy
Ĕnddem aghandots' matenin

# ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

# ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑՒՈՅ

## ԸՆԴԴԷՄ ԱՂԱՆԴՈՑ ՄԱՏԵՆԻՆ

---

ԳՐԵՑ

Հ. ԳՐԻԳՈՐԻՍ Ծ. Վ. ԳԱԼԷՄՔԵԱՐԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1919

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Առանց տարակուսի Եզնկայ “Ընդդէմ աղանդոց„ մատենենին քննութեան նոր ուղղութիւն տուին 1893էն ի վեր Հ. Գալէմքեարեանի “Նորագոյն աղբերք„, որոնք լոյս տեսան Հանդէս Ամսօրեայի մէջ (1893, էջ 289—294, 345—351, 359—366. 1894, էջ 6—11, 87—90, 277—278. 1896, էջ 270—273)։ Այն յօդուածները ժամանակին նաեւ արտատպուած էին՝ առանձին հատորով աւելի ընդարձակ շրջանի ծանօթանալու վախճանաւ։ Եթէ այժմ 20 եւ աւելի տարիներու յապաղմանէ ետքը միայն հրապարակ կ՚ելլէ հատորս՝ պատճառը բազմահմուտ հեղինակին բաղձանքն էր “Նորագոյն աղբիւրներու„ թիւն դեռ քանի մը գլուխներով ալ ճոխացնել։ Բայց այս բաղձանքն իրականացնել չներեցին 1897էն ի վեր մինչեւ տարաժամ մահը († 20 Մայիս 1917) մասամբ գործերն, որոնցմով միշտ ծանրաբեռնուած էր, եւ մասամբ Նորագոյն շրջանի վերաբերեալ պատմական ուսումնասիրութիւնք, որոնց այնպէս անձնանուիրութեամբ միջամուխ եղած էր կենաց վերջին երկոտասանեակին։

Յատկապէս մտադրութիւն ունէր Հեղինակն ուսումնասիրել Եզնկայ մատենին ա-

ղերուն յանուն Կիւրեղ Աղեքսանդրացւոյ հասած "Արարածոց Մեկնութեան" հետ, որոնց մէջ նմանութիւններ ի վեր հանած էր, եւ դարձեալ Սուրբ Գրոց տեղիք առ Եզնկայ[1]։ Գժբախտաբար անտիպ մնացորդաց մէջ այս խնդիրներն ուրուագծուած միայն գտանք՝ առանց ուսումնասիրութեան, ուստի եւ կարելի չեղաւ զետեղել հատորիս մէջ։ Սակայն այս պակասը հատորիս ամբողջութեան բիծ չի դներ։

Հեղինակիս բուռն ցանկութիւնն էր հատորիս հրատարակութենէն ետքը լոյս հանել Եզնկայ "Ընդդէմ աղանդոց" մատեանն քննութեամբ, առ որ բնագիր մ'ալ պատրաստած էր (հմմտ. Յաւելուած, էջ 21)· բայց 1898ին Վիեննայէն հեռանալով չկրցաւ ի գլուխ հանել։ Այս եւ ուրիշ խնդիրք կը մնան յանձնուած Մխիթարեան Նոր ոյժերու։

1897էն ի վեր առանձին կերպով պարապած կը գտնենք զՀեղինակն Եզնկայ գործոյն գերմաներէն թարգմանութեամբ՝ իբրեւ խորհրդատու եւ քաջալերիչ Joh. Schmidի. որովհետեւ գերմաներէն թարգմանութեանս սկիզբը դրուած Ներածութիւնն Հ. Գալէմքեարեանի քննութեանց վրայ յեցած հետաքրքրական նորութիւններ կ'ընծայէր Եզնկայ կենսագրութեան եւ գործոյն նկատմամբ, 1901ին փութաց Հ. Գալէմքեարեան զայն հայերէն թարգ-

---

1 Հ. Գալէմքեարեանի աշխատութեամբ կազմուած է գերմաներէն թարգմանութեան վերջը դրուած Ս. Գրոց տեղեաց պատկերը։

մանել, որ նախ Հանդ. Ամս. 1901, էջ 102—108, 181—184 եւ 210—211 լոյս տեսաւ (նոյն թարգմանութեան վրայ եւրոպացի մասնագէտներու տուած քննադատութեանց հետ ի միասին) եւ ապա արտատպուեցաւ իբրեւ Յաւելուած "Նորագոյն աղբիւրներու„:

Այսու առաջիկայ հատորս կը ներկայացնէ ամփոփ տեսութիւն մը մինչեւ 1900 Եզնկայ Մատենին շուրջը յուզուած խնդրոց վրայ:

Այս թուականէս վերջ մեծ փոփոխութիւն մը չկրեց Եզնկայ քննութիւնը: Յամբողջութիւն Հ. Գալէմքեարեանի աշխատութեան ի մէջ կը բերեմ հոս համառօտիւ լոյս տեսած նոր քննութեանց կարեւոր եզրակացութիւնք:

1900 Մայիս 12ին հրապարակ հանեց ի Պարիս A. Carrière 4 էջ վիմագրեալ գրուածք մը, որուն վերնագիրն է „La naissance d'Ormizd et d'Ahriman d'après Théodore Bar Khouni, Eznik et Elisée": Ասոր թարգմանութիւնը նոյն տարին տուաւ Հ. Տաշեան Հանդէս Ամսօրեայի մէջ (1900, էջ 183—186 "Եզնկայ մէկ նոր աղբիւրը ըստ Ա. Կարիէրի[1]„) հետեւեալ ազդարարութեամբ. "Գրուածքն լոկ բնագրական համեմատութիւններ կը պարունակէ երեք հեղինակաց, թարգմանութեամբ ասորերէն բնագրին Թէոդորայ եւ մէկ երկու ծանօթութիւններով: Ուսումնասիրութիւն կամ քննադատական խորհրդածութիւններ չէ կցած

[1] Գաղղ. բնագրին թարգմանութիւնն լոյս տեսաւ նաեւ Բանասէր 1900, էջ 156-160:

հայագէտը, բայց խոստում տուած է “Հանդիսիս,, համար խաւրել համառօտ ուսումնասիրութիւն մը.

“...Առ այժմ նամակի մը մէջ (9 Յունիս) մտադիր կ'ընէ հայագէտն, որ այս բնագիրներուն համեմատութենէն յառաջ կու գան ինքնին առ ժամս (provisoirement) հետեւեալ եզրակացութիւնքն։

1. Ասորի բնագիրը (Ը. դարէն) քաղուածք մըն է թեթեւ փոփոխութեամբ՝ շատ աւելի հնագոյն բնագրի մը, որ հաւանօրէն պահլաւերէնէ թարգմանուած էր։,,

2. “Եզնիկ շատ աւելի հաւատարիմ թարգմանութիւն մը կու տայ այն հնագոյն բնագրին։ Արդեօք “Արհմն,, անունն՝ որ այնպէս զարմանալի ձեւ մըն է, տառական փոխադրութիւն չէ՞ ܐܗܪܡܢ) ասորականին՝ առանց ձայնաւորի կարդացուած,,։

3. “Եղիշէ, ըստ ամենայն հաւանականութեան, առ Միհր-Ներսեհ գրուած նամակին մէջ՝ քաղած է Եզնիկէն,, (Հանդ. Ամս. անդ, էջ 183)։

Կարիէրի խոստացած ուսումնասիրութիւնը լոյս չտեսաւ։

Zeitschrift für armenische Philologie թերթին մէջ (I, p. 149—163) 1902, Մարտին լոյս տեսաւ H. Gelzerի գրչէն յօդուած մը „Eznik und die Entwicklung des persischen Religionssystems“, գրուած առթիւ

գերմաներէն թարգմանութեան։ Գելցէր կը խօսի հոս Բ. գրոց վրայ, ուր ի մէջ այլոց կը գրէ (էջ 152). "Եզնիկ հոս մեզի պարսից հիմնական վարդապետութեանց համատուր բովանդակութիւնն կը ներկայացընէ, որ գրեթէ բոլոր մանրամասնութեամբք կը նոյնանայ այն հաւատոյ դաւանութեան հետ, զոր Միհր-Ներսեհ խաւրեց Հայոց (Եղիշէ, էջ 21, տպ. Վենետ. 1859)։ Առանց ամենեւին խնդիր ընելու՝ Եզնիկ իւր վիճմանց հիմ ընտրած է Միհր-Ներսեհի հրովարտակը, որուն հերքման Հայոց միւս եպիսկոպոսներու հետ ինքն ալ մասնակցած էր", Ասկէ կը հետեւցնէ Գելցէր թէ Եզնկայ ներկայացուցած պարսից քէշի դրութիւնն՝ մոգերու ժամանակակից վարդապետութիւնն է։

Հաստատութեանս դէմ բողոքեց Ա. Մէյէ Պարիսի Ասիական Ընկերութեան 9 Մայիս 1902 նիստի մէջ (քաղուածաբար հրտ. Բանասէր 1902, էջ 141—142)։ Ըստ Մէյէի Միհր-Ներսեհի հրովարտակն առ Եղիշէի կախում ունի Եզնկէն։

Գ. Տէր-Մկրտչեան եւ Հ. Աճառեան 1902ին Էջմիածնի Թ. 1111 (կար. Ցուց. 1091) ձեռագրին մէջ յերեւան հանեցին "Ընդդէմ աղանդոց" մատենին միակ օրինակն, որուն վրայէն կատարուած է Զմիւռնիոյ առաջին հրատարակութիւնն, եւ որ կը կարծուէր թէ հրդեհի մը ճարակ եղած ըլլայ։ Գիւտին հեղինակք փութացին բարեխիղճ համեմատութեան ենթարկել ձեռագիրն Վենետիկի 1826ի տպագրութեան

հետ. արդիւնքն հրատարակուեցաւ նախ Հանդէս Ամսօրեայի մէջ 1904ին եւ նոյն տարին առանձին հատորով ալ լոյս տեսաւ (Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ Նորագիւտ ձեռագրին. կազմեցին Գ. Տէր-Մկրտչեան եւ Հ. Ց. Աճառեան, Վիեննա 1904)։

Ըստ այս քննութեան ձեռագիրն ընդօրինակած է Լուսեր գրիչն ի վայելումն Ներսէս վարդապետի 1280 թուականին։ Թէեւ Աճառեան ձեռագրին մէջ տեղւոյ մասին որ եւ իցէ ակնարկութիւն չէ գտած, բայց յիշատակագրութեանց մէջ յիշուած անձինք կռուան կ՚ընծայեն ինձ հաստատելու թէ օրինակութեան տեղն է Գլաձորի համբաւաւոր մենաստանն եւ ստացիչն է Ներսէս Մշեցին՝ Եսայեայ Նչեցւոյ ուսուցիչն եւ հիմնադիրն Վայոց ձորի նոր դպրոցին։ Ուստի Եզնկայ մատենիս հետաքրքրուողն աննշան անձ մը եղած չէ. հաւանօրէն Եզնկայ հետքերն պիտի ըլլեն յերեւան նաեւ Եսայի Նչեցւոյ գրուածոց մէջ — որուն մատանց տողերն կան յիշատակագրութեանց մէջ (թղ. 6բ) — բայց դարձեալ ծանօթ միակ օրինակի միջնորդութեամբ։

Ըստ վկայութեան Աճառեանի (էջ 3) ‘‘գրիչը շատ զգոյշ, շատ հոգատար եւ շատ խնամոտ գրիչ է,,։ Քննիչք երկրորդ ձեռքէ սրբագրութիւններ ալ կը նշմարեն ձեռագրին մէջ։ Աճառեան կցած է իւր Համեմատութեանց երեք գլուխ ալ (‘‘Քննութիւն յիշեալ համեմատութեանց, էջ 70—82, Ձեռագրական

սրբագրութիւններ Եզնկայ մէջ[1], էջ 83—96 եւ Եզնկայ կորսուած մասերը, էջ 96—104), որոնք հետաքրքրական են։

Կ. Պոլսոյ 1879ի տպագրութենէն ետքն Եզնկայ բնագիրն նոր տպագրութիւն չտեսաւ։ Յաւելուած, էջ 21 յիշուած "Ժ. տպագր. քննական,, [զայս պատրաստած է Հ. Գալէմքեարեան] լոյս տեսաւ։

1913ին ի Տփղիս լոյս տեսաւ Բ. գիրքն "Եզնիկ Կողբացի՝ եղծ քէշին Պարսից,, դպրոցական գործածութեան համար, առանց որ եւ իցէ ծանօթութեան։

Հատորս հանգուցեալ հեղինակին միւս բազմաթիւ աշխատութեանց[2] կից թող յուշարար մահարձան մը կանգնի անոր շիրմին վրայ, պատմելու դարուց աշխատասէր գրչին արդիւնքը հայ գրականութեան համար։

Վիեննա, 8 Դեկտ. 1917։

Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ

---

1 Այսպիսի սրբագրութիւններ կամ ենթադրութիւններ բաւական թուով ելան հրապարակ այլ եւ այլ թերթերու մէջ. զորոնք մի առ մի յիշել աւելորդ է (հմմտ. Մասիս 1900 Դուրեան Եղիշէ եպիսկոպոսի եւ Հ. Գալէմքեարեանի վիճաբանութիւնք եւ այլն)։

2 Ցանկ մը հեղինակին գրաւոր աշխատասիրութեանց տես Գալէմքեարեան Հ. Գ.՝ Կենսագրութիւններ 2 հայ պատրիարքներու եւ 10 եպիսկոպոսներու. Վիեննա 1915, էջ 379—384։ Համառօտ ակնարկ մը անոր գրական եւ գործնական գործունէութեան վրայ՝ Հանդէս Ամսօրեայ 1917, էջ 113–130։

# ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

## ԵԶՆԿԱՅ ԿՈՂԲԱՑՒՈՅ

---

*Եզնիկ՝ Ե. դարու մեր Թարգմանչաց մէջ ամենէն բախտաւորը գտնուեցաւ ցայսօր՝ ժամանակիս քննական հետազօտութեան առջեւը։ Իւր մասին եղած յիշատակութիւններն առ Կորեան*[1] *եւ առ Մ. Խորենացւոյ*[2] *միշտ մեծարանք եւ ակնածութիւն ազդեցին յաջորդ դարերուն։ Եւ երբ Եզնկայ անուամբ գրութիւն մ'ալ գտնուեցաւ եւ հրատարակեցաւ,*[3] *ալ այնուհետեւ Եզնիկ բարձէ ի բարձ բարձրացաւ՝ իւր գործոյն մէջ ցուցած աստուածաբանական եւ փիլիսոփայական խորին հմտութեանն համար։ Նայման,*[4] *Վինտիշման,*[5] *տը Ֆլորիվալ,*[6] *Արման տը*

---

1 Վենետ. 1833, էջ 20 եւ 21։

2 Վենետ. 1843, էջ 258։

3 Գիրք ընդդիմութեանց արարեալ ի սրբոյ Եզնկայ Կողբացւոյ, Իզմիր 1762—3։ Եզնկայ Կողբացւոյ Եղծ աղանդոց, Վենետ. 1826 (զայս կը գործածենք մենք). 1850։ Փարիզ. 1860։ Կ. Պոլիս, 1869։ Վերջինք Վենետիկի տպագրութեան վրայէն են։

4 C. F. Neumann, „Zeitschr.„ f. d. hist. Theologie." Bd. IV. 1834, S. 41; »Hermes«, Bd. 33.

5 F. W(indischmann), Recension über Hortig's Handbuch der christlichen Kirchengeschichte, neubearbeitet von J. J. Döllinger: „Bayerische Annalen für Vaterlandskunde und Literatur." II. 25. Jan. 1834.

6 P. E. Levaillant de Florival, Coup d'oeil sur l'Arm. Paris, 1847, p. 1. Réceptes du Docteur Eznig; — Réfutation des différentes sectes des païens, par Eznig, Paris, 1853.

Վիքքերինկ,[1] Տիւլորիէ,[2] Կ. Եզեան,[3] Ռըվիյօն,[4] Վենետացի Մխիթարեան Վ. մը,[5] Հառնաք[6] Անգղիացի ոմն,[7] Մարդէն,[8] Ֆէլթթէր,[9] Հ. Գարեգին,[10] մին քան զմիւսն աւելի աշխատեցան բացատրութիւններ գտնել Եզնկայ աստուածաբանական-փիլիսոփայական հմտութեանց չափը բացատրելու. մինչեւ Ֆէլթթէր Եզնկայ այս փոքրիկ գործը "Հայրագիտական գրականութեան մէջ եզական" հրատարակեց։

Եզնկայ փառաց "Նախանձորդ" մը մինչեւ այս ժամանակ չգտնուեցաւ բնաւ։ Մեր նախնի մատենագրական երկերուն վրայ լոկ զմայլելու ժամանակը տակաւին անցած չէր։ Հազիւ վերջերս սկիզբ եղաւ մեր մատենագրութեան սկզբան մթին կէտերը լուսաւորելու համար՝ անաչառ քննութենէ անցընել ամենայն ինչ. եւ որչափ նորութիւնք սկսան յերեւան ելլել։ Միամիտ

---

1 Armand de Wickering, Eznig de Goghpe . . . et son traducteur français: »Revue de l'Orient" t. V. p. 207—216.

2 E. Dulaurier, Cosmogonie des Perses, d'après Eznig; „Revue de l'Orient" Paris, 1857, Avril, p. 253—62.

3 Ռուսերէն՝ Հին մոգերու վարդապետութեան վրայ, Ս. Պետերբ. 1858։

4 N. Revillont, Le traité contre Marcion: „Journal asiatique," VII. 5, 515.

5 Տես V. Langlois, Collection, II. Paris, 1869, p. 371.

6 A. Harnack, Geschichte der Marcionitischen Kirchen; I. Armenische Marcioniten des V. Jahrhunderts. Der Bericht des Eznig: „Zeitschrift für wissenschaftliche Theologie", XIX 1876, Leipzig, S. 84—102; „Zeitschrift für Kirchengeschichte,, 1876, 1, 128.

7 Տես Հ. Գարեգին, Հայկկն. հին դպրութիւն, Բ. տպ. Վենետ. 1886, էջ 290։

8 P. P. Martin, Introduction, II. Paris, 1884.

9 J. Nirschl, Lehrbuch der Patrologie und Patristik, III. Mainz, 1885, S. 231—39.

10 Անդ։

վստահութիւնն այլ եւս սասանեցաւ, կասկածները սկսան արդարանալ, եւ ողջամիտ մատենագիր մը չի կրնար այսուհետեւ առանց տատամսելու՝ ոտքը տակաւին չքննուած տեղ մը դնել: Քանի որ այս չկար, միամտաբար կը մոլորուէր, եւ երեւակայեալ ճշմարտութիւններ հաստատելու համար կը դիմուէր հեղինակներու, եւ ասոնցմէ վկայութիւններ կը մուրացուէր՝ որոնք նոյն հեղինակներու չէին:

Զեզնիկ[1] իբր Ե. դարու հայերէն լեզուի ծաղիկը ներկայացուցին Ոսկեդարեանք, որ քիչ շատ հակառակութիւն կրելէն ետեւ՝ այս օրս ընդհանրապէս ընդունուած է — գէթ տեսականապէս, — եւ նորագոյն գիտեր եւ համեմատութիւններ միայն զմայլմամբ կը լնուն զմարդ՝ անոր կանոնաւոր քերականութեամբը, ճկուն եւ հուժկու բացատրութեամբը: Իսկ գրքին բովանդակութի՜նը:

Եզնկայ մասին եղած հրատարակութեանց մէջ առաջին անգամ Հ. Գարեգին Վ.[2] միտ դնել տուաւ՝ թէ "Եպիփանու Հերձուածոց դէմ գրած մատենին մէջ՝ շատ տեղ Պարսից աղանդոյն եւ Մարկիոնի դէմ խօսած ատեն՝ համաձայն կը գտնենք զնա ընդ Եզնկայ.„ (— ինչո՞ւ ոչ՝ զԵզնիկ ընդ Եպիփանու —.) թէեւ մենք "Պարսից

---

1 Մենք Եզնկայ անուամբ միայն "Ընդդէմ (կամ Յանդիմանութիւն = Եղծ) աղանդոց„ գործը կը նկատենք: Վերջին ատեններ իրեն տրուած քանի մը գործերն, որոնց մեծագոյն մասին վրայէն ստուգիւ ջնջելի է Եզնկայ անունը, մեզի համար տակաւին քննելի են, եւ այժմ մեր նիւթէն դուրս:

2 Անդ, էջ 285, ծան. 1:

աղանդոյն եւ Մարկիոնի„ մասերուն մէջ՝ Եպիփանու եւ Եզնկայ համաձայնութիւնը տեղ մ'ալ չկրցանք գտնել՝ բաց ի Մարկիոնի կենսագրութենէն, որուն վրայ յետոյ։

Աւելի յաջող եւ արդիւնաւոր եղան Հ. Յ. Թորոսեան Վ.ի քննութիւնքն,[1] որ Եզնկայ գովելի մասանց հետ՝ դիտել տուաւ նաեւ այս պարագան, եւ ի մասնաւորի Ս. Եպիփանու “Ընդդէմ Հերձուածոց„ գրքէն բառական փոխառութիւնները, եւ տեղ տեղ Ս. Բարսղի “Վեցօրէից մեկնութենէն„ կախում ունենալը։ Հ. Թորոսեանի դիտել տուած Եզնկայ անկապակցութիւնը, շատ տեղ աննշանակ խօսիլը եւ հակառակ եզրակացութեանց հասնիլը՝ (էջ 19) առանց ընդօրինակողներու վրայ — ըստ սովորութեան — մեղքը բառնալու, շատ պարզ կը լուծուէր, եթէ կարելի երեւար իրեն ենթադրել՝ որ Եզնիկ այլեւայլ աղբիւրներ ունի իւր գործոց, զորոնք մերթ անարատ պահելով, մերթ համառօտելով եւ փոփոխելով յիշեալ կերպարանաց բերած է տեղ տեղ։ Այս ենթադրութիւնը մեր յաջորդ տողերով՝ իբրեւ իրականութիւն յերեւան կու գայ, եւ Հ. Թորոսեանի (էջ 200—1) յայտնած ուղիղ դիտողութիւններն իրենց մեկնութիւնը կը գտնեն։

Հ. Թորոսեան այս գիւտով ցուցուց յԵպիփանէ փոխառութիւնն Եզնկայ էջ 204 տող 6էն մինչեւ 208 տող 6, եւ էջ 296 տող 18էն

[1] Բազմավէպ, 1889, էջ 14, 108, 199, 313, 385։

մինչեւ էջ 297 տող 12, որ է ընդ ամէնն հինգ երես: Եզնկայ այս փոխառեալ կտորները դարձեալ յառաջ բերաւ Հ. Յ. Տաշեան,[1] "Միաբանի„ հրատարակած "Գիրք հերձուածոց„ գրութեան վրայ խօսելու առթիւ:

Այս հինգ էջերու բնագրին գիւտը կարծես բաւական համարուեցաւ, եւ հակառակ եղած ազդարարութեան՝[2] ուրիշ բնագիրներու գիւտն անհնարին երեւցաւ:[3]

Հ. Թորոսեանի քիչ մ՚ազատ քննադատական տեսութիւններն ու գիւտերն հաճոյ չերեւցան Վ. Հ. Վարդան Սոմունճեանին՝ որ — այսուհետեւ կարող ենք ըսել — վերջին գովեստի ճառը (panégyrique) գրեց Եզնկայ վրայ,[4] որուն՝ ըստ օրինաց բնութեան, արձագանգը տուին կովկասու մութ խորերը: Հ. Սոմունճեան յենլով Եզնկայ սա խօսքին վրայ, (էջ 22) թէ "Մեզ հարկ եղեւ ի սիրոյ բարեկամաց, եւ յոչ ուղիղ հայելոյ ընդդիմակացն, ըստ մերում տկարութեան ապաւինեալ յԱստուծոյ շնորհսն, մտել ի խնդիր ճառիցս„ (չորից, — կ՚ուզէ Հ. Սոմունճեան յաւելեալ տեսնել,) հաստատեց եւ ցուցուց, որ "տեսուչք եւ հովիւք եկեղեցւոյն Հայոց„ ժողովով եւ խորհրդով յանձնեցին Եզնկայ գրել իւր չորս ճառերը: — Այդ յանձնարարութեան անգոյութեան եւ այն

---

[1] Հանդէս Ամսօրեայ, 1892, թ. 10, 11:

[2] Անդ, 1891 թ. 8 (էջ 249բ, վերջին տող):

[3] Բազմավէպ, 1891, Յաւելուած Դեկտ.ի, էջ 12 տող 29:

[4] Անդ, 1893, էջք 8, 161, 273, 329, 353:

ձեւով գովասանութեան՝ Եզնկայ բնաւ յարմար չըլլալուն՝ ինքն Եզնիկ պիտի վկայէ յաջորդ համեմատութեանց մէջ։ Իսկ Հ. Թորոսեանի մատնացոյց ըրած Եզնկայ հինգ էջ փոխառութիւնն, զոր Հ. Սոմունճեան իբր թէ դժուարելով տեսնելէն ետեւ՝ Եզնկայ գրքէն դուրս նետել ուզեց իբրեւ օտարամուտ, հանդերձ Ս. Բարսղի մասերով, իրաւամբ կը վերադարձուին Եզնկայ անձին՝ իբրեւ փոքրիկ եւ աւելի անմեղ փոխառութիւն մը, համեմատութեամբ մեծ եւ գիտակցական փոխառութեանց։

---

Ասկէ հինգ տարի յառաջ, երբ կրօնակից հանգուցեալ († 1886) Հ. Քերովբէ Վ. Սպեննեանի "Ուսումն դասական հայերէն լեզուի„ ձեռագիր աշխատասիրութիւնը կը կարդայի, մտադրութիւնս գրգռեցաւ յէջն 175՝ Եզնկայ վրայ գրած սա խօսքէն. "Թէպէտ եւ ի Նախնի Հարց Յունաց կամ ի Մեթոդիոսէ եւ յայլոց ուրեք ուրեք ածէ մատենագիրս առանց կոչման ի "Յանդիմանութեան„ անդ, սակայն բոլորն է գործ հանճարոյ մատենագրին։„ Անմիջապէս աչքէ անցուցի Ս. Մեթոդիոսի գրութիւններն, որոնցմէ մտադրութիւնս գրաւեց Περὶ αὐτεξουσίου (Վասն անձնիշխանութեան) գիրքը, եւ առաջին ընթերցումը ցուցուց, որ "Վասն անձիշխանութեան„ գործոյն յունարէն թերի բնագիրն ամբողջ նոյն է Եզնկայ էջ 19 տող 8էն սկսեալ հատուածներուն հետ։ Քննութեանս

շարունակութիւնն ուրիշ նոր աղբիւրներ ալ յերեւան հանեց։

Եզնկայ "Ընդդէմ աղանդոց" գործոյն կարգին համեմատ՝ խօսինք սոյն աղբերաց վրայ։

## 1.

*Արիստիդէս իմաստասէր Աթենացի:*

Ծանօթ է բանասիրաց՝ որ 1878ին Վենետիկի Մխիթարեանց հրատարակած Արիստիդեայ Ջատագովութեան հայերէն թարգմանութեան քանի մը փոքրիկ հատակոտորներն որչափ աղմուկ հանեցին գիտնական աշխարհի մէջ։ Այս Ջատագովութեան ամբողջական ասորի թարգմանութիւնը J. Rendel Harris 1889ին գտաւ Սինայի լերան Կատարինեայ վանքին մէջ եւ հրատարակեց,[1] որուն հետ միասին ծանօթացուց J. A. Robinson նաեւ յունարէն բնագրէն կտորներ՝ քաղուած "Պատմութիւն Բարղամու եւ Յովասափայ" գրքէն։ Այնուհետեւ շատ բան գրուեցաւ Արիստիդեայ Ջատագովութեան վրայ։ Այս 1893 տարին R. Seeberg հրատարակեց ընդարձակ ուսումնասիրութիւն մը Արիստիդեայ Ջատագովութեան[2] վրայ, եւ ասորի թարգմանութեան գերմաներէն թարգմանու-

---

1 Texts and Studies, edited by J. Armitage Robinson, Cambridge, 1891.

2 Th. Zahn, Forschungen z. Geschichte d. neutestamentlichen Kanons, V. Theil, Erlangen und Leipzig, 1893. S. 159. Die Apologie des Aristides, untersucht und wiederhergestellt von R. Seeberg. Ըստ Seebergի (էջ 245, 279) շատ հաւանական է որ Արիստիդէս իւր Ջատագովութիւնը գրած ըլլայ իբր 140ին Յ. Ք. մատուցանելու համար Անտոնինոս Պիոս կայսեր։

թիւնը, եւ ասոր հետ “Բարղամու եւ Յովասափայ Պատմութենէն„ յունարէն բնագրին կտորները վերստին ի լոյս ածեց։

Արդ այս ջատագովութիւնը մեզ կը ներկայանայ իբրեւ գործ մը, զոր Եզնիկ ընթերցած է եւ “Ընդդէմ աղանդոց„ գործոյն համար օգտուած եւ նաեւ փոքրիկ մաս մը մէջէն քաղած է։

Արիստիդէս իւր ջատագովութիւնը կը սկսի այսպէս. Ինքը կը դիտէ երեւելի աշխարհը, որ կը շարժի. եւ կը սկսի շարժիչը փնտռել եւ շարժչին բնութիւնը։ Այս շարժիչն Աստուած կ'անուանէ եւ անոր յատկութիւնները կը թուէ։ Այնուհետեւ կը դառնայ մարդկան՝ զանազանելով բովանդակ մարդկութիւնը չորս խմբի, այն է Բարբարոս, Յոյն, Հրեայ եւ Քրիստոնեայ։ Ըսելէն ետեւ՝ որ Բարբարոսք մոլորեցան եւ տարրերքն Աստուած կարծեցին՝ Դ. հատուածին մէջ Բարբարոսաց վարդապետութեան դէմ կը կռուի։

Եզնիկ իւր “Ընդդէմ Աղանդոց„ գրութեան սկիզբը կ'ընէ նոյնպէս զԱստուած փնտռելով, եւ Ա. հատածին մէջ Աստուծոյ բնութեան յատկութիւնները կը թուէ։ Այնուհետեւ Բ. հատածին մէջ կը սկսի Յունաց, հեթանոսաց, արանցն մոգուց եւ հերձուածողաց դրութիւնները քննել, այն է տարբերաց քննութիւն ընել, որ կը շարունակուի Գ. հատուածին մէջ։

Արիստիդեայ եւ Եզնկայ գաղափարաց ընթացքը նոյն է երկու գրութեանց սկիզբը,

թէեւ չկայ բնաւ մինչեւ այս Գ. Հատուածը նոյնպիսի բացատրութիւն մը, եւս առաւել նոյնպիսի խօսք մը երկուքին մէջ։ Սակայն Արիստիդեայ Դ. Հատուածին սկիզբը եւ Եզնկայ Գ. Հատուածին մէջերը (էջ 14) այս հեռաւորութիւնք կու գան կը միանան, եւ ի սկզբան տեսնուած նմանութեան կամ նոյնութեան շատ տկար հաւանականութիւնը մեծապէս կը զօրանայ, եւ Եզնկայ Արիստիդէսէն օգտուած ըլլալը կը ստուգուի։ Վասն զի Եզնիկ էջ 14 "Զիա՞րդ պաշտիցեմք ...„ խօսքէն սկսեալ մինչեւ էջ 16 "...Նոքօք սրբեմք,„ Արիստիդեայ Դ. Հատուածէն քաղուած կ'ըլլէ եւ նոյն իսկ նոյն բառերով խօսքեր կ'առնու՝ փոքրիկ ետեւառաջութիւն մը միայն ընելով։

Հետեւեալ համեմատութիւնը պայծառ կը ցուցընէ մեր ըսածը։ ԶԱրիստիդէս կ'առնունք Seebergի ասորական թարգմանութեան բնագրէն գրաբար դարձընելով. վասն զի Արիստիդեայ Ջատագովութեան նախնեաց թարգմանութեան այս կտորն եւ շարունակութիւնը կը պակսի. իսկ զԵզնիկ՝ Վենետիկի 1826ի տպագրութենէն։ Երկուքին բնագիրներն ալ ամբողջ՝ առանց մաս մը դուրս թողլու՝ յառաջ կը բերենք։

## ԱՐԻՍՏԻԴԷՍ
(Տ.[1] 338—347)։

Դ. Արդ այժմ եկեսցուք, ո՛վ թագաւոր, ի տարերսն իսկ, եւ ցուցցուք՝ եթէ չեն ինչ նոքա աստուածք, այլ արարած անցաւոր եւ փոփոխական, որ եւ ըստ նմանութեան մարդոյ է. իսկ Աստուած անանցական է եւ անփոփոխ եւ անտես, թէպէտ եւ ինքն տեսանէ զամենայն եւ փոխէ եւ փոփոխէ։

2. Արդ, որ զերկիր Աստուած կարծիցեն՝ անդէն իսկ մոլորին. քանզի երկիր բրի եւ տնկի եւ պեղի եւ զաղբ եւ զաղտեղութիւն մարդոյ եւ վայրի եւ ընտանի անասնոց յինքն ընդունի. եւ է երբեք զի անօգուտ լինի. քանզի եթէ ոք այրիցէ զհող, մեռանի. զի ոչ եթէ ի խեցւոյ բուսեալ ինչ իցէ բնաւ։ Եւ դարձեալ, եթէ ջուր ժողովեալ իցէ ուրեք ի վերայ երկրի, երկիր համդերձ պտղովքն իւրովք եղծանի։ Նա աւանիկ եւ մարդիկ եւ անասունք կոխեն, եւ ընդունի յինքն զաղտեղութիւն եւ զարիւն սպանելոց, եւ փորեն եւ լնուն զնա մեռելովք եւ լինի դիր դիականց։

3. Յանհնարից է՝ եթէ սուրբ, սքանչելի, երանելի եւ անփոփոխ բնութիւնն այսպիսի ինչ իւրս յինքն ընդունիցի։ Վասն որոյ ասեմք՝

## ԵԶՆԻԿ (էջ 14—16)։

Ե 161

[Զիա՞րդ պաշտիցեմք...] զերկիր, զոր[2] հանապազ բրեմք, եւ ցանկ կոխեմք եւ զաղբ զմեր եւ զանասնոց մերոց ի նա հեղումք։

---

1 Տ. = Seebergի հրատարակութիւն։

2 Տպ. ունի՝ որ։

եթէ ոչ է երկիր Աստուած, այլ արարած Աստուծոյ:

Ե. Նոյնպէս մոլորեցան եւ Նոքին, որք զՋուր կարծեցին Աստուած լինել. զի Ջուր ի պէտս մարդոյ է եւ ի բազում իրս հնազանդի նմա, զի փոփոխի եւ առնու զաղտեղութիւնսն, եւ անցանէ եւ կորուսանէ զբնութիւնն՝ յորժամ ընդ իրս իրս եփիցի եւ ի գոյնս գոյնս լինիցի, զոր ոչն ունէր: Նա եւ ի ցրտոյ պընդանայ, եւ աղտեղութեամբ մարդկան եւ անասնոց եւ արեամբ սպանելոց խառնեալ միաւորի: 2. Նա եւ յարուեստաւորաց անտի ի մի վայր ամփոփի, զի ընդ անձուկ ինչ անցս անցանիցէ եւ ձգիցի հակառակ իւրոց կամաց, եւ եկեալ հասանիցէ ի պարտէզս եւ յայլ տեղիս, որպէս զի առեալ զաղտեղութիւնս մարդկան արտաքս հանէյք եւ սրբէյք զանձնային աղտեղութիւնն, եւ զպէտս մարդկան լնուցու:

Ե 16[4]

կամ զՋուր՝ զոր հանապազ ըմպեմք եւ զանուշութիւն Նոցա ի ժանտահոտութիւն ի փորի մերում դարձուցանեմք,

եւ զՆերքին եւ զարտաքին աղտեղութիւնս մեր նոքօք սրբեմք:

Վասն որոյ չէ մարթ Ջրոյ Աստուած լինել, այլ գործ Աստուծոյ է եւ մասն աշխարհիս:

3. Նոյնպէս եւ ոչ սակաւ ինչ մոլորեցան՝ որ զՀուր Աստուած լինել կարծեցին. զի եւ այս ի պէտս մարդոյ արարաւ եւ ի բազում իրս հնազանդի նմա, որպէս ի սպասաւորութիւն կերակրոյ եւ դարբնութեան եւ այլոց իրաց, որոց գիտակ իսկ է Մեծվայելչութիւն քո. քանզի Հուր

Ե 5[23]

կամ զՀուր, որում եւ զքեզ իսկ երկրորդ արարիչ կազմեաց յօրինիչն, զի յորժամ կամիցիս վառիցես

քաղաքում օրինակաւ խոփո-
ցանէ եւ եղծանի:
4. Այլ եւ են որ զշնչել հողմոցն վասն գոչելոյն Աստուած լինել ասացին. այլ եւ սոքա մոլորեցան: Քանզի յայտ իսկ է մեզ՝ եթէ հողմք ի ծառայութիւն այլոց են, եւ մերթ գուշէին վարդապետել եւ մերթ առնէին ի գուշակելոյն հրամանաւ այնր՝ որ ի սպասաւորութիւն կազմեաց զնոսա. քանզի վասն մարդոյ արարան յԱստուծոյ, որպէս զի ընուցուն զպէտս ծառոց եւ պտղոց եւ սերմանց, եւ վարիցեն զնաւ ի ծովու՝ որ բերէն զոր ինչ պիտոյն իցէ մարդոյ, անտի ուր գտանին՝ անդր ուր ոչ գտանիցին, որով եւ խնամ տանին մասանց աշխարհի:
5. Եւ քանզի հողմն երբեք երբեք անձէ եւ նուազէ, է՛ ուրեք զի շահս առնէ, եւ այլ ուրեք վնաս՝ ըստ ակնարկութեան այնր որ վարէն զնա: Նա աւանիկ եւ մարդիկ կարող են ծանօթ ինչ գործեօք կապել զնա եւ փակել, զի հարկանիցէ նոցա զծառայութիւնն՝ զոր պահանջենն ի նմանէ: Եւ անձին ինչ չէ իշխան հողմն եւ ոչ իւիք: Վասն որոյ չմարթի զհողմն Աստուած ասել, այլ գործ Աստուծոյ:

եւ յորժամ կամիցիս խո-
ստովանիցես:
Կամ զօդ[1] որ

մերթ գուշէին վարդապետել հրամանաւ, եւ մերթ առնէ ի գուշակելոյն՝ սաստիւ:

---

1 Եզնիկ բնագրին πνοιή բառը օդ կը թարգմանէ՝ ինչպէս նաեւ յէջս 10, 13, 14, 17 եւն., իբրեւ հողմ կամ շնչումն օդոյ: Արդէն ինքն այս բառիս նոյնպիսի իմաստներուն միտ դնել կու տայ յէջն 90:

Զ. Սոյնպէս եւ որ լուսաւորքն Աստուած լինել ասացին, մոլորեցան: Զի տեսանեմք զարեգակն՝ զի ի հարկէ ուրուք շարժի եւ շրջի եւ ընթանայ, եւ երթայ, ելանէ եւ իջանէ, որպէս զի ջեռուցանիցէ զբողբոջս բուսոց եւ տնկոց եւ աճեցուսցէ ի մէջ օդոյ՝ որ խառնեալն է ինքեամբ, զամենայն բոյս որ ի վերայ երկրի: 2. Նա եւ յընթացսն ունի ինչ մասն համարոյ ընդ այլ աստեղս: Եւ թէպէտ մի ինչ է ի բնութեանն, այլ ի բազում իրս խառնի ըստ պահանջելոյ օգտի եւ պիտոյից մարդկան. եւ այն՝ ոչ ըստ իւրոց ինչ կամաց, այլ ըստ կամաց այնորիկ՝ որ վարէն զնա: Եւ վասն այնորիկ չէ հնար՝ թէ արեգակն Աստուած իցէ, այլ գործ Աստուծոյ:

3. Նոյնպէս եւ լուսինն եւ աստեղք:

Ե $14^{25}$

Զիա՞րդ պաշտիցեմք լուսաւորսն, որ մերթ կոչէ իբրեւ զծառայ առ ի սպասն յոր կարգեցաւ՝ հասանելոյ, եւ մերթ երթայ ղօղէ իբրեւ զարհուրեալ, եւ տայ տեղի խաւարին ընուլ զմիջոց ի մեծի տանս. եւ ընդ ժամանակս ժամանակս ի խաւար դառնայ՝ առ ի յանդիմանութիւն եւ յամօթ իւրոցն պաշտօնէից. յայտ արարեալ եթէ չեմ ես արժանի պաշտաման, այլ այն՝ որ զիս եւ զամենայն տիւ լուսաւոր պահէ, եւ զցայգ ղօղեցուցանէ՝ եւ երբեք երբեք խաւարեցուցանէ, եւ իբրեւ խօսուն բերանով անշշունչն բողոքէ՝ եթէ Զեմ արժանի պաշտօն առնլոյ այլ պաշտօն հարկանելոյ:

Կամ զլուսաւորսն՝ որ ամսոյ ամսոյ հիւծանի, գրեթէ եւ մեռանի, եւ ապա սկիզբն առնու կենդանանալոյ. զի քեզ զյարութեան օրինակն նկարիցէ:

Ինչպէս համեմատութենէս կ'երեւայ՝ Եզնիկ Արիստիդեայ Ջատագովութեան արեգական եւ լուսնոյ մասը բնագրին նախորդ մասերէն յառաջ անցուցած է, բայց թերեւս ոչ կամաւ: Վասն զի, բաց անկէ՝ որ Եզնիկ այս կարգի օրինակներու մէջ արեգակն ու լուսինը նախ կը յիշատակէ միշտ, ինչպէս էջ $10^{11}$, $11^{16}$, $13^{2}$, $14^{1}$, նաեւ

Արիստիդեայ այս կտորին ուրիշ մէկ փոխառուն ալ՝ հեղինակն "Պատմութեան Յովասափայ եւ Բարղամու„ Եզնկայ կարգն ունի։ Ս. Գր. Լուսաւորչի համարուած Յաճախապատումին մէջ կը գտնենք Արիստիդեայ նոյն կտորը փոխառեալ՝ բայց Արիստիդեայ կարգաւ։ Այս երկուքն ի միասին այստեղ կը դնենք։ "Պատմ. Յովասափայ եւ Բարղամու„ հայերէն հին համառօտեալ թարգմանութենէն Ասատայ, ձեռագիր մեր Մողրն. Թ. 395։ Յաճախապատում՝ տպ. Վենետ. 1838, էջ 26—7։

**ՊԱՏՄ. ՅՈՎԱՍԱՓԱՅ ԵՒ ԲԱՐՂԱՄՈՒ.**

"... Ապա թէ զարեգակն եւ զլուսին եւ զաստեղս համարին աստուածս, եւ այնու եւս սուտ խաւսին. զի չեն նոքա աստուած[1], այլ արարած Աստուծոյ կարգեալ ի ծառայութիւն աշխարհիս, սպասաւորել տուրնջեան եւ գիշերոյ։ Իսկ եթէ զջուրն աստուածս ասեն, սուտ են. զի ջուրք ի պէտս աշխարհի արարան յԱստուծոյ, եւ ունին զյոլովումն եւ զպակասումն այլ եւ զփոփոխումն, զի ջերմանան եւ ցրտանան։ Եւ թէ զհուր ասեն աստուածս, եւ ոչ այնու ճշմարիտ են. զի հուր եւս ի պէտս մարդկան արարաւ[2]. ունի լոյս եւ

**ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ.**

"Եւ որք մոլորեցան ի ճշմարտութենէ անտի, բարկութիւնն Աստուծոյ կայ մնայ ի վերայ նոցա։ Զի զտարերս ամենայն աստուածս արարին, զշնչաւորս եւ զանշունչս, զջուր եւ զհուր։ Զի ջուրքն[3] ի պէտս կենդանեաց արարան յԱստուծոյ, որ արբուցանեն զերկիր, եւ դարձեալ ապականին նեխելով եւ նուազելով։ Եւ հուր առ ի պէտս մեր արարաւ, որ դարմանոք վարի եւ սպասաւորէ մեզ. եւ ի պակասել կերոյն, շիջանի եւ ապականի։ Նոյնպէս եւ հողմք եւ ամպք ի պէտս եւս այլ արարածոց արարան, եւ ոչ ինքեանք եղեն. եւ ապակա-

1 Բնագիրն՝ ստացուածս։
2 Բնագիրն արարան։
3 Տպ. Ջուրն։

ջերմութիւն, այլ հուր ի ջրոյ շիջանի եւ խաւարի:»

նացուք են, յորդելով եւ պակասելով օգտել եւ վնասել, զիւրեանց տկարութիւնն ցուցանելով: Եւ երկինք եւ երկիր ոչ ինքնին եղեալ, եւ որ ի նոսա զեռունք իցեն եւ անշունչք. այլ յԱստուծոյ արարան եւ ապականացուք են:... Զի երկինք եւ երկիր եւ ամենայն զարդ նոցա յԱստուծոյ արարան յոչնչէ. եւ չեն աստուածք տարերքս ամենայն, այլ արարածք հասարակաց արարողին: Արարածք են Աստուծոյ եւ լուսաւորք՝ արեգակն եւ լուսին եւ աստեղք ամենայն, որք իւրեանց փոփոխմամբն ցուցանեն զիւրեանց սպասաւորութիւնն ըստ սահմանելոյն՝ այլ եւս արարածոց:»

Եզնկայ սկիզբէն մինչեւ էջ 19 տող 8՝ աղբեր մը գոյութիւնը տակաւին չենք կարող դրապէս հաստատել, բաց ի Արիստիդեայ յիշեալ մասէն եւ Ս. Բարսղի հետեւեալ մասէն, որուն մտադիր կ'ընէ Հ. Յ. Թորոսեան [1]:

Ս. ԲԱՐՍԵՂ

Ե 55[3]

Եւ ժողովեաց համբաւ բեաց զնոսա (զջուրսն) զի անտի ակունք մշտնջենաբուխք բխեսցեն՝ որ յորդեալ ելանեն անդադար եւ ոչ պակասին:

ԵԶՆԻԿ

Ե 8[24]

Եթէ աղբերք մշտաբուխք, որք ի նորա հրամանէ կարգեցան, հանապազ բղխեն եւ ոչ պակասեն, որոց բղխմունքն զայլոց կարօտութիւնս լնուն, եւ ինքեանք ի նմին յորդու-

---

1 Բազմավէպ, անդ:

| Ե 70[27] | |
|---|---|
| Ո՞վ իցէ՝ որ ճեպեալ ստիպիցէ զյորդաբուխ բխումն աղբերաց... եւ կամ որպիսի՞ շտեմարանք իցեն, որ հանապազ բղխեն եւ ոչ սպառին, եւ ի յաճախելն զյորդութիւնսն եւ ոչ պակասեն: | թեան կան մշտնջենականք . . . : |

Նոյնպէս Յաճախապատումի եւ Եզնկայ մէջ՝ երեք տեղ նոյնութիւն կը գտնենք, բաց ի վերոյիշեալէն, որոնցմէ մէկը պիտի յիշատակենք վարը Մեթոդիոսի եւ Եզնկայ համեմատութեանց մէջ: Իսկ երկուքն այստեղ կը դնենք, մտադիր ըլլալով՝ որ ըստ մեզ աներկբայ է՝ թէ Յաճախապատումի հեղինակն Եզնկէն օգտուած ըլլայ:[1]

| ԵԶՆԻԿ | ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ |
|---|---|
| Ե 63[15] | Էջ 25[5] |
| Զի՞նչ չար քան զօձ կայցէ, եւ ի նմանէ թերիակէ: | Է ինչ եւ ի սողունս՝ իրաց ինչ ի պէտս. որպէս յօձիցն, —ուէ, զթերակէն: |
| Ե 68[8] | Էջ 29[4] |
| Այնչափ ինչ չար ի գազանացն բնութեամբ ոչ գոյր... այլ յետ յանցանելոյ մարդոյն զԱստուծոյ | Զի եթէ ոչ էր ահ Տեառն ի վերայ (գազանացն), ամենեքեան զմեզ սատակէին: Եւ ուր ուրեք փսա- |

1 Յաճախապատում գիրքը տակաւին գաղտնիք մըն է որ չէ լուծուած: Փէթթէր զայն Ս. Մեսրոպայ գործ կը համարի (Nirschl's Lehrbuch d. Patrologie u. Patristik, III. Mainz, 1885, էջ 219:) Թէեւ Neumann (Versuch einer Geschichte der armenischen Literatur, Leipzig, 1836, էջ 15) եւ ասկէ առեալ J. M. Schmid (Leben und Lehren des hl. Gr. des Erleuchters, Regensburg, 1872, Յառաջաբան, էջ 8) կը հաստատեն. թէ Յաճախապատումի յունարէն բնագիրը Փարիզի ազգային մատենադարանը կը գտնուի. սակայն որչափ մենք կը հասկընանք՝ de Montfauconի խօսքը (St. J. Chrysostomi Opera omnia. Parisiis, 1735, XII. էջ 823 ծան. c.) որուն վրայ կը յենու Նայման, միայն հայերէն բնագրին համար է, ինչպէս յայտնի է (Անդ) ծան. dէն: — Արդէն Յաճախապատումն ունի կէտեր՝ որոնք Ե. դարու կէսէն ետքի ժամանակաց կը վերաբերին:

*պատուիրանաւն՝ տուան նմա զարհուրեցուցիչք, առ ի չհպարտանալոյ հողեղինին՝ որ ի հողոյ եղեւ եւ ի հող դառնալոց էր: Եւ առաջնոյ չվնասակարութեան գազանաց մարդոյ՝ այժմու համբոյրս եւ ընտելութիւնս վկայէ: Զի ոմն զգայլոյ կորիւն սնուցանէ, եւ իբրեւ զշան կորիւնս՝ առ ընտելութեան ընդ անձն անկանին: Եւ մեւսն զառիւծու կորիւն սնուցեալ՝ ածէ ի համբոյր եւ ի քծինս, մինչեւ պատել զսնուցանելեաւն. եւ եթէ այլ ոք ի նա հուպ գայցէ, չմոռացեալ զբարս գազանութեանն՝ ի վերայ յարձակի. եւ նորա սաստեալ գազանին իբր շան՝ ցածուցանէ յանսաստ գազանութենէն: Եւ այլ ոք զարջոյ թոժիւն սնուցեալ՝ կաքաւիչս ուսուցանէ, եւ նմանեցուցեալ բարուց մարդկան՝ զգազանաբարոյն ցածուցանէ:*

*սիցեն զմեզ՝ յերկիւղ Աստուծոյ շարժեն. զի վերաբերեալ ի հեղգութենէ՝ յառաքինութեանն վարս փութասցուք միշտ: Զի եւ գազանք ոչ եթէ բնութեամբ եղեն չարք, որպէս ընդելութեամբն ցուցանեն առ թովիչն: Եւ առիւծ եւ ինձ եւ արջ հնազանդին մարդկան, որպէս եզն եւ շուն եւ այլ ամենայն՝ որք ընդ լծով անկանին եւ շողոքորթեն. եւ առ անընդելսն գազանանան, եւ մահ գործեն անծանօթիցն եւ վէրս:*

Սակայն Արիստիդեայ յիշեալ մասիննոյնութիւնը եւ մանաւանդ էջ 19 տող 8էն սկսեալ եղած մեծամեծ փոխառութիւնք եւ փոխառութեանցս եղանակը կու տան բանաւոր կասկած մը՝ նաեւ Եզնկայ գրոց սկզբան այս մասերու ամբողջացուցիչ աղբեր մը գոյութեան:

## 2.

### Ս. Մեթոդիոս Եպս. Ողիմպիայ:

Ըսինք՝ որ Եզնիկ իւր գործոյն էջ 19 տող 8էն սկսեալ Ս. Մեթոդիոսի "Վասն անձնիշխանու-

թեան գիրքը, գիտակցաբար փոփոխելով՝ իբրեւ իւրը ներկայացուցած է։ Այս փոխառութիւնն համեմատօրէն ներկայացնելէն յառաջ՝ կարեւոր է Ս. Մեթոդիոսի եւ յիշեալ գործոյն վրայ տեղեկութիւն տալ։

Ս. Մեթոդիոս էր եպիսկոպոս Ողիմպիայ եւ Պատարայ ի Լիւկիա փոքուն Ասիոյ։ Վերջէն Փիւնիկէի Տիւրոս քաղաքին եպիսկոպոսն եղաւ եւ Դիոկղետիանոսի հալածանաց ժամանակ՝ 312ին մարտիրոսացաւ։ Իւր բազմաթիւ փիլիսոփայական-աստուածաբանական գրութեանց մէջէն միայն Συμπόσιον τῶν δέκα παρθενῶν, ἢ Περὶ ἁγνείας (Խնջոյք տասն կուսանաց կամ Վասն կուսութեան) գրութիւնն ազատ մնաց կորստենէ։ Միւսներն՝ որովհետեւ Որիգենեայ դէմ էին, մահուանէն քիչ ետքն արդէն ջնջելու կ՚աշխատուէր։ Եւ սակայն շատերն անոր գրուածներէն ամբողջական կտորներ յառաջ կը բերէին, մերթ յիշատակութեամբ անուան եւ մերթ առանց յիշելու։ Այս վկայութեանց եւ գողութիւններու պարտական ենք Ս. Մեթոդիոսի քանի մը գրութեանց յունարէն բնագիրներուն հատածները, որոնց ամբողջականը գտնուած չէ ցայսօր։ Մեր խնդրէն չհեռանալու համար՝ կը մնանք միայն Ս. Մեթոդիոսի Περὶ αὐτεξουσίου (Վասն անձնիշխանութեան) գրութեան վրայ։

Վասն անձնիշխանութեան գրութեան յունարէն ամբողջական բնագիրը ցայսօր գտնուած չէ։ Մեթոդիոսի այս գրութիւնը ժամանակին գիտնոց ծանօթանալէն քիչ ետքը՝ սկսած է ասկէ ամբող-

ջական կտորներ իրեն սեպհականել (Սուտ-) Ադամանտիոս, (Որիգենէս) Վասն ուղիղ հաւատոյ տրամախօսական գրութեան[1] անանուն հեղինակը, որ ոչ միայն Մեթոդիոսի անունը կը լռէ, այլ եւ անոր խօսքերը հակառակորդին՝ Որիգենէսի բերանը կը դնէ։[2] Նաեւ Եւսեբիոս Կեսարացի իւր Պատրաստութիւն Աւետարանի ժողովածոյքին մէջ (Գիրք Է. գլ. 22) "Վասն անձնիշխանութեան„ գրքէն մեծ կտոր մը յառաջ կը բերէ՝ գործն Մաքսիմոս անուն փիլիսոփայի մը վերագրելով[3]։ Նոյնպէս փոտ իւր Biblioth.ին մէջ Մեթոդիոսի այս գրքէն կտորներ կը դնէ։

Այս հատուածներէն բաղադրեալ յունարէն թերի բնագիրը շատ անգամ հրատարակուած է, ինչպէս եւ առ Migneի։ Վերջին լաւագոյն հրատարակութիւնն ըստ Alb. Jahn (ի Halis Sax. 1865)։

---

1 Գրուած իբր 300—313ին ըստ Th. Zahn, Die Dialoge des „Adamantius“ mit den Gnostikern: Zeitschrift f. K.-G. IX, 2, 3, S. 238.

2 Տես յունարէն բնագրին լաւագոյն հրատարակութիւնքը C. Delarue, Origenis opera, Paris, 1733, I. 840; Grabe, Spicil. II. Յամին 1876 C. P. Caspari այս գործոյս Ռուփինոսի ձեռօք կատարուած լատիներէն հին թարգմանութիւնը գտաւ Schlettstadtի մատենադարանը եւ 1883ին հրատարակեց ժողովածոյքի մը մէջ՝ Kirchenhistorische Anecdota, Christiania, 1883.

3 "Վասն անձնիշխանութեան„ գործոյն յոյն բնագրին մեր ձեռքն հասած մասերուն մէջ Մեթոդիոս ինք զինք կ'անուանէ "Ուղղահաւատ„, ինչպէս վարն յառաջ բերուած թարգմանութեան մէջ կ'երեւայ։ Կարելի է որ Եւսեբիոսի տեսած օրինակին մէջ "Մաքսիմոս„ անունն ըլլար փոխանակ "Ուղղահաւատի„, զոր Եւսեբիոս հեղինակին անունը համարած ըլլայ, ինչպէս որ Մեթոդիոս "Վասն կուսութեան„ գործոյն մէջ ինք զինք "Եւբուլիոս„ կ'անուանէ, զոր եւ Եպիփան իբրեւ հեղինակին անունը կ'առնու։ Տես Th. Zahn անդ էջ 228։

G. N. Bonwetsch, ուսուցիչ Աստուածաբանութեան ի Դորպատ, կարդինալ Pitraյի յիշատակութենէն (Analecta sacra III, Venet. 1883, p. 612) առաջնորդուելով՝ Մոսկուայի Սինհոդոսական մատենադարանը եւ Հոգեւոր ճեմարանի մատենադարանը, ինչպէս նաեւ Ս. Պետերբուրգի կայսերական հրապարակական մատենադարանը Մեթոդիոսի գործոց ԺԲ. դարու սլաւական թարգմանութիւնները գտաւ, եւ 1891ին հրատարակեց յունարէն բնագրին հատածներուն հետ նաեւ սլաւական թարգմանութեանս գերմաներէն թարգմանութիւնը։[1] Այս գիւտով Ս. Մեթոդիոսի գործերուն մէկ մասն ամբողջացաւ։

Սլաւական թարգմանութեան գիւտով “Վասն անձնիշխանութեան„ գրութիւնը գրեթէ կրկնով չափ աճեցաւ։ Բոնվեչ կը կարծէ՝ թէ սլաւական թարգմանութեան գիւտովն՝ այս գրութիւնս այս օրս ամբողջ գտնուած համարելու է։ Բոնվեչի հրատարակութիւնը մենք այսուհետեւ B պիտի նշանակենք։

Ս. Մեթոդիոս “Վասն անձնիշխանութեան գործոյն„ մէջ՝ իւր սովորութեան համեմատ՝ տրամախօսական (dialogue) ձեւով “Վաղենտինեանի„ մը հետ “Ուղղահաւատ„ անուամբ վիճաբանութեան կը մտնէ սկզբնական նիւթոյն եւ չարին սկիզբը գտնելու համար, եւ կը ցու-

[1] G. Nathanael Bonwetsch, Methodius von Olympus, I. Erlangen und Leipzig, 1891.

ցընէ որ նիւթն արարած է եւ չարը նիւթէն յառաջ չի գար, այլ անձնիշխանութեան չարաչար գործածութենէն: Երրորդ ումն “Ետերոս„ (‘Ἑταῖρος, Բարեկամ’), որ Վաղենտինեանի նման կը խորհի, իբրեւ դատաւոր վիճին ներկայ կը գտնուի, եւ վերջէն ինքն ալ խնդրոյն կը միջամտէ:

Մեթոդիոս իւր գրքին սկիզբ կ'ընէ դիւցաբանական յիշատակութեամբ մը, եւ կը յորդորէ յունկնդրութիւն աստուածական բանակցութեան: Բ. հատուածին մէջ “Վաղենտինեանը„ կը սկսի պատմել աշխարհիս վրայ տեսնուած անպատեհութիւնները կամ չարիքները, որոնց վրայ բանակցութիւնը Գ. եւ յաջորդ հատուածներով յառաջ կ'երթայ:

Արդ՝ կը գտնենք որ Եզնիկ իւր “Ընդդէմ աղանդոց„ գրքին էջ 19 տող 8էն (“....Զի տեսանեմք երկուս արս միազգիս...„) կը սկսի մինչեւ էջ 58 վերջին տող՝ բան առ բան, տեղ տեղ փոխելով իմաստն, աննշան համառօտութեամբ եւ յաւելուածներով կ'օրինակէ Մեթոդիոսի “Վասն անձնիշխանութեան„ գիրքն ամբողջ՝ B էջ 8 մինչեւ 58 n. 3: Ասկէ կը շարունակուի Մեթոդիոս մինչեւ B էջ 62 վերջին տող: Այս կտորն ալ Եզնիկ զետեղած է իւր Գ. գրքին էջ 236, տող 6 (“Եւ բազում պատճառք...„) մինչեւ էջ 239 վերջընթեր 3ր տողին վերջը: Բայց Եզնկայ էջ 59 նոյն խնդիրը կը շարունակուի, իսկ Մեթոդիոսի ցայժմ գտնուած բնագիրը կը վերջանայ ամփոփելով վիճաբանութեան նիւթը, որով հաւանականա-

գոյն կ'երեւայ՝ թէ սլաւական թարգմանութիւնը գործն ամբողջացեալ կը ներկայացընէ:

Մենք ի յաջորդս Մեթոդիոսի Վասն անձնիշխանութեան գործը Գ. Հատուածէն սկսելով գրաբար թարգմանութեամբ պիտի դնենք ամբողջապէս, եւ դիմացը Եզնկայ վերոյիշեալ նոյն մասերն ամբողջապէս: Ուր որ յոյն բնագիր կայ՝ թարգմանութիւնս յունին համեմատ է, միշտ աչաց առջեւ ունենալով նաեւ սլաւական թարգմանութիւնը. իսկ ուր յոյնը կը պակսի՝ սլաւական թարգմանութեան վրայէն է թարգմանութիւնս: Երկու բնագիրները համեմատօրէն ներկայացընելու ժամանակ՝ կարեւոր տեղեր ծանօթութիւններ կ'աւելցընենք: Իսկ համեմատութենէս յառաջ եկած հետեւութիւններն Եզնկայ անձին եւ իւր գործոյն նկատմամբ՝ կը դնենք ի վերջոյ:

**Ս. ՄԵԹՈԴԻՈՍ**

(B. էջ 7):

GS[1] Գ. Վարդենիքենեան: . . .
[2]Ի վաղիւ անդր, այն է՝ այսօր, յորժամ եկի՝ տեսի երկուս ոմանս (արս միազգիս ասեմ) ընդ միմեանս գրգռեալս առտիկ բանիւ ք զմիմեանս պատառէին. եւ զայլ եւս ոմն՝ որ կամէր մերկա-

**ԵԶՆԻԿ**

(էջ 19):

Կամ ուստի՞ են անզգամութիւնք.
զի տեսանեմք
երկուս արս միազգիս
ընդ միմեանս գրգռեալ՝ միմեանց մահու եւ արեամբ ծարաւի են:

---

[1] G = Յոյն, S = Սլաւական բնագիր: Ուր որ այս երկուքը միասին կը դնենք՝ ըսել է թէ երկու բնագիրք կան մինչեւ այն տեղ՝ ուր երկուքէն մէկը դրուած է, որ է ըսել՝ թէ անկէ ետեւ այս մէկ բնագիրը միայն գտնուած է:

[2] Նաեւ Ադամանտիոսի Տրամախօսութեան հեղինակն այս տեղէն կը սկսի ընդօրինակել զՄեթոդիոս. բայց Եզնիկ ոչ թէ այս Տրամախօսութենէն՝ այլ ուղղակի Մեթոդիոսէ կ'առնու:

նայ զընկերն: 2. Եւ ահա այլք եւս յանդգնագոյնս գործել ժտին. ոմն զմեռեալն դիակաղերծ առնէ եւ ըզթաղեալ մարմինն ընդ հողով արեւու ցուցանէ, եւ այսպէս զդէին շանց կուր արկեալ՝ զնմանութիւն իւրոյ պատկերին խայտառակէ: 3. Եւ այլ ոք մերկացեալ զսուր ի վերայ առն նմանւոյ դիմէ. եւ սա փախուցեալ զկեանս շահել ջանայ. այլ նա զկնի ընթացեալ՝ ոչ դադարէ եւ ոչ տիրել ցասման կամի: Եւ զի՞ պիտոյ է բնաւ բազում ինչ ասել. նա աւանիկ զհետ մտեալ հարկանէ սրով. իսկ սա աղաչաւոր լինի առ ընկերն եւ տարածեալ զձեռսն՝ նա եւ զհանդերձս մատուցեալ աղաչէ, զի միայն շնորհիցէ նմա կեալ: Այլ նա ոչ ինչ բնաւ չափ դնէ ցասմանն, եւ ոչ ողորմի բնաւ միազգւոյն, այլ իբրեւ զգազան վայրի սրով պատառել սկսանի. նա եւ զբերանն ի նմանին իւր ի մարմինն դարձուցանէ: Այսպիսի ոք լեալ էր առ ցասմանն: Եւ անդ էր տեսանել զմին ընդ գետին թաւալեալ: Եւ միւսն մերկանայ զնա եւ ոչ բնաւ ծածկէ ընդ հողով զմարմինն՝ զոր ի հանդերձիցն մերկացաւ:

4. Եւ էր այլ ոմն, որ ի մտի եդեալ պղծել զկին ընկերին՝ գողացեալ զայլոյ ամուսնութիւն եւ ջանացեալ ելանել յանօրէն մահիճսն, չտայ լինել ճշմարիտ

Եւ այլք զգերեզմանս կըրկտեն

եւ զթաղեալ մարմինս ընդ հողով՝ մերկացեալ խայտառակեալ արեւու ցուցանեն, եւ զմեծարեալ դին՝ առ փութի չծածկելոյ՝ թերեւս եւ շանց եւս կուր արկանեն: Եւ է երբեք զի մին փախուցեալ երթայցէ անձնապուր ուրեք զկեանս անձինն շահել. եւ միւսն ցասմամբ բորբոքեալ՝ սրով ըզկնի ընթացեալ, ոչ դադարէ՝ մինչեւ յագեցուցանիցէ զցասումն: Ո՞ւստի է այն անյագ ցասումն:

Եւ ոմն մերկանայ զհանդերձս ընկերին, եւ թէ ընդդէմ դառնայցէ՝ յարեւէ եւս արկանէ:

Եւ ուրումն ի մտի եդեալ գողանալ զայլոյ ամուսնութիւն, եւ ելեալ անօրէնութեամբ յօտար մահիճս, չտայ լինել հայր որդւոց[1]

1 Տպ. որդւոյ: Իզմիրի եւ այլ տպագրութեանց զա-

հայր այնմ՝ որ օրինօքն ա- մուսնացեալ իցէ։ 5. Եւ այնուհետեւ սկսայ հաւա- տալ ողբերգութեանց եւ համարեցայ թէ ճշմարիտ ի- ցեն Թիւեստեան ընթրիքն[1], եւ անօրէն ցանկութեան Իսոմեայ հաւատացի, եւ չեմ ինչ անհաւան Եզրարցն՝ որ սրով ընդ միմեանս մար- տիցեն։ 6. Ուստի, այսչափ եւ այսպիսի իրս տեսեալ՝ սկսայ խնդրել, թէ ուս- տի՞ իցէ այս ամենայն, եւ ո՞վ այսց շարժմանց սկիզբն, եւ ո՞վ է գործիչ այսպիսեաց ընդդէմ մարդկան, ուստի՞ գտան նոքին, եւ ո՞ է ու- սուցիչ նոցա։

Զի յանդգնել զԱստուած արարիչ ասել այնպիսի իրաց չէր հնար. բայց եւ ոչ անձամբ յանձնէ ունել զգոյութիւն[2] եւ զէանայն[3]։ 7. Քանզի զի՞րդ մարթ է այնպիսիս կարծել զԱստու- ծոյ. զի նա բարի է եւ լաւ-

այնմ՝ որ օրինօքն ամուս- նացեալ իցէ։ Եւ երբեք եր- բեք պատերազմունք շար- ժին, ուր մեղաւոր եւ ար- դար առ հասարակ կոտորին. եւ մահք տարաժամք եւ ախտք չարաչարք։

Եւ զի՞ պիտոյ է մեզ բնաւ մի բան միօջէ թուել. այլ համառօտ իսկ ասել՝ թէ ու-ստի՞ է այս ամենայն, եւ ո՞վ է սկիզբն եւ գործիչ այսպիսի անպատեհից. բայց եթէ ի- ցէ ինչ չար զօրութիւն՝ որ զայն ամենայն անհարթու- թիւնս տայցէ գործել, եւ ինքն իսկ արարիչ իցէ նոցա։ Զի զԱստուած արարիչ ա- սել այնպիսի իրաց՝ անպատ- շաճ է, եւ ոչ ի նմանէ ու- նել զգոյութիւն չարեաց։

Զի՞րդ մարթ է զայնպիսիսն յԱստուծոյ կարծել. զի Աստուած բարերար է եւ

---

նազանութիւնքն չենք դներ. տեղւոյս չվերաբերելուն եւ շատ բան հրատարակչաց կամայականութեամբ փոխուած ըլլա- լուն։ Տպագրին հատածներու բաժանումը, ինչպէս նաեւ կիտադրութիւնքն բնագրին համեմատ կ'ուղղենք։

[1] Ակնարկութիւն յունական դիցաբանութեան, որուն համեմատ Ատրէոս՝ Պեղոպայ որդին, իւր եղբօր Թիւեստի որդիքն գաղտ սպաննեց եւ միսն անոր ընթրել տուաւ, անոր իւր կինը պղծելուն եւ իւր որդւոյն մահուան պատ- ճառ ըլլալուն համար։ Այս եւ յաջորդ առասպելաբանու- թիւնքն Եզնիկ լաւ ուզելով՝ «Եւ երբեք երբեք պատերազ- մունք ... ախտք չարաչարք» ընդհանուր խօսքերով կը յայտնէ բնագրին միտքը։

[2] Յ (= Յոյնն) ունի ὑπόστασις (substantia, subsi- stentia) զոր Եզնիկ այստեղ գոյութիւն կը թարգմանէ, ուրիշ տեղ բնութիւն, անձն։ Մենք Մեթոդիոսի թարգմա- նութեան մէջ միշտ գոյութիւն կը գտնենք այսուհետեւ։

[3] Յ σύστασις (consistentia), զոր Եզնիկ կը թարգ- մանէ ուրիշ տեղեր հաստատութիւն, [illegible]։

ութեանց[1] արարիչ եւ ի չարութեանց ինչ ի նա ոչ մերձենայ. այլ եւ ոչ խրնդալ ընդ այնոսիկ կարէ, եւ զգործել նոցին խոտէ, եւ մերժէ զայնոսիկ՝ որ խրնդան ընդ այնոսիկ. իսկ զորս փախչիցինն՝ ընդունի: Եւ զիա՞րդ չիցէ անպատեհ, զի Աստուած նոցին արարիչ կոչիցի՝ զորս նայն մերժէ: Զի ոչ եթէ չկամէր արդեւք՝ թէ չիցեն նոքին, յորժամ նախ ինքն իցէ արարիչ նոցուն: Քանզի կամի զի որ առ նա մերձենայցեն՝ նմին նմանողք լինիցին: 8. Յայն սակս օտար ի մտաց երեւեցաւ ինձ՝ զայսպիսիս զնմանէ կարծել եւ կամ իբրեւ ի նմանէ լեալ (— թէպէտ կարի իսկ հաւանական թուիցի՝ թէ հնար իցէ ի չգոյէ գոյանալ իմիք —) եւ կամ չարեաց արարիչ զնա գնել: Զի որ յոչը՞նչէ արար զնոսա, ոչ արդեւք եւ ապա յայնմանէ՝ զի են, յոչինչ անդր դարձուցանիցէ: Եւ դարձեալ հարկ իցէ ասել՝ թէ էր երբեմն՝ զի Աստուած ընդ չարիս խնդայր, բայց այժմ ոչ՝: Յայն սակս անհնարին ինձ թուի զայս զԱստուծոյ ասել, զի անընտանի է այս ի բնութենէ նորա: 9. Վասն որոյ կարծեմ՝ թէ էր ինչ սկզընակից նմա (որում Հիւղն անունէ) ուստի ըզլեալսն գործեաց իմաստուն արուեստիւ՝ զատուցեալ եւ զարդարեալ վայելչութեամբ.

լաւութեանց արարիչ եւ ի չարութեանց ինչ ի նա ոչ մերձենայ, եւ ոչ խնդալ ընդ այն ախորժէ, այլ եւ խոտէ եւս զգործսն եւ զգործելիս.

զի անընտանի են չարիք ի բնութենէ նորա: Վասն որոյ կարծի՝ թէ էր ինչ ընդ նմա, որում Հիւղն անուն էր, որ է նիւթ, ուստի զամենայն արարածս արար եւ զատոյց ամենարուեստն իմաստութեամբ եւ զարդա-

[1] Իմա ըստ B ընթերցուածոյն:

| | |
|---|---|
| եւ յայնմանէ թուի թէ իցեն չարիքն: Եւ քանզի չարիքն անիրան[1] էր եւ անկերպարան[2], այլ եւ խառն ի խուռն օձտելով երթեւեկէր եւ կարօտէր Աստուծոյ արուեստիւն, ոչինչ նախանձեցաւ նա, եւ ոչ եթող զնա հանապազ այնպէս խառն ի խուռն վարել, այլ եկն յառնել զարարածս, եւ զազնուագոյնսն ի յոռութեանցն նորա զատուցանել կամեցաւ: Եւ այսպէս այնչափ ինչ արար ի նմանէ, որչափ Աստուծոյ վայել էր առնել. եւ որ ինչ՝ ասացից այսպէս՝ մրրախառն էր ի նմանէ, քանզի չէր պատշաճ արարչութեան, զայն եթող այնպէս որպէս էրն, այնու զի յոչ ինչ օգտակար էր ինքեան. եւ յայսցանէ համարիմ եկեալ չարեաց առ մարդիկ: 10. Այսպէս թուի ինձ բարուոք կարծել: Իսկ դու, ո՛վ բարեկամ, եթէ թուիցի քեզ թէ ոչ բարուոք ինչ ասացի, ե՛կ ասասցիս. քանզի ցանկամ յոյժ լսել զայսպիսեաց: | րեաց վայելչութեամբ. եւ յայնմ նիւթոյ պարտ է կարծել զչարիս. որ անիրան եւ անկերպարան էր եւ խառն ի խուռն օձտելով երթեւեկէր եւ կարօտէր Աստուծոյ արուեստագիտութեանն: Եւ Աստուած ոչ եթող զնա հանապազ խառն ի խուռն վարել, այլ եկն յառնել զարարածս, եւ ի յոռութեանցն նորա յազնուագոյնսն զատուցանել կամեցաւ. եւ այնչափ ինչ արար ի նմանէ, որչափ Աստուծոյ վայել էր[3] առնել արարածս. եւ որ ինչ մրրախառն էր ի նմանէ եւ չէր պատշաճ արարչութեան, զայն եթող. եւ յայնմ մրրոյ են չարիք մարդկան: |
| Դ. Ուղղափառ: Արդարեւ ճանաչեմ, ո՛վ բարեկամ, զյօժարութիւն կամաց քոց եւ գովեմ զճգունս քո վասն խնդրոյս: Եւ զի այնպէս իմն կարծես դու զեղելոցն, թէ Աստուած | Պատասխանի: |

---

[1] Իմա՛ ըստ Յ ἄποιος = առանց յատկութեան կամ որպիսութեան: Յունարէն բառիս դիմաց Եզնիկ կը դնէ՝ անիրան, անկերպարան, առանց արգասեաց, անարգասաւոր: Այս բառերը մենք ալ կը գործածենք «առանց յատկութեան» իմաստով:

[2] Յ ἀσχημάτιστος = առանց ձեւի՝ կերպարանքի:

[3] Տպ. Վայելէր:

յառընթերակացէ ինչ էութենէ[1] արարեալ իցէ զայսոսիկ, ոչ ինչ բնաւ ստգտանեմ: Քանզի արդարեւ իսկ չարեացն լինել զբաղուման ի նոյն կարծիս միտեցոյց: 2. Զի բազում արք աւագք յառաջ իսկ քան զքեզ եւ զիս վասն նորին խնդիրս մեծամեծս արարին. եւ կէսք զնոյն ինչ ընդ քեզ կարծեցին, եւ կէսք զԱստուած արարիչ նոցին եդին. այնու զի երկնչէին ժամանակակից գոյութիւն ինչ ընդ նմա դնել. իսկ կէսք, քանզի երկնչէին զԱստուած արարիչ չարեաց ասել, հիւղ ինչ ժամանակակից նմա դնել կարծեցին: Եւ եղեւ երկոցուն եւս՝ առանգիտութեանճշմարիտ երկեղին Աստուծոյ, ոչինչ բարիոք ասել: 3. Եւ ոմանք հրաժարեցին բնաւ ի խնդրելոյ զսկիզբն այսոցիկ, որպէս թէ ամենեւին այսմ խնդրոյ չիցէ սպառուած: Այլ հաղորդութիւն բարեկամութեան իմոյ առ քեզ ոչ տայ ինձ թոյլ հրաժարել յայսմ խնդրոյ, մանաւանդ զի դու ինքնին զյօժարութիւն քո յայտ առնես, որպէս թէ չիցես ի կարծեաց ինչ յառաջագոյն գրաւեալ, (թէպէտ եւ յայնցանէ, զոր խորհեցարդ, առաւել երեւիցի այնպէս իսկ լինել իրացն.) այլ ասես՝ թէ իցես ի ցանկութեան

Արդարեւ իսկ չարիքն որ լինին՝ ի տարակուսի կացուցանեն զբաղումս. եւ բազում արք աւագք վասն նորին

խնդիրս մեծամեծս արարին: Կէսք անսկզբնակից ինչ ընդ Աստուծոյ կամեցան դնել.

եւ կէսք ըստ նմանէ նիւթ ինչ, զոր հիւղն անուանեն, թէ ի նմանէ արար զարարածս.

եւ կէսք հրաժարեցին բնաւ ի խնդրելոյ, որպէս թէ

ամենեւին այնմ խնդրոյ չիք սպառուած:

Բայց մեզ հարկ եղեւ ի սիրոյ բարեկամաց,

եւ յոչ ուղիղ հայելոյ ընդդիմակացն,

---

1 Յ οὐσία (essentia, substantia) էութիւն: Այս բառը կը գործածենք այսուհետեւ յոյն բառին դիմաց, թէեւ Եզնիկ ոնչն, Բնութիւն դնէ:

ճշմարտագիտութեան։ Վասն որոյ եւ ես յօժարութեամբ մխեցայց ի խնդիր ճառիցս։ Այլ եւ ցանկայի իմն, զի այլ ոք եւս ունկնդիր մերոց բանից լինիցի. զի որպէս թուի՝ եւ նա ընդ քեզ զնոյն կարծիս ունի զիրացս։ Յայն սակս ընդ երկոսեանդ առ հասարակ խօսել կամիմ. զի զոր ինչ ցքեզ ասեմ, որ այսպէսդ համարիս, զնոյն եւ նմա նոյնպէս ասացից։ Եւ զի հասանէ քեզ ճշմարտութեամբ զբարւոյն խօսել, տուր պատասխանի ուղիղ մտօք ամենայնի՝ զոր ինչ եւ հարցանիցեմ. ուստի եւ լինի՝ քեզ զճշմարիտն ուսանել եւ ինձ ոչ ի զուր ինչ ի քեզ զբանս իմ ծախել։

5. Վաղէնտ.։ Պատրաստ եմ զոր ինչ ասեսդ՝ առնել. եւ յայն սակս ամենայն յօժարութեամբ հարց ցիս, ուստի ի գիտութիւն բարւոյն հասանել ինձ մարթ համարիցիս։ Քանզի ոչ եթէ անիրաւութեամբ ինչ յաղթել ջանամ, այլ իրաւամբք զճշմարիտն ուսանել։ Ապա սկիզբն արա վարդապետութեանդ։

Վասն Աստուածոյ եւ Հիւղէայն։

Ե. Ուղղափ. Զի երկուց անարարաց ի միասին չէ մարթ բնաւ լինել. եւ կարծեմ թէ այնմ չես անգիտակ ինչ եւ դու, թէպէտ եւ առաւել թուի՝ թէ, գրաւեալ յառաջագոյն, կա-

ըստ մերում տկարութեան ապաւինեալ յԱստուծոյ շնորհսն, մխել ի խնդիր ճառիցս. մանաւանդ զի յուսացեալ եւս վստահ լիցեմք յուղղոց ունկնդրաց ի կամացն մտադիւրութիւն.

ուստի եւ լինիցի՝ նոցա զճշմարիտն ուսանել եւ մեզ ոչ ի զուր ինչ զբանս ծախել։

Քանզի ոչ եթէ անիրաւութեամբ ինչ յաղթել ջանամք, այլ իրաւամբք զճշմարիտն ուսանել։

Որովհետեւ[1] յայտ է՝ թէ երկուց անարարաց ի միասին չէ մարթ լինել.

[1] Տպ. Որով։

միցիս եւ զայս եւս յաւելուլ ի խնդիրն՝ եթէ հարկ իսկ ի վերայ կայցէ ասել, թէ կամ Աստուած զատեալ իցէ ի հիւղեայն եւ կամ ոչ իցէ զատեալ ի նմանէ: 2. Եթէ ոք ասել կամիցի, թէ նա մի իցէ ընդ հիւղեայն, յայտ է թէ զանարարն մի ասիցէ. քանզի մին ի սոցանէ հարկ է թէ մասն ինչ միւսոյն իցէ: Եւ զի մին միւսոյն մասն է, յայտ է թէ ոչ միայն երկու անարարք գտանին, այլ մի ի բազմաց կազմեալ: Քանզի եւ զմարդն, որ այլեւայլ անդամս ունի, ոչ եթէ ի բազում արարածս բաժանիցեմք, այլ որպէս միտք ուսուցանեն՝ մի միայն արարած զմարդն ի բազում մասանց կազմեալ յԱստուծոյ ասեմք: Նոյնպէս հարկ է եթէ մի միայն անարար զԱստուած ասիցեմք, եթէ չիցէ նա զատեալ ի հիւղեայն: 3. Ապա եթէ ոք ասիցէ, թէ զատ ինչ իցէ, ապա հարկ է թէ իցէ ինչ ի միջի երկոցունց, որպէս զի անտի իսկ՝ զի զատ են իմասցի: Զի չէ ինչ հնար իմանալ ինչ մի՝ որ հեռի իցէ յայլմէ, եւ չիցէ այլ ինչ՝ որ անջրպետ ընդ միւսն ի մէջ մտանիցէ: 4. Որ եւ ոչ միայն զայսմանէ իմանալի է, այլ եւ ի բազում իսկ իրս. զի զոր ինչ զերկուց անարարացն ասացաք, զնոյն հարկ իցէ ասել՝ եթէ եւ երեք իցեն անարարքն: Քանզի եւ զսմանէ կամիմ հարցանել. Միթէ զատ ինչ

զի ուր երկու ոք ի միասին իցեն, հարկ է թէ իցէ ինչ՝ որ զատանիցէ ի միջի.

իցեն ի միմեանց, եւ կամ իւրաքանչիւր ի միասին ընդ ընկերի՞ն իցէ։ 5. Զի եթէ ոք կամիցի՝ թէ ի միասին իցեն, լուիցէ զոր յառաջն ասացաք. իսկ եթէ զատեալ իցեն ի միմեանց, ապա չէ մարթ ի հարկէ ոչ ընդունել զգոյութիւն այնր՝ որ զատանիցէ ի միջի։

Զ. Ապա եթէ ոք համարիցի երրորդ իմն օրինակաւ զանարարացն ճառել, թէ Աստուած չիցէ զատեալ ի հիւղեայն, բայց եւ ոչ իցէ մի իբրեւ մասն, այլ իբրեւ ի տեղւոջ ինչ յամենայն ի հիւղն, եւ հիւղն յԱստուած, լուիցէ զոր իբանման ծածկեալ կայ. այն է՝ զի եթէ ասիցեմք թէ հիւղն լեալ իցէ տեղի Աստուծոյ, հարկ է զի նա ի տեղւոջ իցէ եւ հիւղն շուրջ փակիցէ զնա։ 2. Նա աւանիկ եւ հարկ էր թէ նա իբրեւ զհիւղն իսկ խառն ի խուռն վարէր. ոչ կալ կայցէ նմա եւ ոչ մնալ ինքն յինքեան. նա եւ նովաւ՝ յորում էն, այսր անդր տանիցի։ Այլ եւ հարկ է ասել՝ եթէ Աստուած ի յոռին գտանի. զի եթէ էր երբեք հիւղն անզարդ, եւ զարդարեաց զնա Աստուած, քանզի զնա

արդ, զի՞արդ համարիցին զԱստուած.

իբրեւ ի տեղւո՞ջ ինչ յամենայն՝ ի հիւղն լինել, եթէ ի միում ինչ ի մասին նորա։ Եթէ զամենայն զԱստուած յամենայն[2] ի հիւղն լինել ասիցեն, որչափ մեծ եւս ասիցեն զԱստուած, գտանի հիւղն մեծ քան զնա։ Քանզի յորում իցէ ոք, այն՝ յորում էն, քան զայն՝ որ ի նմա էն, մեծ գտանի. զի բաւական եղեւ տանել բոլոր զնա։

[3]Իսկ եթէ էր երբեք հիւղն անզարդ եւ անարդ եւ անկերպարան, եւ զարդարեաց

---

[1] Տպ. յամենա՞յն։ Նախադասութեան երկրորդ մասը «եթէ ի միում ինչ ի մասին նորա» մեր փոփոխութեան արգելք չի կրնար ըլլալ. վասն զի Եզնիկ այս կտորն քիչ մը վարէն (Մեթ. Զ. 3) վեր առած է։

[2] Տպ. յամենայնի։

[3] Այստեղ տպագրին մէջ ետեւառաջութիւն կայ. այսինքն՝ «իսկ եթէ էր երբեք ... խառն ի խուռն վարէր» կտորն տպագրին մէջ «Եւ եթէ ի մասն ... քան զերկոսին» կտորէն ետքը փոխադրուած է։

ի լաւն դարձուցանել կամեցաւ, ապա ուրեմն էր երբեմն՝ զի յանզարդս էր Աստուած:

զնա Աստուած, քանզի ի յոռութեանցն նորա ի լաւն դարձուցանել կամեցաւ, ապա ուրեմն էր երբեմն՝ զի յանզարդս եւ յանարդս եւ յանկերպարանս էր Աստուած, [1]եւ հարկ էր թէ իբրեւ զհիւղն իսկ եւ նա խառն ի խուռն վարէր:

3. Եւ արդ, եւ զայս եւս իրաւամբք յաւելում հարցանել. Աստուած յամենա՞յն ի հիւղն էր, եթէ ի միում ինչ ի մասին նորա: Եթէ ոք կամիցի ասել՝ եթէ ի մասին ինչ հիւղեայն էր Աստուած, եւ այնպէս բիւրապատիկ իսկ փոքր քան զհիւղն զնա համարի. զի մասն ինչ նորա բաւական եղեւ ընդունել զամենայն զԱստուած:

Եւ եթէ ի մասն ինչ միայն ի նմանէ,
եւ այնպէս բիւրապատիկ իսկ մեծ քան զնա հիւղն գտանի.
զի սակաւ ինչ մասն նորա բաւական եղեւ ընդունել զամենայն զնա:
[2]Եւ եթէ ոչ ի նմա, եւ ոչ ի մասին ինչ նորա, յայտ է՝ թէ այլ ինչ էր անջրպետ ընդ մէջ երկոցուն, մեծ քան զերկոսին. եւ ոչ միայն երկու անսկզբնակիցք գտանին, այլ երեք. Աստուած եւ հիւղն եւ անջրպետն, եւ մանաւանդ մեծ եւս անջրպետն քան զերկոսին:

Եւ եթէ ասիցէ յամենայն ի հիւղն լինել, եւ յամենայն ի հիւղն զետեղել, զիա՞րդ նա զայն գործէր: Քանզի հարկ է ասել՝ եթէ կամ Աստուած զանձն ու-

Եւ թէ յամենայն ի հիւղն, որպէս ասենն, էր Աստուած, յորժամ զնա ի զարդ եւ ի յարդ եւ ի կերպարանս ածէր, ինքն յո՞ մարթէր ամփոփել, զի չէր ու-

---

1 «Եւ հարկ էր . . . վարէր» կտորս՝ Մեթ. Զ. 2ի սկիզբը պիտի անցնի ըստ բնագրին:

2 «Եւ եթէ ոչ ի նմա . . . քան զերկոսին» Եզնկայ յաւելուածն է՝ կրկնելով եւ ամփոփելով արդէն ըսուածները. այսպէս եւ վերն Մեթ. Զ. 2ի դիմաց («Քանզի յորում իցէ ոք . . .») եւ այսուհետեւ քանի մ'անգամ:

րեք մեկնեալ իցէ, որով գործեալ իցէ զայն՝ յորմէ մեկնեցաւն, եւ կամ եւ զինքն ընդ հիւղին գործեալ իցէ. քանզի չգոյր ուրեք տեղի մեկնելոյ:

րեք մարթ ամփոփելոյ:

Միթէ եւ զի՞նքն ընդ հիւղին ի զարդս եւ ի յարդս եւ ի կերպարանս ածէր. քանզի չգոյր ուրեք տեղի ամփոփելոյ. որ յետնոյ ամպարշտութեանն է:

4. Ապա թէ ոք ասիցէ՝ թէ հիւղն ի յԱստուած էր, ըստ նմին օրինակի պարտ է խնդրել՝ որպէս զա՞տ ինչ ի նմանէ, որպէս զազգս անասնոց ի մէջ օդոյ, որ զատուցեալ եւ անջատեալ է ի նոցանէ որ ի նմա են, թէ իբրեւ ի տեղւոջ, որպէս եւ ջուրք յերկրի:

Ապա թէ ասիցեն՝ թէ հիւղն ի յԱստուած էր, ըստ նմին օրինակի պարտ էր խնդրել՝ որպէս զա՞տ ինչ ի նմանէ, որպէս զանասունս ի մէջ օդոյ, որք ի նմա են եւ զատուցեալք ի նմանէ. թէ իբրեւ ի տեղւոջ, որպէս եւ ջուրք յերկրի:

5. Զի եթէ ասիցեմք՝ որպէս ի մէջ օդոյ, ապա ուրեմն բաժանելի է Աստուած. իսկ եթէ որպէս ջուրք յերկրի, ապա հիւղն խառն ի խուռն էր եւ անզարդ, այլ եւ ունէր զչարիս. ապա ուրեմն անզարդից եւ չարեաց տեղի հարկ է ասել զԱստուած, որ ոչ ուղիղ ինչ թուի ինձ, (G) մանաւանդ թէ լի վտանգօք: Իսկ եթէ կամիս թէ իցէ հիւղն, զի մի՛ չարեաց արարիչ զԱստուած ասիցես, լաւագոյն համարեալ փախչել յայսմանէ՝ ասիցես եթէ իցէ նա ասպնջական չարեաց:

Եւ զհիւղեայն ասեն՝ թէ անճահ եւ անզարդ եւ անարդ եւ չար էր. եթէ ըստ նոցա մտացն իցէ, ապա չարեաց տեղի էր Աստուած, զի անհեղեղքն եւ անզարդքն ի նմա էին, որ անհնարին անօրէնութիւն է, կարծել զԱստուծոյ թէ երբեմն ասպնջական չարեաց էր, եւ ապա արարիչ չարեաց.
[1]Նա եւ բաժանելի եւս՝ թէ ի նմա իբրեւ ի տեղւոջ էր:

6. Իսկ եթէ յարարած գոյութեանց կարծելով ըզ-

---

[1] Այս կտորն Եզնիկ Մեթ. Զ. 5ի սկիզբէն կտրած այս տեղ բերած կցած է:

հիւղն՝ անարար զայն ասիցես լեալ, բազում ինչ հասանիցէ ինձ ասել բանս զայսմանէ ի ցուցանել՝ եթէ անհնար է թէ անարար իցէ: Իսկ եթէ զչարեացն ծնունդ պատճառս ասիցես լինել այսր կարծեաց, թուի ինձ յթէ հարկ է գալ ի քննութիւն այսոցիկ: Քանզի յորժամ յայտնի իցէ մեզ եթէ որպէս լինին չարիքն, եւ զի չէ հնար զԱստուած պատճառ չարեաց ասել՝ այնու զի առ ընթեր նմա զհիւղն դնեն[1], թուի ինձ թէ կարծիքս այս ինքնին եղծանին: Զի եթէ զկերպարանս[2], որ չէին, արար Աստուած, ապա եւ զէութիւնս:

Արդ հարկ է ի պատճառս չարեացն գալ եւ ցուցանել՝ թէ ուստի լինին չարիքն, եւ չէ

պատճառ չարեաց Աստուած՝ այնու զի առ ընթեր նմա զհիւղն դնեն:

Է. Ասիցես ապա, եթէ հիւղն որ անկերպարան էր, սկզբնակից իցէ Աստուծոյ, ուստի զաշխարհս արար:

Իւ արդ զո՞ր հիւղ առ ձեռն դնիցեն Աստուծոյ. ո՞չ ապաքէն զայն, ուստի զաշխարհս արար, որ անկերպարանն եւ անզարդ եւ անարդ էր:

Վ-ղ. Այդպէս ինձ թուի:

2. Ո-ղ. Արդ, եթէ հիւղն անկերպարան էր, իսկ աշխարհս յԱստուծոյ եղեւ, եւ յաշխարհի են կերպարանք, ապա կերպարանա՞ց արարիչ իցէ Աստուած:

Զի տեսանեմք զաշխարհս ի պէսպէս կերպարանս եւ ի զարդս եւ ի յարդս.

ապա ուրեմն կերպարանաց եւ զարդուց եւ արդուց արարիչ է Աստուած, եւ ոչ բնութեանց:

Վ-ղ. Այդպէս է:

3. Ո-ղ. Քանզի լուայ՝ զի ասէիր յառաջագոյն,

---

[1] Իմա՛ ըստ բնագրին՝ վասն զի հիւղն Աստուծոյ գոյակից (սկզբնակից) կը համարին:

[2] Յ ποιότης = qualitas, յատկութիւն: Եզնիկ կը գտնէ աստ դիմաց միշտ կերպարանք, որպիսիք, զոր եւ մենք կը գործածենք այսուհետեւ՝ «յատկութիւն» իմաստով:

| | |
|---|---|
| եթէ չէ հնար ի չգոյէ լինել ինչ, տո՛ւր արդ պատասխանի հարցման իմում. Մի՞թէ կարծիցե՞ս թէ կերպարանք աշխարհիս չիցեն արարեալ ի կերպարանաց՝ որ իցենն: | |
| Վ–ղ. Այսպէս կարծեմ: | |
| Ո–ղղ. Համարիցի՞ս թէ կերպարանքն այլ ինչ իցեն քան զէութիւն: | |
| Վ–ղ. Այսպէս է: | |
| 4. Ո–ղղ. Արդ, եթէ Աստուած ոչ ի կերպարանաց՝ որ իցեն, զկերպարանսն արար, եւ ոչ յէութեանց եղեն, եւ զի կերպարանքն չեն էութիւնք, ապա հարկ է ասել եթէ ի չգոյից արարան յԱստուծոյ: | Իսկ եթէ արարչի այն գործ է՝ զբնութիւնս առնել, եւ ոչ միայն արդս եւ զարդս եւ կերպարանս, |
| Ապա աւելորդ թուի ինձ ասել՝ թէ անհնար իցէ կարծել, եթէ արարեալ իցէ Աստուծոյ ի չգոյէ ինչ: | յայտ է եթէ աւելորդ է կարծել՝ թէ ի նիւթոյ ինչ իմեքէ յընթերակայէ արար Աստուած զաշխարհս, այլ յոչընչէ եւ ի չգոյէ: |
| 5. Այլ վասն այսորիկ այսպիսի ինչ է ասել. Քանզի եւ առ մեզ տեսանեմք, զի մարդիկ ի չգոյէ առնեն ինչ, թէպէտ եւ առաւել երեւիցին առնել ինչ յիմիք: | Նա եւ զմարդիկ տեսանեմք, զի ի չգոյէ առնեն ինչ. |
| Որպէս ածցուք օրինակ զշինողսն[1]. քանզի նոքա ոչ ի քաղաքաց քաղաքս առնեն, նոյնպէս եւ ոչ ի տաճարաց տաճարս: | որպէս շինողքդ ոչ ի քաղաքաց քաղաքս առնեն, եւ ոչ ի տաճարաց տաճարս: |
| 6. Իսկ եթէ՝ քանզի էութիւնք գտանին ի նոսին, կարծիցես եթէ ի գոյից առնեն նոքա զնոսին, սխալես բանիւդ. զի ոչ եթէ էութեան գործ է քաղաքս կամ տաճարս շինել, այլ | Նոքա քանզի ամենեւին յոչընչէ չկարեն ինչ առնել, քարինքն՝ զոր ի շինածսն յօրինեն, ոչ եւս քարինք կոչին, այլ կա՛մ քաղաքք կա՛մ տաճարք. զի ոչ եթէ բնութեան գործ է քաղաքս |

[1] Իմա՛ ըստ բնագրին՝ ճարտարապետս:

արուեստին է՝ որ յէութեանն։ Եւ արուեստն ոչ եթէ՝ յայնմանէ ինչ՝ որ յէութիւնսն իցէ, լինի արուեստ, այլ ի չգոյէն՝ որ ի նոսին։

7. Այլ թուի թէ հակառակիցես ինձ այսպէս բանիւդ՝ եթէ Արուեստագէտն յարուեստէն՝ որ յէութեանն է, գործէ զարուեստն։ Առ այդ այդպիսի ինչ ասել ինձ լաւ թուի, եթէ Եւ ոչ իսկ ի մարդն ի գոյէ իմեքէ արուեստն ծնանի. զի ոչ է հնար եթէ արուեստն յանձնէ իսկ արուեստ իցէ, այլ ի դիպացն է[1], եւ յայնցանէ՝ որ յայնժամ եկին ի լինել, յորժամ յէութեան իմիք դիպեցան։

8. Զի մարդ եւ առանց ճարտարութեան[2] լինի, բայց սա չէ՝ եթէ ոչ նախ մարդն իցէ. ուստի զարուեստս յոչընչէ ի մարդիկ բուսեալ հարկ է ասել։

9. Եւ եթէ առ մարդկան այսպէս լեալ ցուցաք, ո՞րչափ եւս առաւել պատշաճ իցէ զԱստուծոյ իմանալ՝ թէ ոչ միայն զկերպարանս յոչնչէ առնել բաւական է, այլ եւ զէութիւնս։ Քանզի եթէ հնար

կամ տաճարս շինել[3], այլ արուեստին է՝ որ ի բնութեանն։ Եւ արուեստն ոչ եթէ յընթերակայէ ինչ իմեքէ՝ որ ի բնութիւնսն իցէ, առնու զարուեստագիտութիւնն, այլ ի դիպացն՝ որ դիպին ի բնութեանցն։

Քանզի ոչ եթէ անձնաւոր ինչ յանձնաւորաց զարուեստն կարէ ցուցանել, այլ ի դիպացն՝

որք դիպինն. որպէս ի դարբնութենէ՝ դարբինն, եւ ի հիւանդութենէ՝ հիւան։

Զի մարդ եւ յառաջագոյն քան զարուեստն է. բայց արուեստն չէ՝ եթէ ոչ նախ մարդն իցէ. ուստի զարուեստն յոչնչէ ի մարդիկ պատշաճեալ հարկ է ասել։ Եւ եթէ առ մարդկան այսպէս, ո՞րչափ եւս առաւել պատշաճ իցէ զԱստուծոյ իմանալ՝ թէ ոչ միայն արդուց եւ զարդուց եւ կերպարանաց արարիչ է, այլ յոչնչէ առնել բաւական է բնութիւնս։

---

1 Իմա՝ այլ պատահարներէն յառաջ կու գայ։
2 Իմա՝ ճարտարապետութիւն։
3 Ցպ. չունի՝ շինել։ Ցպ. Իզմիրի ունի ըստ բնագրին

| | |
|---|---|
| թուիցի յոչընչէ լինել իմեք, ԳՏ ապա յայտ է թէ եւ էութիւնք նոյնպիսի իցեն: | |
| | [3]Եւ ոչ արգասիս նիւթ՝ յորմէ Աստուած ընտրեաց զբարին ի մի թեր եւ զչարն մրրախառն ի միւս կողմն, ուստի ջանայ մրրախառն զկատակն պղտորել: |
| ԳՏ. Ը. Չարիքս որ լինին ուստի՞ իցեն[1]: | Չարիքս որ լինին ուստի՞ իցեն: |
| Եւ զի ցանկաս հարցանել զսկզբանէ չարեաց, եկից ի խնդիր նոցին, եւ կամիմ սակաւիկ ինչ հարցանել զքեզ. Չարիքն թուին քեզ թէ էութի՞ւնք ինչ իցեն, թէ արգասիք[2] էութեանց: | Հարցցուք եւ մեք. Չարիքն որ լինին, անձի՞նք ինչ իցեն, թէ արգասիք անձանց: |
| Վ-ող. Թուի թէ ի դէպ իցէ ասել՝ թէ արգասիք էութեանց իցեն: | Ասեն. Ի դէպ է կարծել՝ եթէ արգասիք անձանց: |
| Ո-ղղ. Իսկ հիւղն անարգասաւո՞ր էր եւ անկերպարա՞ն: | Եւ հիւղն, զոր ասեն անարգասաւոր եւ անկերպարան, |
| Վ-ող. Այդպէս հաստատեցի վերագոյնն ի բանս իմ: | |
| 2. Ո-ղղ. Իսկ արդ, եթէ չարիքն արգասիք իցեն էութեանց, եւ հիւղն անարգասաւոր իցէ, եւ զի ասացեր՝ եթէ Աստուած արարիչ արգասեացն իցէ, ապա Աստուած արարիչ իցէ եւ չարեաց: | զիա՞րդ անարգասաւորն եւ անկերպարանն յայլս կարէր արդիւնս ծնուցանել, |
| Իսկ եթէ այսպէս չիցէ մարթ ասել՝ թէ Աստուած չիցէ պատճառ չա- | եթէ ոչ ի դիպացն լինիցին չարիքն, եւ ոչ ի նմանէ: |

---

1 Այս վերնագիրս սլաւականին է: Ցոյն ձեռագիր մ'ունի՝ Դարձեալ խնդրել պարտ է վասն չարին:

2 Իմա՛ յատկութիւն:

3 «Եւ ոչ . . . պղտորել» ամբողջ կտորս ուրիշ տեղէ մը անջատուած եկած է այստեղ առանց կապակցութեան: Հաւանական է որ Եզնիկայ երկու թուղթ ետքը մէկ մասին վերաբերի, սակայն յոյն բնագրին մէջ չկայ:

րեաց, ապա աւելորդ թուի ինձ Աստուծոյ հիւղ ինչ առ ընթեր դնել: Ապա թէ ունիցիս ինչ առ այս ասել, սկիզբն արա՛ բանիցդ: Իսկ եթէ առ սէր վիճելոյ խնդիրքս յուզեցին ի մէջ մեր, չկամիմ ապաքէն երկրորդ անգամ վասն չարեացս սահմանել ինչ: Եւ քանզի առ բարեկամութեան մանաւանդ եւ առ օգտի ընկերին եկաք ի խնդիր ճառիցս, խնդրեմ յանձն առնուլ յառաջ քան զամենայն զայս հաստատել:

3. Վաղ. Թէպէտ եւ ի բազմաց հետէ յայտ իսկ քեզ իցէ յօժարութիւն իմ, որպէս կարծեմս, եւ փոյթ զխնդրոյս, թէ ես ոչ նենգութեամբ ինչ խօսել կամիցիմ, ստելով յաղթել յօժարեալ, այլ զի ճշմարտութիւնն մանր մանր քննութեամբ ի յայտ եկեսցէ. քանզի գիտեմ քաջ զի եւ դու նոյնպիսի միտս ունիցիս: Յայն սակս որո՛վ օրինակաւ եւ զճշմարիտն գտանել հնար համարիցիս դու, զայն ի կիր արկանել մի՛ ինչ դանդաղիցիս: Քանզի ոչ միայն քեզ օգուտ լինիցի զլաւն ի կիր արկանել, այլ եւ ինձ. այնու զի զայնցանէ՝ որոց անգէտն եմ, խելամուտ զիս առնիցես:

4. Ուղղ. Ինձ թուի, եթէ եւ չարիքն էութիւնք ինչ իցեն, զի ոչ տեսանեմ զնոսա լեալ առանց էութեան: Արդ աւադիկ, եւ դու ասես՝ թէ չարիքն էութիւնք իցեն. ապա հարկ է

զմիտս էութեան խնդրել: Համարիցի՞ս եթէ էութիւնքն մարմնաւոր ինչ էք[1] իցեն:

Վ-ղ. Այդպէս թուի:

5. Ո-ղղ. Իսկ էն մարմնաւոր յանձնէ՞ իցէ առանց ինչ կարօտելոյ ումեք, յորմէ առնուցու զլինելն:

Վ-ղ. Այդպէս է:

6. Ո-ղղ. Դարձեալ՝ համարիցի՞ս թէ չարիքն գործ[2] իւիք իցեն:

Վ-ղ. Այդպէս ինձ երեւի:

7. Ո-ղղ. Այլ գործքն յայնժամ գայցեն ի լինել, յորժամ իցէ ոք որ գործիցէ:

Վ-ղ. Այդպէս է:

8. Ո-ղղ. Ապա եթէ չիցէ ոք բնաւ՝ որ գործիցէ, ապա եւ գործքն բնաւ չիցե՞ն:

Վ-ղ. Չիցեն բնաւ:

9. Ո-ղղ. Իսկ արդ, եթէ էութիւնն իցէ մարմնաւոր է, եւ մարմնաւոր էն չէ ինչ կարօտ թէ յայլ ինչ լեալ՝ գայցէ ի լինել. այլ չարիքն գործ իւիք իցեն, իսկ գործքրն կարօտին իւիք՝ յորում լեալ, գայցեն ի լինել, ապա յայտ է թէ նորին իսկ էութիւնքն չիցեն չարիք: 10. Իսկ եթէ էութիւնքն չարիք են, եւ չար է սպանութիւնն, ապա էութիւն իցէ սպանութիւնն: Իսկ արդ, սպանութիւնն գործ ինչ ուրուք է, ապա սպանութիւնն չէ էութիւն ինչ: Իսկ եթէ կամիցիս զոր գոր-

---

[1] Իմա՝ էակք (յն. σύστασις = consistentia, հաստատութիւն:)

[2] Յն. ἐνέργεια, ներգործութիւն:

ծէն էութիւն ասել, ասա-
ցից եւ ես: Որպէս սպանող
ոք, քանզի մարդ է, էու-
թիւն է. իսկ սպանու-
թիւնն՝ զոր գործէ, ոչ է
էութիւն, այլ գործ ինչ
էութեան: 11. Այլ մեք
զմարդ մերթ չար կոչեմք
վասն սպանութեանն, եւ
մերթ բարի վասն բարւոյ
գործոյ: Այլ այս անուանք
կապեալ են ընդ էութեանն
վասն դիպացն՝ որ չեն ինչ
նոյն. զի չէ ինչ սպանու-
թիւնն էութիւն, եւ ոչ
դարձեալ շնութիւնն եւ
ոչ այլ ինչ չար նոյնպիսի.
այլ որպէս ի դպրութենէն[1]
դպիր կոչի, եւ ի ճարտա-
րութենէ[2] ճարտար եւ ի
բժշկութենէ բժիշկ. եւ
բժշկութիւնն եւ ճարտա-
րութիւնն եւ դպրութիւնն
ոչ եթէ էութիւնք ինչ ի-
ցեն, այլ ի դիպաց անտի
առնուն զանուանս, յորոց
այսպիսի ինչ անուանել
հարկ թուի, թէպէտ եւ
ոչ մին ի նոցանէ այնպիսի
ինչ իցէ: Նոյնպէս եւ որ
չարիքն համարիցին՝ թուի
թէ առեալ իցեն զանուա-
նումն էութեան, թէպէտ
եւ բնաւ չիցեն էութիւն:
12. Նոյնպէս միտ դիր ինձ.
եթէ եւ զայլ ինչ իմանայ-
ցես մտօք պատճառ չարեաց
մարդկան, նոյնպէս եւ նա
— այնու զի գործէ ի նոսին
եւ դրդէ ի գործել զչարիսն,
— ի գործոյն՝ զոր գոր-

Զի սպանութիւնն չէ անձն
ինչ, եւ ոչ շնութիւնն անձն
ինչ է, եւ ոչ դարձեալ
այլքն մի ըստ միոջէ ի չա-
րեացն. այլ որպէս ի դպրու-
թենէն դպիր կոչի, եւ ի
ճարտարութենէ ճարտար,
եւ ի բժշկութենէ բժիշկ.
եւ այն

ոչ եթէ անձինք ինչ են,
այլ յիրաց անտի առնուն
զանուանս,

Նոյնպէս եւ չարիքն ի դի-
պացն առնուն զանուա-
նումն:

Ապա եթէ եւ զայլ ոք ի-
մանայցեն

դրդիչ եւ գրգռիչ՝ որ ար-
կանիցէ ի միտս մարդկան
զչարիսն, եւ նա ի գործոյն՝

---

[1] Յն. γραμματική, քերականութիւն:
[2] Յն. ῥητορική, հռետորութիւն, ճարտասանութիւն:

ծէ, չար իսկ լինի։ Քանզի յայն սակս առնու զանուն չարութեան, զի գործիչ է չարեաց։ Բայց զոր գործէ ինչ ոք՝ ոչ ինքն նոյն է, այլ նոքա գործք են նորա, ուստի եւ զանուն չարեաց առնու։ 13. Զի եթէ ասիցեմք թէ նոյն է ընդ այնմ՝ զոր գործէ ոք, — այլ նա գործէ եւ սպանութիւնս եւ շնութիւնս եւ գողութիւնս եւ որ նման է սոցին, — ապա նոյն իցէ նա եւ ընդ սոսա։ Իսկ եթէ նոյն իցէ ընդ սոսին, քանզի սոքա յորժամ գործին՝ գան ի լինել, եւ եթէ չգործիցին՝ պակասին ի լինելոյ. եւ դարձեալ զի սոքա ի մարդկանէ գործին, ապա ուրեմն մարդիկ են արարիչ սոցին եւ պատճառք լինելոյն եւ չլինելոյն։ 14. Ապա թէ ասիցես եւս՝ թէ նոքին գործք նորա իցեն, ապա յայնմանէ՝ զոր գործէն, լինի չար, բայց ոչ յայնմանէ՝ որով էութիւնն է։ Այլ ասացաք՝ եթէ չարիքն առնուն զանուանումն չարութեան ի դիպացն որ յէութեան, որ ոչ են էութիւն, որպէս ի բժշկութենէ բըժիշկն։ 15. Իսկ եթէ յայնմանէ՝ զոր գործէ ոք, իցէ չարն, եւ զոր գործէ ոք՝ առնու այն սկիզբն լինելոյ, որով եւ գործն սկսանի լինել չար, ապա սկսանին աստի եւ չարիքն։

Թ. Եւթերոս։ Այլ վասն բարեկամի, ո՛վ բարեկամ, թուի թէ բաւական իցեն բանքդ. քանզի զայն՝ զոր-

զոր գործէ, առնու զանուն չարութեան։

Բայց զայն պարտ է գիտել, թէ զոր գործէ ինչ ոք՝ ոչ ինքն նոյն է, որպէս բրուտն յորժամ անօթս գործիցէ՝ ոչ ինքն անօթ լինի, այլ գործիչ է անօթոցն, ուստի եւ զանուանումն արուեստին առնու. նոյնպէս եւ չարագործն ի չարն գործելոյ առնու զանուն չարութեանն, եթէ շուն իցէ եւ եթէ սպանող։

Ապա ուրեմն յիրաւի ասին մարդիկ արարիչ չարեաց, զի ինքեանք են պատճառք առնելոյ եւ չառնելոյ։

Եւ զչարիսն ոչ պարտիմք անձինս

անուանել, այլ արգասիս անձանց

եւ չար։

մէ նա վերագոյնն խնդիրս արար, դու, որպէս թուի, վայելչութեամբ ի գլուխ հաներ։ Զի արդարեւ եթէ անարգասաւոր էր հիւղն, եւ արգասեացն արարիչ Աստուած է, եւ արգասիքն չար են, ապա Աստուած արարիչ չարեաց իցէ։ 2. Այս բան քաջ իսկ ասացաւ ցնա։ Այլ ինձ թուի թէ սուտ իցէ զհիւղն անարգասաւոր ասել. զի ոչ

է հնար ասել զէութենէ իմեքէ, թէ անարգասաւոր իցէ. նա եւ այնու զի անարգասաւոր զնա ասիցէ ոք, զարգասեաց նորա յայտ առնէ. քանզի յորժամ ոք զարգասիս հիւղեայն սահմանիցէ, զօրինակ[1] արգասեացն տայ իմանալ։ Ցայն սակս, եթէ հաճոյ ինչ քեզ թուիցի, ի սկզբանէ անտի բեր ի մէջ զխնդիրդ. զի թուի ինձ՝ եթէ հիւղն առանց սկզբան զարգասիսն ունիցի. քանզի այսպէս եւ զչարիսն իբրեւ ի նմանէ բխեալ ասեմ, զի մի՛ զԱստուած պատճառ չարեաց դնիցեմ, այլ այսց ամենեցուն պատճառ՝ զհիւղն։

4. Ո–ղ. Զյօժարութիւն կամաց քոց, ո՛վ բարեկամ, առնում յանձն եւ գովեմ զեռանդն քո

Իսկ եթէ ի նմին յամառութեան կացցեն՝ թէ արդարեւ անարդ եւ անարգասաւոր էր հիւղն, եւ Աստուած ած զնա ի զարդ եւ ի կերպարանս եւ յարգասիս, ապա զԱստուած դնեն պատճառս չարեացն։ [2]Լաւ էր լեալ՝ թէ նոյնպիսի կացեալ էր անհեդեդ եւ անարգասաւոր, քան գալ յարգասիսն եւ ի կերպարանս, եւ լինել պատճառ չարեաց այլոց.

քանզի զի՞նչ մարթի ոք լինել՝ որ իցէ թէ անկերպարան իցէ. նա եւ ասելն անկերպարան՝ զկերպարանացն յայտ առնէ։

---

[1] Իմա՝ զտեսակ։

[2] "Լաւ էր . . . չարեաց այլոց", կտորն, որ աւելի քիչ մը վարը թերեւս կը պատշաճէր, անյարիր կերպով այս տեղ աւելցուցած է Եզնիկ։

վասն խնդրոյս։ Զի ոչ եթէ պատշաճ ինչ ումեք իցէ, որ սէր ընդ ուսումն ունիցի, հաւատալ բանիցն որպէս զիարդ եւ ոք խօսիցի. այլ ճշդագոյն քննութեամբ առնիցէ խնդիր իրացն։ Քանզի եւ ոչ նա՝ որ ոչ ըստ ուղիղ օրինակի վիճեալ սահմանիցէ ինչ, այնմ՝ որ ընդ նմա վիճիցին, պատճառս տայցէ դատելոյ որպէս զիարդ կամիցի, եւ ածիցէ զունկնդիրսն ի հաւան. այլ մանաւանդ սա՝ որ ինչ հնար թուիցի ասել վայելչութեամբ, զայն ասիցէ ի դէմս նորա։ Զի միում յերկոցունց աստի դիպիցի. զի որ ունկնդիրսն լինի կամ օգտիւ իմանայցէ զայն՝ յոր ածիցէ ոք զնա, եւ կամ հակառակիցի այնմ՝ որ վիճիցին, իբրեւ թէ ոչ զճշմարտութիւնն ասիցէ։

Ժ. Ինձ թուի՝ թէ ոչ ըստ ճշմարտութեան ինչ ասացեր ինձ, եթէ հիւղն ի սկզբանէ արգասաւոր իցէ։ Զի եթէ այս այսպէս իցէ, ապա որո՞ց իրաց արարիչ իցէ Աստուած. եթէ ասիցեմք՝ էութեանց, ապա ասեմք՝ եթէ էին սոքա յառաջագոյն. իսկ եթէ ասիցեմք՝ արգասեացն, ապա ասեմք՝ թէ էին եւ սոքա։ Յայն սակս քանզի եւ էութիւնն է եւ արգասիքն են, ապա աւելորդ թուի ինձ ասել արարիչ զԱստուած։ 2. Եւ զի մի՛ թուիցի թէ յինէն այսպիսի ինչ խնդիր յուզի, տո՛ւր ինձ պատասխանի որ հարցանեմս. Որո՞վ օրինա-

Իսկ եթէ էր ինչ անձնաւոր եւ կերպարանաւոր, աւելորդ է ասել արարիչ զԱստուած։

կաւ զԱստուած արարիչ ասիցես. արդեւք յա՞յն սակս, զի զէութիւնն փոխեաց, այնպէս զի ոչ եւս իցեն այն՝ որ ինչ էինն երբեմն, այլ այլ իմն՝ աննման ինքեանց. եւ կամ միթէ զէութիւնս որպէս յառաջագոյնն էին պահեա՞ց եւ զարգասի՞ս նոցա փոխեաց:

3. Եւսեբ. Ինձ թուի թէ ոչ[1] զէութիւնն փոխեալ ինչ իցէ. զի անպատեհ իմն թուի ինձ այսպիսի ինչ ասել: Այլ ասեմ՝ եթէ դարձուցեալ իցէ զարգասիսն, վասն որոյ եւ զԱստուած արարիչ ասեմ. քանզի որպէս յորժամ պատշաճ իցէ ասել՝ թէ ի քարանց շինուածք առնին, ոչ եթէ ասիցի՝ թէ քարինքն ոչ մնացին յէութեանն, այնու զի քարինքն ի շինուածս լեալ են: 4. Քանզի անտի իսկ զի ի միմեանս եկեալ են արգասիքն՝ տունն յարդարեալ եւ կայ, որով յայտնապէս առաջին արգասիք քարանցն փոփոխեալ են: Եւ այսպէս թուի ինձ՝ եթէ Աստուած, մինչ էութիւնն կաց մնաց՝ զարգասիս նորա փոփոխեաց, որով եւ ասեմ՝ եթէ եւ այսր աշխարհիս արարած յԱստուծոյ եղեւ:

5. Ուղղ. Արդ քանզի ասես՝ եթէ Աստուած փոփոխումն ինչ արգասեաց արար, տո՛ւր ինձ պատասխանի, որ եղի ի մտի հար-

Այլ այնու, ասեն, զի յանարդութենէն եւ յանհեդեդութենէն դարձոյց ի զարդ եւ ի կերպարանս, յիրաւի կոչի արարիչ: Այդ այնմ նման է, յորժամ ի քարանց ոք շինուածս առնիցէ՝ պատշաճելոյն եւ յօրինելոյն միայն արարիչ է, եւ ոչ բնութեանն:

[1] «Ոչ» չիք ի բնագրին, բայց իմաստը կը պահանջէ։

| | |
|---|---|
| ցանել կարճ ի կարճոյ։ Ասա՛ արդ. Քե՞զ եւս թուիցի թէ չարիքն արգասիք իցեն էութեանց։ | |
| Ետեր. Այդպէս թուի։ | |
| 6. Ո–ղղ. Արգասիքն ի սկզբանէ՞ ի հիւղն էին, եթէ առին ինչ սկիզբն լինելոյ։ | |
| Ետեր. Ասեմ՝ եթէ արգասիքն իբրեւ անարար ի միասին էին ընդ հիւղեայն։ | |
| 7. Ո–ղղ. Բայց չասիցե՞ս եւս՝ եթէ Աստուած փոփոխումն ինչ արգասեացն արարեալ իցէ։ | Եւ արդ, յի՞նչ ինչ արգելք արար Աստուած զանկերպարանն, |
| Ետեր. Զայդ ասեմ իսկ։ | |
| 8. Ո–ղղ. Ապա զի՞արդ. ի լա՞ւ ինչ, թէ ի յոռի։ | ի լա՞ւ ինչ, թէ ի յոռի։ |
| Ետեր. Թուի թէ ի լաւն ասել պարտ իցէ։ | Եթէ ասիցեն՝ եթէ ի լաւ, |
| ԺԱ. Ո–ղղ. Արդ, եթէ արգասիք հիւղեայն չար էին եւ զարգասիսն Աստուած ի լաւն դարձոյց, ապա պարտ է խնդրել՝ թէ ուստի՞ էին չարիքն. զի արգասիքն ոչ նոյնպիսի մնացին՝ որպէս եւ էինն ի բնէ։ | . զչարիսն՝ որ լինին, պարտին խնդրել, թէ ուստի՞ լինին։ Ուրեմն արգասիքն ոչ նոյնպիսի մնացին՝ որպէս եւ էինն, այլ զի ի լաւն դարձեալ՝ լաւք եւեթ երեւեացին։ |
| 2. Ապա եթէ արգասիքն յառաջագոյն չար չէին, այլ, որպէս ասեսդ, այնու զի փոխեցան յԱստուծոյ, արգասիք հիւղեայն այնպիսիք եղեն, ապա Աստուած իցէ չարեաց պատճառ, այնու զի զարգասիսն՝ որ չար չէին, ի չար անդր դարձոյց։ Կամ համարիցիս թերեւս՝ եթէ Աստուած զչար արգասիսն ի լաւ անդր դարձոյց, եւ կէսքն, ասիցես, որք այլ | Ապա եթէ ի յոռի ինչ դարձան, իշխեսցե՞ն ասել՝ թէ չարեացն պատճառ Աստուած է, զի նա զարգասիսն ի լաւ անդր դարձոյց։ Այլ ասեն՝ թէ զյատակն ի մի կողմն |

| | |
|---|---|
| իմ ինչ[1] էին, յետոյ ապա ի զարդ դարձուցան յԱստուծոյ: | ընտրեաց, ուստի զարարածսն արար, եւ զմրրախառնն եթող: |
| Եւսեբ. Այդպէս կարծէի ի սկզբանէ: | |
| 3. Ուղղ. Այլ զի՞րդ ասիցես. Միթէ զարգասիս չարեացն որպէս էինն եթո՞ղ. | Ասասցուք. |
| որպէս զի թէ կարող էր եւ զայն ի միջոյ բառնալ եւ ո՞չ կամեցաւ, եթէ՝ եւ կարող բնաւ իսկ ոչ էր: Զի եթէ ասիցես՝ թէ կարող էր եւ ոչ կամեցաւ, | Որպէս զի թէ կարող էր եւ զայն յատակել եւ զչարիսն ի միջոյ բառնալ, եւ ոչ կամեցաւ զայն ի միջոյ բառնալ, |
| ապա պատճառս նոցին պարտ է զնա առնել. քանզի կարող էր առնել՝ զի չարն չիցէ, թոյլ ետ լինել նմա որպէս էրն, մանաւանդ յորժամ եկն ի գործել զհիւղն: 4. Զի թէ նմա չէր բնաւ ամենեւին փոյթ լեալ զհիւղեայն, չէր Աստուած պատճառ չարեաց այնու՝ զի եթող նա զնա մնալ նոյնպիսի: | ապա պատճառս չարեացն պարտ է զնա առնել. |
| Այլ զի զմասն ինչ նորա գործեաց | զի ի կիսոյն նորա արար բարի արարուածս, |
| եւ զկէսն նորա եթող, մինչդեռ եւ զայս եւս ի լաւն դարձուցանել կարէր, թուի ինձ թէ Աստուած յիրաւի պատճառ իցէ, զի զկէսն հիւղեայն եթող ի չարիսն՝ յապականութիւն այնր մասին՝ զոր գործեաց: 5. Այլ թուի ինձ հաւաստեաւ՝ զի եւ ի միւս մասն ոչ բարւոք ինչ գործեաց. զի զմասն ինչ հիւղեայն եթող ի չարիսն, միւս մասնն՝ զոր գործեաց, առնու զազդումն այժմու չարեացն: | եւ զկէսն նորա եթող նոյնպիսի՝ յապականութիւն լինելոյ բարւոք արարածոցն: |
| Եւ եթէ ճշմարտիւ որք քննիցէ զիրսն՝ | Եւ եթէ ճշմարտիւ որք քննիցէ զիրսն՝ գտանէ յան- |

[1] «Այլ իմ ինչ» իմա՝ անտարբեր (չէզոք):

գտանէ վատթարագունից դիպեալ հիւղեայն քան զառաջին անկազմութիւնն. զի նախ քան զընտրելն՝ եւ զգայր իսկ ոչ զչարիսն, եւ արդ աւասիկ իւրաքանչիւր մասն առնու զազդմունս չարեացն:

6. Եւ ի մարդոյ իսկ առ օրինակ. զի նախ քան զպատկերանալն եւ լինել կենդանի արուեստիւ արարչին, ի բնէ անմասն էր ի չարեաց. եւ յորժամ յԱստուծոյ մարդ լինի, յայնժամ ընդունի զազդումն չարին՝ որ գայ ի վերայ: Եւ զոր բարերարութիւն Աստուծոյ եղեալ հիւղեայն ասես՝ գտանի, զի առաւել ի յոռութիւնս հասեալ է: 7. Ապա եթէ ի չկարելոյ Աստուծոյ բառնալ զչարիսն, ասիցես, եթող նոյնպիսիս, ապա ասեմ՝ թէ անկարող իցէ Աստուած: Զի որ անկարող ոք է՝ կամ բնութեամբ տկար իցէ, եւ կամ վասն յաղթեալ լինելոյն՝ առ երկիւղի ծառայելոյ մեծագունին: 8. Եթէ ժտիցիս ասել՝ թէ Աստուած բնութեամբ տկար իցէ, թուի ինձ թէ վտանգ իցէ քեզ վասն փրկութեան. իսկ եթէ յաղթեալ առ երկիւղի ի մեծագունէ քան զնա, հարկ է թէ զչարիս մեծ քան զԱստուած գնիցես, որ բռնադատեն զյօժարութիւն կամաց նորա. որ ինձ անպատեհ թուի ասել զԱստուծոյ: Քանզի ընդէ՞ր մանաւանդ սոքա ոչ

հնարին վտանգս եկեալ զհիւղն քան զառաջին անկազմութիւնն. զի նախ քան զընտրելն եւ զզգայն զվտանգսն չարեաց՝ յապահովի եւ յանհոգութեան կայր. եւ արդ յառնելոյ զազդմունս չարեացն՝ ի տագնապի եւ ի տարակուսի կայ:

Եւ թէ կամիս՝ ի մարդոյ իսկ առ օրինակ. զի նախ քան զպատկերանալն եւ լինել կենդանի, անմասն էր ի չարեաց.

եւ յորժամ գայ ի չափ հասակի մարդոյ, յայնժամ միտք ի չարիս յիւրմէ անձնիշխանութենէ: Նոյնպէս եւ ի բարերարութենէն՝ զոր ասեն յԱստուծոյ եղեալ հիւղեայն, գտանի՝ զի ի յոռութիւնս եկն:

Ապա եթէ ի չկարելոյ Աստուծոյ բառնալ զչարիսն՝ եթող նոյնպիսիս, այնու տկարութիւն ածեն զԱստուծով,

կամ թէ բնութեամբ տկար իցէ,

կամ թէ առ երկիւղի յաղթեցաւ յայլմէ զօրագունէ քան զնա:

Եթէ յաղթեալ կասկածանօք ի մեծագունէ քան զնա ասիցեն, հարկ է թէ զչարիսն բռնադատիչս կամաց նորա դնեն.

լինէին աստուածք, որ ըստ քոց բանիցդ Աստուածոյն յաղթել կարէին. զի մեք զայն ասեմք Աստուած, որոյ իշխանութիւն իցէ ի վերայ ամենայնի։

ԺԲ. Արդ կամիմ եւ սակաւիկ մի պհիւղեայն հարցանել. եւ տուր ինձ պատասխանի յօժարութեամբ, եթէ հիւղն պա՞րզ ինչ իցէ, եթէ յօդուածով. զի ազգի ազգի իրքն յայսպիսի քննութիւնս ածեն զիս։ Զի եթէ պարզ էր հիւղն եւ միանակերպ, եւ աշխարհս յօդուածոյ եւ ի պէսպէս բնութեանց եւ ի խառնուածոց հաստատեալ, անհնարին է ասել՝ եթէ սա ի հիւղեայն լեալ իցէ։

Վասն զի չէ մարթ յօդուածոյից ի պարզ ինչ իմեքէ ունել զհաստատութիւնն. քանզի յօդուածոյն զխառնուած պարզ ինչ իրաց յայտ առնէ։ 2. Իսկ եթէ կամիցիս ասել՝ թէ հիւղն յօդուածոյ էր, ապա ասես՝ եթէ ի պարզ ինչ իրաց յօդեալ եւ կայ։ Եւ եթէ ի պարզականացն յօդեցաւ, ապա էր ժամանակ՝ զի պարզականքն առանձինն ինչ էին, եւ ի պարզականացն յօդելոյ եղեւ հիւղն. ուստի լեալ իսկ երեւի հիւղն։ Զի եթէ յօդուածով էր հիւղն, եւ յօդուա-

[1]Եւ ընդէ՞ր չարիքն ոչ լինէին աստուածք, որ ըստ Նոցա բանիցն Աստուածոյն յաղթել կարէին։

Դարձեալ հարցցուք զհիւղեայն.

պա՞րզ ինչ բնութիւն իցէ, եթէ յօդուածով. զի ազգի ազգի գործուածք իրացն յայսպիսի քննութիւնս ածեն զմեզ։ Զի եթէ պարզ բնութիւն էր հիւղն եւ միանակերպ, եւ աշխարհս ի յօդուածոց եւ ի պէսպէս բնութեանց եւ ի խառնուածոց հաստատեալ է, անհնարին է ասել՝ եթէ ի՞ հիւղեայն լեալ իցէ։
Վասն զի չէ մարթ յօդուածոյիցն ի միոջէ պարզ բնութենէն ունել զհաստատութիւնն. քանզի յօդուածոյքն ի պարզական բնութեանցն յօդին։

Եւ եթէ ի պարզական բնութեանցն յօդեցաւ, ապա էր ժամանակ՝ յորժամ հիւղն իսկ չէր ի միջի, զի ի պարզականացն յօդելոյ եղեւ հիւղն. ուստի լեալ իսկ երեւի հիւղն, եւ ոչ անաբար։ Զի եթէ յօդուածով էր հիւղն, եւ յօդուածոյքն ի

---

[1] Տպ. ունի՝ «Եւ ընդէ՞ր ըստ Նոցա բանիցն չարիքն ոչ լինէին աստուածք, որ Աստուածոյն յաղթել կարէին։»
[2] Տպ. չունի է։

ծուքն ի պարզականացն ունին զհաստատութիւնն, ապա էր երբեք զի չէր իսկ հիւղն, այն է՝ մինչ չեւ պարզականացն ի միմեանս յարեալ էր։ Եւ եթէ էր ժամանակ՝ յորժամ զի հիւղն էր, ապա չգոյր ժամանակ՝ յորժամ չէր անարար, ապա եւ չէ իսկ հիւղն անարար։

պարզականացն ունին զանձնաւորութիւն, ապա էր երբեք՝ զի չէր իսկ հիւղն, մինչ չեւ պարզականացն ի միմեանս յարեալ էր։ Եւ եթէ էր ժամանակ՝ յորժամ զի հիւղն չէր, ապա չգոյր ժամանակ՝ յորում չէր անարար։

4. Նա աւանիկ եւ բազում անարարք գտանիցին. զի եթէ Աստուած անարար էր, եւ պարզականքն եւս անարարք, ուստի հիւղն յօդեցաւ, յայտ է թէ չէին երկուքն միայն անարարք։

Զի եթէ Աստուած անարար էր, եւ պարզականքն եւս անարարք, ուստի հիւղն յօդեցաւ, յայտ է թէ չէին երկուքն միայն անարարք, այլ հինգ։

5. Համարիցի՞ս եթէ յեղելոցն եւ ոչ մին ինքեան հակառակ իցէ։

Եւսեբ. Այդպէս թուի։

Ուղղ. Այլ ջուր հրոյ ընդդիմակա՞ց իցէ։

Եւսեբ. Թուի ինձ՝ թէ ընդդիմակաց իցէ։

Ուղղ. Նոյնպէս եւ լուսոյ խաւա՞ր, եւ ցրտոյ ջե՞րմ, եւ ցամաքի խոնա՞ւ։

Եւսեբ. Այդպէս համարիմ։

Ուղղ. Արդ, եթէ եւ ոչ մին յեղելոցս ինքեան հակառակ իցէ, բայց սոքա միմեանց հակառակք են, յայտ է թէ չեն մի հիւղ եւ ոչ ի միոջէ հիւղեայ։

Եւ արդ տեսցուք, հաւանի՞ք ինչ ընդ միմեանս էին բնութիւնքն, ուստի հիւղն յօդեցաւ, թէ հակառակք իրաց։ Նա աւանիկ տեսանեմք զբնութիւնսն միմեանց հակառակս. քանզի ընդդիմակաց է հրոյ ջուր, եւ լուսոյ խաւար, եւ ցրտոյ ջերմ, եւ ցամաքի խոնաւ։

Եւ ինքեան ինչ հակառակ եւ վնասակար չէ, բայց ընկերին, եւ անտի յայտ է՝ թէ չեն ի միոջէ նիւթոյ, եւ ոչ մի նիւթն ի չորից հակառակորդաց։

6. Եւ այլ եւս նման սոցին կամիմ հարցանել։ Համարիցի՞ս՝ եթէ մասունքն չիցեն միմեանց վնասակարք։

Եւսեբ. Այդպէս համարիմ։

Ուղղ. Իսկ մա՞ն իցեն հիւղեայն հուրն եւ ջուր, նոյնպէս եւ այլք:

Եւտր. Այդպէս համարիմ:

Ուղղ. Ապա զի՞նչ: Զհամարիցի՞ս՝ եթէ փսաաակար իցէ հրոյ ջուր եւ խաւարի լոյս, եւ այլք նոյնպէս:

Եւտր. Այդպէս թուի:

Ուղղ. Ապա եթէ մասունքն ոչ իցեն միմեանց փսաաակարք, արդ աւասիկ մասունքն հիւղեայն փսաաակարք են միմեանց, ապա չեն մասունք միմեանց. իսկ եթէ չիցեն մասունք միմեանց, ապա եւ ոչ ի միոջէ հիւղեայ: Այլ եւ ոչ նոքա հիւղ իցեն. զի բնաւ եւ ոչ մին յեղելոցն ինքեան փսաաակար լինի՝ ըստ օրինակի ընդդիմակացն: 8. Զի չիք ինչ որ ինքեան ընդդիմակաց իցէ. քանզի ընդդիմակացն սովոր է ընկերին ընդդիմակաց լինել, որպէս սպիտակն ոչ եթէ ինքեան հակառակ իցէ, այլ հակառակ ասի թխոյ, եւ լոյսն ոչ եթէ բնաւ ինքեան հակառակ երեւիցի, այլ խաւարի ընդդիմակաց երեւի. եւ այլ բազում ինչ նոյնպիսի: Յայն սակս եթէ մի ինչ էր հիւղն՝ ոչ եթէ ինքեան հակառակ էր: Եւ քանզի այսպէս են ընդդիմակացքն, յայտ է թէ չէ իսկ հիւղն:

9. Եւ արդ, քանզի համարիմ՝ թէ վասն չարեաց

Արդ, եթէ մի ինչ[1] էր նիւթըն՝ ոչ եթէ ինքեան հակառակ էր, այլ ընկերին. որպէս սպիտակ՝ թխոյ. եւ քաղցր՝ դառին:

1 Տպ. ունի՝ մինչ՝

բաւական ինչ խնդիրս արարաք, թուի ինձ զհիւղեայն խնդիր թողուլ. քանզի առ ի ցուցանել՝ թէ հիւղն չէր, համարիմ բաւական իսկ խօսեցեալ։

ԺԳ. Այլ պարտիմք ի չարեացն խնդիր գալ, եւ հարկ է քննել՝ թէ զինչ պարտ իցէ զչարեացն, որ ի մարդիկ, իմանալ. թէ արդեւք ազգ[1] ինչ իցեն չարի, եթէ մասն։ Զի եթէ զնոսա ազգ ինչ չարի կոչել կամիցիս, ապա այն ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ չարն իսկ յինքեան. իսկ ցեղքն[2] յազգան իսկ քննին. որպէս եւ կենդանին ցեղ է՝ ըստ ազգին առեալ զանուանումն, որպէս ըստ մարդոյն եւ կամ ըստ այլոց նոյնպիսեաց, որ քանզի կենդանի են, ունին կամական շարժմունս։ Այլ այս ոչ եթէ այսպէս իցէ. 2. Քանզի զցեղէ չասեմք եթէ ինքնին այլ ինչ քան զազգարն իցէ։ Այսպէս պարտ է եւ զչարէն ասել։ Քանզի ասացաք՝ եթէ ցեղն յազգան ունի զհաստատութիւն իւր, բայց այլ ինչ ոչ է յինքեան։ Եւ եթէ այսպէս իցէ, յայտ է թէ չարն արարած իցէ. զի ազգքն թուին թէ արարածք իցեն, որպէս սպանութիւն եւ շնութիւն եւ որ ինչ նման է սոցին։ 3. Իսկ եթէ դար-

Եւ արդ, զհիւղեայն խնդիր թողեալ՝ զոր նիւթն ամենայնի կոչեն,

ի չարեացն խնդիր եկեսցուք՝

զո՛ր[3] ի նմանէն իմանան։ Զի յորժամ չարիքն յայտ լինիցին՝ թէ չեն անձնաւորք, անտի եւ հիւղն յանդիմանի՝ թէ ոչ էր երբեք, եւ ոչ բնութիւն անձնաւոր։ Արդ, զմարդկան իսկ չարեաց հարցցուք. Արդասիք անձանց իցեն՝ եթէ[4] անձինք ինչ չարիքն.

զի որ ինչ ի մարմինս եւ ի հոգիս շարժմունք խաղան, ոչ մարթի ասել՝ թէ այն մարդ իցէ, այլ կամական շարժմունք. զի մարդն անձնաւոր է, եւ բարքն չանձնաւորք.

որպէս սպանութիւն կամ շնութիւն՝ որ ի բարուցն գործիցին։ Արդ, եթէ այնք արարածք ինչ անձնաւորք

---

1 Իմա՝ տեսակ։
2 Իմա՝ սեռ։
3 Տպ. ունի՝ զոր։
4 Տպ. ունի՝ Ե— ԵԲԵ։

ձեւալ չարի ինչ մասն զուսաստիցես, եւ քանզի սոքա արարած են, ապա եւ նա արարած իցէ. զի որոյ մասն ինչ արարած է, յայտ է եթէ նա ամենեւին իսկ արարած է. զի բովանդակն[1] ի մասանց կազմեալ եւ կայ: Եւ բովանդակն չէ բնաւ լինելոց, եթէ մասունքն չիցեն. իսկ մասունքն լինիցին, թէպէտ եւ բովանդակն չիցէ բնաւ լեալ: Եւ չիք ինչ բնաւ յարարածոց, որոյ մի մասն արարած իցէ, եւ միւս մասն չիցէ արարած: 4. Իսկ եթէ զմանէ խնդիր առնիցեմք, ապա էր երբեք՝ զի չարն էր՝ բայց ոչ էր բովանդակ, այն է՝ մինչ չեւ Աստուծոյ ըղհիւղն արարեալ էր: Այլ եղեւ բովանդակ, յորժամ մարդն արարաւ յԱստուծոյ. քանզի մասանց չարին գտանի մարդն արարիչ: Եւ յայնմ հետէ եւ բաւանդակ իսկ լինելոյ չարին Աստուած գտանի պատճառ, որ զնայն[2] արար. զոր զԱստուծոյ ասել ոչ բարւոք թուի: 5. Եթէ բնաւ այսպիսի ինչ չկամիցիս ասել, սակայն ասիցես՝ եթէ չարն գործ ինչ չարին իցէ, ապա ցուցանես՝ եթէ արարած էր նա. զի գործ ուրուք ի գործելոյ անտի սկիզբն առնու լինելոյ: Ցուե՛լ եւս՝ թէ չասես եթէ չարն այլ ինչ իցէ քան զսոսա: Զի զի՞նչ

իցեն, հարկ է եւ զպատճառն՝ զոր դնեն, արարած անձնաւոր կարծել. զի որոյ մասն ինչ արարած է, յայտ է եթէ նա ամենեւին իսկ արարած է.

եւ որոյ մասնն չէ արարած նա բնաւ իսկ չէ արարած

Ապա ուրեմն էր երբեք՝ զի բնաւ չէր [3]ամենեւին ինչ չարն բովանդակ, մինչ չեւ Աստուծոյ զմարդն արարեալ էր, ուստի չարիքն լինին. քանզի մասանց չարեաց գտանի մարդն արարիչ. անտի յայտ է թէ եւ բաւանդակ իսկ չարեացն արարիչ Աստուած է. զոր ամենեւին մի՛ երբեք լիցի ասել՝ թէ Աստուած չարեաց պատճառ իցէ.

---

1 Իմա՝ ամբողջն։
2 Այսինքն՝ զմարդն։
3 Ցպ. ունի՝ ամենեւին ինչ արարիչ բովանդակ։

այլ ինչ գործ չարութեան քան զմարդկանն կարիցես ցուցանել. զի թէ գործիչն ոչ եթէ ըստ օրինակի էութեանն չարութիւն իցէ, այլ յօրինակէ յօժարութեան կամացն՝ որով որոշիցէ գործել զայնոսիկ, յումմէ նմին եւ անուն չարութեան դնի. զայն յառաջագոյն իսկ ցուցի բանիւս: Տ ԺԳ. Եւէբ. Զայսց իբաց, թուի ինձ, ո՛վ բարեկամ, եթէ բաւականն ճառեցաք: Այլ եւ քեզ կարծեմ չէ ինչ անյայտ, զի առն իւրաքանչիւր է՝ ոչ դիւրեաւ ճանաչել զընկերն. քանզի ճշդիւ քննութիւն հիւղեայն յայտ յանդիման զիրսն ցուցանէ: Վասն որոյ, եթէ հաճոյ իցէ քեզ, ներեա՛ ինձ հարցանել ինչ ցքեզ, որ կամիմս սակաւ ինչ հարցանել: Զի համարիմ՝ թէ այսու ճշմարտութիւնն հաւաստեաւ գտցի. այնու զի բանք քո ոչ ելցեն ի դերեւ հարցմամբք իմովք. քանզի մեք երկոքեան առ հասարակ մխեցաք ի խնդիր. ապա ճշմարտութիւնն, որպէս եւ էն, երեւեսցի: Զի բազում անգամ ծածկի ճըշմարտութիւնն, այնու զի ոչ այնպէս՝ որպէս ճշմարտութեանն պատշաճ է, յուզեալ խնդրի: Յայն սակս ցանկայի այսպիսի պատասխանիս ի քէն ընդունել. զի յորժամ այսպէս մեծն[1] եկն ի յայտ,

այլ այն՝ որ իւրով կամօք զգործ չարեացն գործիցէ. եւ յումմէ չարն գործի՝ յիրաւի նմին եւ անուն չարութեան դնի, որպէս եւ յառաջագոյն իսկ ասացաք

Եւ արդ եկեսցուք յիրացն իսկ ի քնին. զի յորժամ ճշդիւ մրցութիւնք լինիցին՝ դիւրաւ զյայտնութիւն ճառիցն յանդիման կացուցանիցեն:

---

[1] Այսինքն՝ մեծ մասն:

զպատշաճն ստուգութեամբ ընտրել միում միում դիւրագիւտ լինիցի: 2. Այլ եւ ես ոչ կամիմ, զի եւ բանք իմ առանց քննութեան մնասցեն. նաեւ յայնոսիկ՝ զոր յառաջագոյն ասացի, եթէ եւ հակառակ ինչ իցէ այնմ՝ զոր խընդրեմն[1]: Այլ ամենայն յօժարութեամբ կամաց կամիմ՝ զի հարցցի զմանէ. եւ աղաչեմ զքեզ պնդութեամբ կալ մնալ ի խընդրիդ. քանզի համարիմ իմն այնպէս՝ թէ անտի օգուտ ինձ մեծ հասանիցէ: Զի յորժամ ճշդիւ իրքն քննեալ երեւիցին ինձ, յայնժամ ոչ եթէ կարծեօք ինչ ընկալայց զճշմարտութիւնն, այլ ճշդագոյն քննութեամբ: Յայն սակս արա սկիզբն բանիցդ:

3. Ուղղ. Զաստուած բարի՞ ասիցես:

Եւէր. Բարի ասեմ զնա:

Ուղղ. Այլ բարին ա՞յն իսկ իցէ՝ չգործել բնաւ զչարիսն, զորոց ասեմք թէ չար են:

Եւէր. Այդպէս ասեմ:

Ուղղ. Զի՞արդ հարցանիցես զչարեաց, այն է՝ զսպանութենէ կամ զշնութենէ[2] եւ զայլոցն նոյնպիսեաց, կամ զայնմանէ՝ եթէ

Արդ, զԱստուած բարի՞ եւ բարերա՞ր ասիցեն:

Հարկ է թէ բարի եւ բարերար ասեն:

եւ չարութիւն ինչ ի նա ոչ մերձենայ:

Եւ եթէ այն այնպէս իցէ

նախ զշնութենէ

եւ զպոռնկութենէ հարցցուք, եւ ապա զայլոցն նոյն-

---

1 B այս տեղ կը դնէ ? նշանը՝ տարակուսելով Տի իմաստին վրայ:

2 B սլաւական թարգմանութեան այս բառն գերմ. Unzucht = (վաւաշութիւն, անպարկեշտ գործ,) կը թարգմանէ: Եզնիկ բնագրին իմաստը տալու համար կը դնէ՝ չարութիւն եւ պոռնկութիւն:

*որչափոյք ի Նոցանէ՝ որ զայս ժտեցան*

*պիսեաց։ Եթէ Աստուծոյ կամօք գործէին այնպիսի չարիս, ընդէ՞ր ի գործելեաց չարեացն վրէժս պահանջէ. այլ այնու զի ըստ չարեաց գործոցն վրէժս պահանջիցէ՝ յայտ է եթէ ոչ ախորժէ զչարիսն, այլ ատեայ*

*գործել, ածան ի դատաստան Աստուծոյ, եւ պատուհասն՝ մինչ Նոքա արդարութեամբ պատուհասին, չար թուի այնոցիկ՝ որ զպատուհասն ընկալան վասն զչարն գործելոյ։ Իսկ եթէ ի Նոյն՝ զորմէ յառաջագոյն բանք եղեն, գայցես, ասեմ՝ թէ Աստուած չէ այնր արարիչ, զի անմտութեան թուի ինձ զչարութիւնն առ Աստուած մերձեցուցանել. քանզի յայտ յանդիման երեւին Նոքին՝ որք ընտրեցին գործել զչարն։ 4. Եւ եթէ մարթ իցէ ասել ինչ զգնացիցն Աստուծոյ առ գործս չարեաց, ոչ ասեմ եթէ չար է այն, այլ արդար։ Զի չարն պարտի՝ ըստ արդարութեան, քանզի չարիս գործեաց, զարդար պատուհասն ընդունել։ Այլ զարդարոյ ոչ ոք ասիցէ՝ թէ չար իցէ, բայց այն միայն՝ որ ընդ չարն ախորժիցէ.*

*եւ պատիժս պատուհասից ի վերայ գործելեացն ածէ. որոց, ըստ իւրեանց անմտութեան, խրատք Նորա չարութիւն կարծին.*

*որպէս այժմու սպանողքն յորժամ յաւագաց պատուհասիցին, ասեմ՝ եթէ յիրաւի պատուհասեցան. յիրաւի պատուհասեալ ասեմ վասն չարութեանն։ Զի զմի մի ի մարդկանէ,*

*որպէս եւ այժմ սպանողք յորժամ ի պատիժս մատնեն՝ ոչ բարերարս զպատժածուսն կոչեն, այլ չարարարս. քանզի այնպիսի բարք են չարագործաց՝ զիրաւունսն անիրաւութիւն*

| | |
|---|---|
| որ արդարն գործիցէ[1]... Համարել անիրաւ. այլ մեք ոչ ասեմք թէ այն չար իցէ. զի եւ ես ասեմ՝ եթէ ճշմարտիւ արդար է: | ասել: Բայց մեզ մի՛ լիցի այնպիսի ինչ ասել, |
| 5. Այլ զխնդրոցն, զորոց յառաջագոյն խոստացար, տացի վերագոյնն՝ զՀիւղեայն, թէ չէ Աստուած արարիչ նորա: — Ապա զի՞նչ ինչ իցէ չարս այս: Զի զչարէն, զորմէ քննեցաքս, յայտնեցի զկարծիս իմ. այնու զի բանիւք արարի ընտրութիւն[2]. այլ ցայժմ ոչ տացեր՝ թէ որպիսի՞ ինչ իցէ այն, եթէ արդեւք էութի՞ւն ինչ կամ արգասիք էութեանց: Զի եթէ էութիւն ասիցես, սխալես ի բանսդ. Իսկ եթէ արգասիս . . . | այլ զչարիսն ոչ անձնաւորս կարծել, |
| Եւոդ. Ասեմ թէ իցէ այնպէս: | |
| 6. Ո-ղւ. Այլ քանզի կամիս զՀարցուածս իմ զատանել, ապա որպիսի՞ ինչ իցեն արգասիքս, վասն ո՞յր եւ ուստի՞ գայցէ, տաս ինձ յայտնապէս: Զի՝ թէ ոչ ինչ ըստ մտաց էութեան չար է, տացի քեզ յառաջագոյն ի խնդրելդ, եւ դու յիշիցես արդեւք զոր ինչ խոստացայ, յորժամ ազատ կամաց մարդոյ զչարն ետու: Այլ քանզի այժմ կամիս՝ զի զչարէն ի սկզբանէ անտի, որչափ իմանամս, արարից սկիզբն խօսելոյ, որչափ հնար իցէ պայծառագոյնս | այլ կամածինս: |

---

[1] Այստեղ՝ ինչպէս եւ 5դ տան վերջը՝ Տի ձեռագիրն պակասաւոր է:

[2] Իմա՝ ստորագրեցի, գաղափարը կազմեցի:

եղից քեզ առաջի զքննութիւնս՝ յառաջ մատուցեալ զխնդիրն։

GS[1] ԺԵ. Յառաջ քան զամենայն ասեմ, թէ չիք ինչ չար ի բնէ. այլ յօրինակէ ի կիր արկանելոյ կոչի չարութիւն. եւ ինձ պատշաճ թուի ի շնութենէ սկիզբն առնել։ Ապաքէն շնութեան անուն ի մերձենալոյ ի միմեանս առն եւ կնոջ լինի. եթէ յիւր կին ոք օրինօք մերձենայցէ վասն որդէծնութեան եւ զաւակի սերելոյ, բարիոք է մերձաւորութիւնն։ Ապա եթէ ուրուք զօրինօք մերձաւորութիւնն թողեալ՝ յայլոյ ամուսնութիւն անօրինիցի՝ [2]յօտար մահիճս ելեալ, գործ մեծի չարութեան գործէ։ Մերձաւորութիւնն նոյն է, այլ օրինակ ի կիր արկանելոյն ոչ նոյնպիսի. քանզի մին բուն հայր լինի, եւ միւսն գողունի ծնող։ 2. Նոյն բանք են եւ վասն պոռնկութեան. եթէ վասն որդէծնութեան ոք մերձենայցէ ի կին, ոչ մեղանչէ. ապա եթէ ոք ի կին պոռնիկ մերձենայցէ առ ցանկութեան, եւ ոչ վասն զաւակի սերելոյ, մեղանչէ եւ անիրաւի։ Եւ յայտ է

Ապաքէն պոռնկութիւն եւ շնութիւն ի մերձենալոյ ի միմեանս առն եւ կնոջ լինին. եթէ յիւր կին ոք օրինօք ամուսնացեալ մերձենայցէ վասն որդէծնութեան եւ զաւակի սերելոյ, բարիոք է մերձաւորութիւնն։ Ապա եթէ ուրուք թողեալ զիւր կին՝ զայլոյ ամուսնութիւնն թշնամանիցէ, գործ չարութեան գործէ։ Եւ թէպէտ մերձաւորութիւնն նոյն է, եւ օրինակ մերձաւորութեանն ոչ նոյնպիսի. քանզի մին բուն հայր լինի որդւոց[3], եւ միւսն գողունի։ Նոյն բանք են եւ վասն պոռնկութեան. եթէ վասն որդէծնութեան ոք մերձենայցէ յիւր կին, յիրաւի է. ապա եթէ առ ցանկութեան օտար մարմնոյ[4] ցանկանայցէ,

՝կարի իսկ անիրաւութիւն։ Եւ յայտ է՝ թէ իրքն

---

1 G Ադամանտիոսի Տրամախօսութենէն առնուած շատ տեղ թերի է. S ամբողջական է։ Թարգմանութիւնս Sի համեմատ է, միտ դնելով եւ Gի ընծայած ընթերցուածոյն։

2 “Յօտար մահիճս ելեալ„ ունի S, իսկ G պակասաւոր։

3 Տպ. ունի՝ որդւոց։

4 Տպ. ունի՝ մարմնոյ։

| | |
|---|---|
| թէ միաւորութիւնն՝ յորժամ զօրինակ ի կիր արկանելոյն անտես առնիցես, չէ ինչ չար. եւ չար յայնժամ լինի, յորժամ օրինակն յայտնի լինիցի։ 3. Նա եւ զսպանութենէ նոյն բանք են. զի յորժամ զըմբռնեալն ի շնութեան[1] մատնեալ ի ձեռս օրինաց, սպանանիցէ, պատուհաս ի վերայ ածեալ վասն գործոյն, չառնէ չար ինչ։ Ապա եթէ ոք զայն՝ որոյ ոչ ինչ ի վճռականացն[2] գործեալ իցէ, սպանանիցէ, ոչ վասն այլ ինչ իրաց՝ բայց միայն վասն զերծանելոյ զինչս իւր[3], այն է՝ զստացուածս եւ զմեծութիւնս, չարութիւն գործէ. եւ թէպէտ գործն նոյն է | չար յայնժամ լինին, յորժամ պէտքն օրինօք ոչ վճարեսցին։ Նա եւ զսպանութենէ նոյն բանք են. յորժամ զըմբռնեալն ի շնութեան ոք սպանանիցէ, պատուհաս ի վերայ ածեալ վասն յանդգնութեանն, չառնէ չար ինչ։ Ապա եթէ զանմեղն ոք, որոյ ոչ ինչ ի վճռականացն գործեալ իցէ, սպանանիցէ, կամ վասն ինչս զերծանելոյ, կամ վասն ստացուածս հատանելոյ, չարութիւն գործէ. եւ գործն նոյն |
| երկոցունց, բայց. օրինակ գործոյն ոչ նոյնպիսի։ 4. Նա եւ յինչս առնուլ՝ յօրինակէ առնլոյն չար լինի. զի յորժամ ոք գթացեալ տայցէ ինչ ումեք յորոց ունին, որ ի նմանէն առնուցու՝ ոչինչ չարութիւն գործէ. իսկ եթէ ոք [4]հա- | է երկոցունց, բայց օրինակն ոչ նոյնպիսի։ Նա եւ յինչս առնուլ նոյն բանք են. որ պարգեւ ի տեառնէ կամ ձիր ի բարեկամէ առնուցու, ոչ ինչ չարութիւն գործէ. |
| կառակ կամաց նորա բռնաբար հանիցէ կամ ի ծածուկ, չարութիւն գործէ. եւ առնուլ զօտարին՝ երկոցուն նոյն է, բայց օրինակ առնլոյն առնէ զայն չար կամ բարի։ 5. Նոյնպէս եւ աստուածպաշտութիւն յօ- | իսկ որ բռնաբար յանաւագէն հանիցէ, չարութիւն գործէ. եւ առնուլն երկոցուն նոյն է, բայց օրինակ առնլոյն ոչ նոյնպիսի, Նոյնպէս եւ աստուածպաշտութեան |

1 «Մատնեալ ի ձեռս օրինաց» ունի S, իսկ G պակասաւոր։

2 Իմա՝ դատապարտելի՝ խոտելի գործ։

3 Այսինքն՝ իւր ստացուածքը յափշտակելուն համար։

4 G չունի «հակառակ կամաց նորա»։

րինակէ անտի լինի չար. զի եթէ զճշմարիտն Աստուած ոք պաշտիցէ, գործ բարի գործէ. ապա եթէ թողեալ զճշմարիտն՝ զչգոյսն պաշտիցէ եւ զպաշտօն լաւագունին փայտից եւ քարանց մատուցանել կամիցի, չար գործէ: Արդ, անուն աստուածպաշտութեան նոյն է, այլ օրինակ ի կիր արկանելոյն փոխէ զգործեալն: Տ 6. Նա եւ պատկերն կամ դրօշեալ գործել՝ թէպէտ եւ չիցէ ինչ չար յանձնէ, այլ վասն օրինակի ի կիր արկանելոյն չար լինի:

յօրինակէ անտի ցուցանի չարութիւնն. եթէ զճըշմարիտն Աստուած ոք պաշտիցէ, գործ ազնուական գործէ. ապա եթէ թողեալ զճշմարիտն՝ քարանց եւ փայտից՝ որպէս թէ Աստուծոյ, պաշտօն մատուցանիցէ, անհնարին վնաս գործէ. զի զօրինակ պիտոյիցն[1] յանպատեհ իրս դարձոյց:

Զի եթէ դրօշեալ ոք գործիցէ, որ զպատկեր մարդոյ ունիցի, ոչ վասն արուեստին եւ ոչ զի ի պատկերի անդ ընկերին զպատկեր բարեկամի տեսանիցէ, այլ վասն ի պաշտօն առեալ երկիր պագանելոյ իբր Աստուծոյ, գործ չարութեան գործէ: Եւ այսպէս օրինակ գործոյն եւ միտք գործողին գործեն զչարն: 7. Եւ զի մի՛ թուիցի՝ թէ զայսմանէ միայն ճառեալ ընդ վայր ծախիցեմ զժամանակս, յայլ ինչ իրս եկեսցուք: Առ քեզ օրինակ զերկաթ. որպէս վարեն նովաւ՝ զայն մերթ բարի եւ մերթ չար յարդարէ. զի եթէ ոք նովաւ ոչ բարուոք վարիցի, այն է՝ յօգտակարս, որպէս ի խոփ առ ի զերկիր արօ-

Եթէ պատկեր ոք գործիցէ, եւ ոչ վասն սիրոյ սիրելւոյն[2]՝ որ մահուամբ յաչացն վրիպեցաւ, կամ վասն ըղճարտարութիւն ցուցանելոյ, այլ ի պաշտօն առեալ երկիր պագանիցէ իբր Աստուծոյ, գործ չարութեա՛ն

գործէ: Եւ այսպէս կաղմած[3] իրաց ինչ եւ[4] միտք գործողին գործեն զչարն:

Որպէս եւ երկաթ մերթ ի բարիս պաշտի, եւ մերթ ի չար.

զի եթէ խոփ եւ գերանդի եւ մանգաղ ոք գործիցէ,

---

1 Այսինքն՝ գործածութեան կերպը:
2 Տպ. ունի՝ սիրելոյն:
3 Տպ. ունի՝ կազմածոյ:
4 Տպ. ունի՝ Եւ: Իզմիրին ունի՝ Եւ:

բաղիր առնելոյ, կամ յայլ ինչ՝ որ օգտակար իցէ, որպէս ի տնկել զտունկս կամ առ ի սերմանել զսերմանիս, այլ ի սուսեր եւ ի գեղարդն եւ յայլ ինչ՝ որ փնասակար մարդկան է, գործ չարութեան գործէ։ Զայսմանէ ասեմ՝ թէ ի մարդկանէ գործի, քանզի զգործելիսն իսկ տեսանեմք, յորոց չարն գործեալ ցուցանի։

ԺԶ. Եւէր. Եւ զի զչարէն խօսեցար եւ կամեցար ցուցանել՝ եթէ է իսկ չարն, եւ թէ մարդիկ են չարեացն գործելիք, կամիմ սակաւիկ մի եւ դարձեալ հարցանել զքեզ. Իսկ մարդիկ յանձա՞նց ինչ ունիցին զայնպիսի շարժմունս, այսինքն՝ մարդիկ անձամբ զտին զօրինակ պաշտելոյն[1], թէ յԱստուծոյ այնպէս լեալ իցեն, կամ թէ ա՞յլ ոք իցէ՝ որ զմարդիկ յայսպիսիս վարիցէ։

2. Ո՛ւղ. Զի յԱստուծոյ մարդկան այսպիսի ինչ լինել՝ չթուի ինձ պատշաճ ասել. այլ ասեմ ունել անձնիշխանութիւն, այսինքն՝ ազատութիւն առաջնոյ մարդոյն, եւ ի նմանէն զնոյն ազատութիւն պայազատացն սերնդոց ժառանգել։ Արդ ասեմ՝ եթէ մարդ ազատ լեալ է. այլ ում կամի ծառայանայ,

ի բարուք իրս պաշտեցաւ.

ապա եթէ սուսեր եւ գեղարդն եւ սլաք եւ այլ ինչ զէն՝ որ փնասակար մարդկան է, գործ չարութեան գործէ.
եւ պատճառ չարութեանն գործելին, եւ ոչ երկաթն։

Իսկ մարդիկ, ասեն, յանձա՞նց ինչ ունիցին զայնպիսի շարժմունս,

թէ յԱստուծոյ լեալ իցեն, կամ թէ այլ ոք իցէ՝ որ զայն ի մարդիկ արկանիցէ։

ՅԱստուծոյ մարդկան այսպիսի ինչ լինել՝ չթուի պատշաճ ասել, այլ ունել անձնիշխանութիւն եւ ազատութիւն առաջնոյ մարդոյն եղելոյ յԱստուծոյ, եւ ի նմանէն զնոյն իւրոց պայազատացն որդւոց[2] ժառանգել։ Եւ արդ, մարդն[3] առեալ զանձնիշխանութիւնն, ում կամի ծառայանայ, որ մեծ շնորհն

1 իմա՝ գործածութեան։
2 Ցպ. չունի՝ որդւոց։ Իզմիրինն ունի՝ որդւոցն։
3 Ցպ. չունի՝ մարդն։ Իզմիրինն ունի։

զոր եւ կոչեմ մեծ շնորհ պարգեւեալ նմա յԱստուծոյ: 3. Քանզի այն ամենայն ի հարկէ ծառայէ աստուածական հրամանին. եթէ զերկնից ասիցես՝ կայ հաստատեալ եւ բառնայ զՏէրն եւ ոչ շարժեալ ա՛ցանէ ըստ սահմանեալ նմա տեղին. եւ եթէ զարեգականէ կամիցիս ասել, եւ նա կատարէ զսահմանեալ նմա շարժումն, եւ չիշխէ խուսափել յընթացիցն, այլ ի հարկէ ծառայէ Տեառն: Նոյնպէս եւ զերկիր սեղմացեալ տեսանես, որ եւ բարձեալ բերէ[3] զհրաման հրամանատուին: 4. Նոյնպէս եւ այլք ի հարկէ ծառայանան իւրեանց արարչին, զի եւ ոչ մին իշխէ այլ ինչ քան զայն՝ յոր կարգեցաւն, գործել. վասն որոյ ոչ գովեմք զնոսա, զի այսպէս իւրեանց տեառն հնազանդեցան. եւ ոչ յոյս ինչ մեծ պահեալ իցէ նոցա՝ վասն զի զհրամայեալսն յօժարութեամբ արարին: 5. Բայց մարդոյ առեալ զանձնիշխանութիւն՝ ում կամի ծառայանայ, զանձն արարեալ ի ծառայ, ոչ ի հարկէ բնութեան բռնադատեալ եւ ոչ ի կարողութենէ զօրութեան զրկեալ,

է պարգեւեալ[1] նմա յԱստուծոյ: Քանզի այն ամենայն ի հարկէ ծառայէ աստուածական հրամանին. եթէ զերկնից ասիցես՝ կայ հաստատեալ, եւ ոչ շարժի

ի սահմանելոյ նմա տեղւոյն. եւ եթէ զարեգականէ կամիցիս ասել, սակայն եւ նա կատարէ զգատուցեալ[2] նմա զշարժումն, եւ չիշխէ խուսափել յընթացիցն, այլ ի հարկէ ծառայէ տէրունական հրամանին: Նոյնպէս եւ զերկիր սեղմացեալ տեսանեմք, որ[4] եւ բարձեալ բերէ զհրաման հրամանատուին: Եւ զայլսն ամենայն համակերտս ծառայացեալս հրամանաց արարչին, եւ չիշխեն այլ ինչ քան զայն՝ յոր կարգեցանն, գործել. վասն որոյ ոչ[5] գովեմք զնոսա՝

յաղագս զսահմանս հրամանացն պահելոյ:

Բայց մարդոյ առեալ զանձնիշխանութիւն՝ ում կամի ծառայանայ.

ոչ ի հարկէ բնութեան բռնադատեալ, ոչ ի զօրութենէն՝ որ նմա վասն

---

1 Ցպ. ունի՝ պարգեւեալ է:

2 Բնագրին δρίζω բառն, որ թէ սահմանել եւ թէ զատանել կը նշանակէ, Եզնիկ կը թարգմանէ զատանել:

3 Իմա՝ կը կատարէ:

4 Ցպ. չունի՝ որ: Իզմիրեանն ունի:

5 Ցպ. չունի՝ ոչ:

որ վասն լաւութեանց ինչ նմա շնորհեալ ասեմ, որպէս զի եւս լաւագոյն ինչ քան զայն՝ զոր ունին, ընկալցի ի Մեծէն, զոր ի հնազանդութենէն միայն շահի, եւ զոր իբրեւ պարտս ինչ պահանջէ յարարչէն։ 6. Եւ զայն ոչ եթէ առ եղեռանէ ինչ լեալ ասեմ մարդոյն, այլ վասն լաւութեանց։ Զի եթէ իբրեւ զմի ինչ ի տարերաց լեալ էր, կամ ի նոցանէ՝ որ ի հարկէն ծառայեն Աստուծոյ, ապա եւ վարձս ընդ կամակարութեանն առնլոյ չէր արժանի. այլ իբրեւ գործի մի էր արարչին, Տ որ ոչ վասն բարւոյ գործոյ գովութիւն, GS եւ ոչ վասն չար գործոյ պարսաւանս ընդունէր. զի պատճառ նոցին այն էր որ զնա վարէր։ Նա եւ ոչ զլաւ ինչ գիտէր այնուհետեւ մարդն. քանզի չէր հմուտ այլ իմիք, բայց այնմ եւեթ՝ յոր արարեալն էր։ 7. Վասն որոյ ասեմ՝ թէ Աստուած այնպէս պատուել զմարդն յօժարեցաւ, զի առ լաւութեանցն խելամուտ լինելոյ՝ զանձնիշխանութիւնն պարգեւեաց նմա, որով կարող իցէ առնել զինչ եւ կամեսցի, եւ զանձնիշխանութիւնն նորա ի լաւն խրատէ դարձուցանել, ոչ եթէ զկամակարութիւնն վերստին հանելով ի նմանէ, այլ զլաւութիւնն նմա ցուցանելով։

լաւութեանց շնորհեցաւ, կասեալ,

այլ ի հնազանդութենէ միայն շահի զօգուտն, եւ յանհնազանդութենէ զվնաս։ Եւ զայն ոչ եթէ առ եղեռանէ ինչ լեալ ասեմք մարդոյն, այլ վասն լաւութեանց։ Զի եթէ իբրեւ զմի ինչ յայլոցն բնութեանց լեալ էր՝ որ[1] ի հարկէն ծառայեն Աստուծոյ, ապա եւ վարձս ընդ կամակարութեանն առնլոյ չէր արժանի. այլ իբրեւ գործի մի էր արարչին, զոր թէպէտ ի չար վարէր եւ թէպէտ ի բարի, ոչ պարսաւանք ինչ էին նմա եւ ոչ գովութիւնք. այլ պատճառ այն էր՝ որ զնա այնպէսն վարէր։ Նա եւ ոչ զլաւ ինչ գիտէր այնուհետեւ մարդն. քանզի չէր հմուտ այլ իմիք, բայց այնմ եւեթ՝ յոր պատշաճեալն էր։ Այլ

Աստուած այնպէս պատուել զմարդն կամեցաւ, զի առ լաւութեանցն խելամուտ լինելոյ՝ զանձնիշխանութիւնն պարգեւեաց նմա, որով կարող իցէ առնել զինչ եւ կամեսցի, եւ զանձնիշխանութիւնն նորա ի լաւն խրատէ դարձուցանել։

---

1 Տպ. ունի՝ զոր։ Իզմիրինն՝ որ։

Զի կամակարութիւնն միայ ի նմա, թէպէտ եւ հրաման ինչ տայցէ. այլ առաջնորդէ նմա Աստուած զկամակարութիւն անձնիշխանութեան ի լաւագոյնն դարձուցանել: 8. Որպէս հայր ոք յորժամ զորդի իւր խրատիցէ, որ կարողն իցէ ուսումն ինչ ուսանել կամ ոչ ուսանել, յառաջադէմ յուսումն լինել. այլ զի զլաւն նմա ցուցանէ՝ ոչ եթէ այնու զկամակարութիւն կարողութեան որդւոյն հանիցէ, նա եւ յորժամ չկամիցի կամակարութեամբ ուսանել: Նոյնպէս եւ զԱստուծոյ իմանամ, եթէ յորժամ հրամայիցէ անսալ հրամանացն, զկամակար իշխանութիւնն ոչ հանէ ի նմանէ, եւ ոչ զկարողութիւն չանսալոյ հրամանացն: 9. Զի ի սկզբանէ ցուցանի՝ եթէ այնպէս առաջնորդելովն ոչ հանիցէ զկարողութիւնն. այլ հրամայէ զի մարդն կարող վայելելոյ ի լաւութիւնս լինիցի. քանզի այս զհետ գայ անսալոյ հրամանին Աստուծոյ: Վասն որոյ կամի հրամայել, ոչ զի զիշխանութիւնն՝ զոր ետ, հանիցէ, այլ զի զլաւագոյնն տայցէ նմա՝ որ արժանաւորն է մեծամեծաց. այնու զի անսաց Աստուծոյ, թէպէտ եւ չանսալոյն իշխանութիւն ունիցի: Տ. 10. Քանզի ոչ եթէ վայրապար ինչ կամէր Աստուած զայնպիսի պարգեւս տալ, որ յաւիտենական ա-

Որպէս հայր ոք յորժամ զորդի իւր խրատիցէ՝ որ կարողն իցէ ուսումն ինչ ուսանել, չծուլալ յուսմանէն, այլ յառաջադէմ լինել ի լաւն ստիպէ. վասն զի գիտէ՝ եթէ կարող է յառաջադէմ լինել, պահանջէ զուսումն՝ յոր աւանդեցաւ:

Նոյնպէս եւ զԱստուծոյ պարտ է իմանալ՝ եթէ յօժարեցուցանէ զմարդն անսալ հրամանաց նորա. բայց զկամակար իշխանութիւնն ոչ հանէ ի նմանէ, որով կարողն է անսալ եւ չանսալ հրամանացն.

այլ խրատէ եւ յօժարեցուցանէ զմարդն զի լաւութեանցն ցանկացող լինիցի,

որովք արժանաւոր մեծաց պարգեւաց լինիցի, եթէ անսայցէ Աստուծոյ. այլ զի եւ չանսալոյն իշխանութիւն ունիցի: Քանզի ոչ եթէ վայրապար ինչ կամէր Աստուած զայնպիսի պարգեւս տալ, որ յաւիտենա-

նեղծութիւնն է։ Զի անմտութիւն էր յանիրաւի զայն տալ. այլ յանիրաւի տուեալ լինէր, եթէ մարդն ոչ ունէր իշխանութիւն երկոցունց, անսալոյ այնմ՝ զոր Աստուածն հրամայէր, եւ չանսալոյ այնմ՝ զոր Նայն չախորժէր[1]։ Զի իրաւամբք այն է, յորժամ արժանի ըստ որոց գործեացն ոք ինչ առնուցու։ Եւ արդ, զիա՞րդ երեւէր ընտրութիւն[2] գործոցն, եթէ ոչ ունէր մարդն իշխանութիւն երկոցունց։

G. ԺԸ. Արդ անձնիշխան լեալ ասեմ զմարդն[3].

GS. Իբր ոչ եթէ չար ինչ յառաջագոյն կայր, զոր ըստ կամս ընտրելոյ իշխանութիւն տուեալ էր մարդոյն. այլ պատճառ չարին[4] է՝ անսալ Աստուծոյ կամ չանսալ. եւ այս իսկ է անձնիշխանութեամբ կամելն։ Զ. Եւ արդ, լեալ մարդն՝ առնոյր պատուէր յԱստուծոյ, եւ անտի լինէր սկիզբն չարեաց. քանզի Նա ոչ հնազանդէր աստուածական հրամանին։ Եւ այս իսկ եւեթ էր չարն՝ չհնազանդելն, որ եւ սկիզբն առ լինելոյ։ Զի ոչ ոք կարէ անարար ինչ զչարն ասել. քանզի արարած էր գործե-

կան անեղծութիւն է։ Զի վայրապար իսկ էր այնպիսւոյն[5] տալ՝ որ ոչ ունէր իշխանութիւն երկոցունց, անսալոյ այնմ՝ զոր Աստուածն կամէր, եւ չանսալոյ այնմ՝ զոր Նայն չախորժէր։ Բայց իրաւամբք այն է, յորժամ արժանի ըստ որոց գործեացն ոք ինչ առնուցու։ Եւ արդ, զիա՞րդ երեւէր ընտրութիւն գործոցն, եթէ ոչ ունէր մարդն իշխանութիւն երկոցունց, եւ անսալոյն եւ չանսալոյն։

Եւ արդ, յայտ է թէ անձնիշխան եղեւ մարդն՝ առնել զբարի եւ ժտել ի չար. իբր ոչ եթէ չար ինչ առաջի կայր, յոր ժտիցի. այլ այն եւեթ առաջի կայր՝ կամ անսալ Աստուծոյ կամ չանսալ, եւ զնոյն եւեթ պատճառ չարին իմանալ. Քանզի լեալ մարդն առաջին՝ առնոյր պատուէր յԱստուծոյ. եւ չհնազանդեալ աստուածական հրամանին մտաբերէր ի չարիս, եւ անտի լինէր սկիզբն չարեաց։

Ուստի ոչ ոք կարէ անարար ինչ եւ անձնաւոր զչարն ցուցանել. եւ դար-

1 B կը նշանակէ այստեղ իբրեւ պակասաւոր, սակայն Եզնիկայ թարգմանութիւնը կը վկայէ որ ոչինչ կը պակսի.
2 Իմա՝ տարբերութիւն։
3 Այս նախադասութիւնը չունի S։
4 Չարին չիք ի բնագրին, բայց իմաստը կը պահանջէ։
5 Տպ. ունի՝ այնպիսոյն։

լին: 3. Այլ կամիցիս ընդունելութեամբ հարցանել, ուստի իցէ անսաստութիւնն: Այլ այս ի գիրս ինչ աստուածաշունչս յայտնագոյնս գտանի. յայն սակս եւ ես ոչ ասեմ այսպէս լեալ մարդոյն յԱստուծոյ, այլ ասեմ՝ եթէ յուրուք վարդապետութենէ դրդեալ՝ լեալ ստունգանող: Զի ոչ եթէ այնպիսի ինչ բնութեամբ հաստատեալ է մարդն: Եթէ այնպիսի ինչ բնութիւն մարդոյն առեալ էր, ապա ոչ յուրուք վարդապետութենէ նմա դիպէր անսաստութիւնն, զի ինքն իսկ այնպիսի ինչ բնութիւն ունէր:

4. Այլ ասէ ուրեք աստուածական բարբառն, եթէ Մարդիկ եղեն «ուսեալք զչարիս„[1]: Ուստի ասեմ մարդն անսաստել Աստուծոյ. զի այս իսկ է միայն չարն՝ հակառակ Աստուծոյ կամացն գործել. զի ոչ եթէ ուսանի մարդ զչարն յինքեան. որ վար-

ձեալ ոչ յարարչէն, այլ յանսաստութենէ դիպեալ ստունգանողին,

եւ յուրուք վարդապետութենէ դրդեալ:

Զի ոչ եթէ այնպիսի ինչ հաստատեալ բնութեամբ զմարդն ցուցանել կարէ ոք: Եթէ այնպիսի ինչ բնութիւն մարդոյն առեալ էր, ապա ոչ յուրում վարդապետութենէ նմա դիպեր անսաստութիւնն, այլ[2] ի բնութենէ արարածոյ: Եւ յաստուածեղէն գրոց նմա վարդապետութիւն ընծայանայր. որպէս ասէ ուրեք աստուածական բարբառն, եթէ "Ի մանկութենէ մարդիկ ի խնամս չարի միտեալ են[3]„. զիցուցցէ թէ որ միտին՝ կամօք միտի, եւ ոչ ուրուք բռնութեամբ: Արդ, անսաստութիւնն եւեթ, որ արտաքոյ Աստուծոյ կամացն գործիցի, պատճառ

1 Երեմ. ԺԳ. 23:

2 Այս նօտրագիր կտորն կ'երեւայ թէ Եզնկայ բնագրէն ինկած է, զոր վերստին դրինք բնագրին համեմատ:

3 Ծննդ. Ը. 21: Հայ Աստուածաշունչն ունի. "Միտք մարդկան հաստատեալ են ի խնամս չարի ի մանկութենէ իւրմէ:„ Եզնկայ վկայութեան մէջ "ի խնամս չարի„ յոյն եւ հայ բնագրաց համեմատ է. իսկ "միտեալ են„ եբրայականին եւ ասորականին համեմատ: Կ'երեւայ թէ Եզնիկ ի յիշողութենէ գրած է վկայութիւնս, մանաւանդ որ Ս. Մեթոդիոսի յառաջ բերած վկայութեան տեղը չէ կրցած իմանալ: Եւ որպէս զի ամբողջ ցուցման կարգին հետ յարմարութիւն մ'ունենայ իւր վկայութիւնը, կը յաւելու սա ոչ ուղիղ խօսքն՝ թէ "... որ միտին՝ կամօք միտի:„

դապետն է՝ օձն է, Տ որ յԱստուծոյ արարաւ: Զի նա ուսուցանէ զմարդ, քանզի
զնա ի լաւութեանցն[1] մերկանալ կամի: 5. Ապա եթէ զպատճառն եւս կամիցիս խնդրել, զնախանձն՝ որ առ մարդն եղեւ՝ իմասցիս զպատճառն: Եւ եթէ զնախանձուէն եւս ճշդիւք քննիցես՝ թէ ուստի եղեւ, ասեմ՝ եթէ նա ոչ այսչափ պատուեցաւ. քանզի միայն մարդ ըստ պատկերի եւ ըստ նմանութեան Աստուծոյ եղեւ: Իսկ եթէ այնու զԱստուած պատճառ չարեաց կամիցիս ասել, անկանիս յիմաստնարար: խորհրդոյ: Զի եթէ զնորա ինչ հանեալ էր եւ մարդոյն շնորհեալ, թերեւս յիրաւի պատճառ չարեաց կարծէր: Ապա եթէ զնա նոյնպէս, որպէս եղեւն, պահեաց, եւ զմարդն այսպէս կամեցաւ առնել, պատճառ չարեաց նախանձորդն է: 6. Քանզի յորժամ իցեն ուրուք երկու գերիք, եւ զմինն ի ծառայութեան ունիցի, եւ զմիւսն յորդէգիրս գրիցէ. եւ միւսոյն նախանձու վառեալ՝ զմեծարեալն ի տեառնէն սպանանիցէ, միթէ պատճառ չարեաց զտէ՞րն պարտ իցէ իմանալ, որ ոչ եհան

չարեաց իմանալի է. եւ նմին զայլ ոք վարդապետ ծածուկ հաշուել, դրդիչ եւ ոչ բռնադատիչ, որ զմարդն
ի լաւութեանցն մերկանալ կամեցաւ: Ապա եթէ զպատճառն եւս կամիցին խնդրել, զնախանձն՝ որ առ մարդն եղեւ, իմասցին զպատճառն: Եւ եթէ զնախանձուէն եւս ճշդիւք քննիցեն՝ թէ ուստի եղեւ, ասասցուք՝ եթէ յառաւելութենէ զմարդն պատուելոյ. քանզի միայն մարդ ըստ պատկերի եւ ըստ նմանութեան Աստուծոյ եղեւ: Իսկ եթէ այնու զԱստուած պատճառ չարեաց կամիցին ասել, անկանին յիմաստնարար խորհրդոյ: Եթէ զնորա ինչ հանեալ էր եւ մարդոյն շնորհեալ, թերեւս յիրաւի պատճառ չարեաց կարծէր տուիչն: Ապա եթէ զնա նոյնպէս, որպէս եղեւն, պահեաց, եւ զմարդն այսպէս կամեցաւ առնել, պատճառ չարեաց նախանձորդն է: Քանզի[3] յորժամ իցեն ուրուք երկու ծառայք, եւ զմին[4] ի ծառայութեան ունիցի, եւ զմիւսն յորդէգիրս գրիցէ. եւ միոյն յարուցեալ ի վերայ զմիւսն սպանանիցէ,
միթէ պատճառ չարեաց զտէ՞րն[5] պարտ իցէ իմանալ, որ ոչ եհան ինչ ի

---

1 Տ ի բարձրագունից:
2 Իմա՛ բանաւոր, խելացի:
3 Տպ. ունի՝ քանզի ոչ եթէ:
4 Տպ. ունի՝ զմինն:
5 Տպ. զտէրն:

ինչ ի նմանէ եւ ոչ զնորա ինչ շնորհեաց միւսոյն:

ԺԲ. Այլ եւ զայն եւս հարցանիցես. Եթէ չար ինչ չկայր, ուստի՞ օձն, զոր սատանայ կոչեն, իմացաւ զհանգամանս[1] չարին:

Առ այս բարիոք է այսպէս առնել պատասխանի, եթէ Սատանայ՝ չար զտունգանելն մարդոյն Աստուծոյ իմացաւ. վասն որոյ զմարդն յայն յօժարեցոյց: 2. Որպէս յորժամ թշնամի ոք թագուցեալ զթշնամութիւնն՝ գաղտ կամիցի վնասել[2], եւ չգիտիցէ զհանգամանս[3] վնասակարութեանն[4], եւ այսպիսի ինչ օրինակաւ հնար լիցի նմա գործել զոր խորհին: Հարցանիցէ ցբժիշկն, որ պատուէր տուեալ իցէ ընկերին, — այն է՝ այնմ, որում վնասելն կամիցի, — զօրինակն, որով առողջութեանն կարիցէ հասանել. որպէս՝ եթէ սահմանեալ իցէ նմա ժամանակ յորում ճաշակիցէ զկերակուրն, կամ զի յայս նիշ կերակրոց չճաշակիցէ, կամ միայն յայս ինչ կերակուր չհպիցի: 3. Եւ նորա լուեալ զամենայն՝ վաղվաղակի ի կեղծիս բարեկամութեան կեղծաւորեալ՝ զբժիշկն պարսաւիցէ, որպէս թէ վնասակարս թելադրեալ

ծառայէն եւ շնորհեաց միւսոյն:

Արդ եւ զայն եւս հարցանեն. Եթէ չար ինչ չկայր առաջի, ուստի՞ օձն, զոր սատանայ կոչէք, իմացաւ զհանգամանս չարին:

Ասեմք,

եթէ Սատանայ՝ չար զըտունգանելն մարդոյն Աստուծոյ իմացաւ. վասն որոյ զմարդն յայն յօժարեցոյց: Որպէս յորժամ իցէ ոք ուրուք թշնամի, եւ թագուցեալ զթշնամութիւնն՝ գաղտ կամիցի վնասել, եւ չգիտիցէ զհանգամանս վնասակարութեանն. եւ շուրջ եկեալ յածիցի հնարս խնդրել.

ապա գտեալ ժամանակ՝ յորժամ ոք ի բժշկաց թշնամւոյն նորա պատուէր տայցէ յայս ինչ չհպել եւ յայս նիշ կերակրոց չճաշակել, որով առողջութեանն կարիցէ հասանել:

Եւ նորա լուեալ՝ վաղվաղակի ի կեղծիս բարեկամութեան կեղծաւորեալ՝ զբժիշկն պարսաւիցէ, եւ զօգտակարսն նմա վնասակարս թելադրեալ կար-

---

1 Իմա՝ զծանօթութիւն, զգիտութիւն:
2 Տ ունի՝ չար առնել:
3 Իմա՝ եղանակ, կերպ:
4 Տ չարին (չարիք հասցընելուն), վնասարարութեան:

իցէ, եւ հակառակ պատուէր հրամանաց բժշկին տայցէ, եւ այսպէս վստահ յինքն զնա արարեալ՝ առնիցէ նմա վնաս: Եւ ինքն ոչ եթէ յառաջագոյն գիտէր զհանգամանս վնասակարութեանն, այլ ի պատուիրելոյ բժշկին ուսեալ:

ծեցուցանիցէ, եւ հակառակ պատուէրս հրամանաց բժշկին տայցէ, եւ այնու առնիցէ նմա վնաս: Որ ոչ եթէ յառաջագոյն գիտէր զհանգամանս վնասակարութեանն, այլ ի պատուիրելոյ բժշկին գտեալ հնարս՝ եղեւ վնասակար:

4. Նոյնպէս կարծեսջիր եւ զսատանայէ, եթէ նախ նախանձեցաւ, եւ ապա չգիտէր զհանգամանս վնասելոյ. քանզի ոչ եթէ չար ինչ կայր յառաջագոյն, ուստի զհանգամանս[1] մարթ էր առնուլ: Այլ գիտէր զի պատուէր ինչ տուեալ է յԱստուծոյ մարդոյն, որ արգելոյր զնա ի ճաշակելոյ ի տնկոյ իմեքէ: Որպէս կարծեմ, ոչ եթէ բնութեամբ տունկն մահաբեր էր, այլ իբրեւ անպիտան ինչ ի կերակուրս մարդոյ էր. կամ զի տունկն նուիրեալ էր մահուան, եւ վասն այնորիկ ինչ արգելաւ մարդն ի ճաշակելոյ ի նմանէ, յորմէ մեռանէր եւ մարդն. եւ կամ զի անսաստութիւնն եղեւ պատճառ մահուան մարդոյն, յորժամ նա էանց զհրամանաւ Աստուծոյ:

Նոյնպէս կարծի եւ զսատանայէ, նախանձելն նմա ընդ նախաստեղծ մարդոյն, եւ չգիտել զհանգամանս վնասակարութեանն. քանզի ոչ եթէ չար ինչ առաջի կայր, ուստի զհանգամանս մարթ էր առնուլ: Ուսեալ յԱստուծոյ պատուիրանէն՝ որ մարդոյն տուաւ արգելուլ զնա ի ճաշակելոյ ի տնկոյ իմեքէ ի մահաբերէ, զայն յառաջադրեաց մարդոյն: Որ ոչ եթէ անպիտան ինչ ի կերակուրս մարդոյ էր, եւ ոչ բնութեամբ տունկն մահաբեր, եւ վասն այնորիկ ինչ արգելաւ մարդն ի ճաշակելոյ ի նմանէ,

այլ անսաստութիւնն եղեւ պատճառ մահուան մարդոյն, իբրեւ յանցաւորի՝ որ անցանիցէ զհրամանաւ հրամանատուին՝ որ նմա կարգեալ իցէ:

5. Սատանայ հաւանեցոյց զմարդն անցանել զհրամանաւն Աստուծոյ, որպէս զի ոչ եթէ ստուգեալ գիտէր՝ եթէ այնու նմա վնաս ինչ գործել կարիցէ.

Արդ ժտեցոյց թշնամին զմարդն անցանել զհրամանաւն Աստուծոյ, որպէս զի ոչ եթէ ստուգեալ գիտէր՝ եթէ այնու նմա վնաս ինչ գործել կարիցէ. այլ կարծեօք ի թեթեւս մա-

[1] Իմա՛ զծանօթութիւն:

| | |
|---|---|
| | տուցեալ եթէ լիցի եւ թէ չլինիցի . |
| այլ յետոյ յԱստուծոյ պատուհասէն՝ որ առ մարդըն եղեւ վասն պատուիրանազանցութեանն, եւ զի մարդն զհատուցումն պատժոց ընկալաւ, իմացաւ զվնասն , | եւ յետոյ յԱստուծոյ պատուհասէն՝ որ առ մարդն եղեւ վասն պատուիրանազանցութեանն՝ իմացաւ եթէ պատուիրանք նորա մահ գործեցին,[1] եւ յիրաւի պատժեցան եւ նա եւ մարդն՝ զոր յօժարեցոյց յանսաստութիւնն, ճաշակել ի փայտէն՝ որ ոչ բնութեամբ մահաբեր էր, |
| իբր ոչ եթէ ի բնութենէ ինչ յառաջագոյն եղելոյ, այլ յԱստուծոյ սպառնալեացն : | այլ յԱստուծոյ սպառնալեացն եղեւ այնպիսի իրաց պատճառ : |
| 6. Որպէս եւ մեք բժշկի ոչ կարեմք մեղադիր լինել՝ վասն յառաջագոյնն զգուշացուցանելոյ՝ որով օրինակաւ կարիցէ մարդն առողջանալ, | Եւ որպէս բժշկի ոչ կարեմք մեղադիր լինել՝ վասն յառաջագոյնն զգուշացուցանելոյ որով օրինակաւ կարիցէ մարդն առողջանալ, [2]եւ նորա թողեալ զպատուէրս բժշկին, անսայցէ թշնամւոյն[3]՝ որ զվնասակար խրատն տայցէ նմա, որով ոչ զպատճառս վնասուն ի բժշկէն՝ որ յառաջագոյնն՝ գուշակեաց նմա, իմանալի է, այլ ի թշնամւոյն՝ |
| թէպէտ եւ թշնամին՝ որ չգիտէր յառաջագոյն զհանգամանս վնասելոյ, ապա ի խրատուէ բժշկին ուսանիցի: Քանզի չէր վայել այնմ՝ որ գիտակն էր, զպատշաճն ծածկել. զի մարթ էր՝ եթէ եւ առանց յառաջագոյն գիտելոյ զնոյն | որ ի պատուիրանէ բժշկին նմա զվնասն հնարեցաւ : |

1 "Եւ . . . մահաբեր էր„. Եզնիկ աւելորդ կը կրկնէ վերն ըսուածները:

2 "Եւ . . . իմանալի է„. Եզնիկ կը կրկնէ վերն ըսուածները:

3 Տպ. Ոշնամոյն :

խրատ տայր Թշնամին, զոր ի պատուիրանէն ուսաւ, որով եւ պատճառ վնասուն լինէր այնմ՝ որ նմայն անսայցէ. Թէպէտ եւ նա ինքն չգիտիցէ թէ անտի նմա վնաս գործիցի, այնպէս զի եւ ինքն չէ ինչ պատժի պարտական: Եւ թէպէտ Թշնամին դիպեցուցանիցէ զհարուածն՝ այլ ազատ լինէր ի պատժոյ վասն անգիտակ Թշնամութեանն, եւ վասն զԹշնամութիւնն ոչ խոստովանելոյն [1]:

7. Նոյնպէս եւ զատանայէ ասեմք՝ Լեալ Թշնամի մարդկան՝ չեւ եւս գիտէր զհանգամանս չարեաց, այլ ի պատուիրանէն ուսաւ, յորժամ Աստուած սպառնայր մարդոյն ասելով՝ զի եթէ ընդդէմ կամաց իւրոց ի ծառոյն ճաշակիցէ՝ առնուցու պատիժ զմահ: Քանզի եթէ յառաջագոյն չէր գուշակեալ Աստուծոյ մարդոյն չուտել ի կերակրոյ ծառոյն, եւ նորա Թերեւս յանդէտս կերեալ՝ եւ ի կենաց իսկ անկանէր, կամ առ չժուժալոյ ի պտղոյ ծառոյն[2], — որպէս եւ ոչ մանուկ կաԹնակեր հաստատուն կերակուր առնուլ կարող իցէ, — եւ կամ

Նոյնպէս եւ զատանայէ ասեմք՝ Լեալ[3] Թշնամի մարդկան՝ չեւ[4] եւս գիտէր զհանգամանս չարեաց, այլ ի պատուիրանէն Աստուծոյ ուսեալ՝ կամեցաւ վնասել մարդոյն. որպէս զի եթէ առանց Աստուծոյ կամաց ի ծառոյն ճաշակիցէ՝ առնուցու պատիժ զմահ: Քանզի եթէ յառաջագոյն չէր գուշակեալ Աստուծոյ մարդոյն չուտել ի կերակրոյ ծառոյն, եւ նորա յանդէտս կերեալ՝ չլինէր նմա պատիժ մահ. կամ որպէս թէ առ ի չգիտանս եկեր, կամ թէ առ չժուժալոյ ի կերակրոյ ծառոյն, չէր ինչ պատժի պարտական: Քանզի եւ մանուկ

1 B այս տեղ ծանօԹուԹիւն կու տայ՝ Թէ դժուարին է այս կտորը Թարգմանել: Անկարելի չէ որ Եզնիկ ալ իւր բնագիրն մԹին գտած ըլլայ եւ դուրս Թողած:

2 Բնագրին իմաստն է՝ կամ ծառին պտուղը տանիլ (մարսել) չկարենալուն:

3 Տպ. տանել լեալ:

4 Տպ. որ չէ:

*վասն ընդդէմ կամաց Աստուծոյ առնլոյն ինչ ի ծառոյն:*

*կաթնակեր՝ որ յայլ ինչ կերակուր մօաբերիցէ, ոչ պատժելի է, այլ արդահատելի, որպէս թէ առ ի չգոյէ կաթին այն յօժարեաց:*

*Եւ թէպէտ այսպէս հարուածք օձին ճշդիւ դիպիցին. բայց ինքն օձն ոչ եթէ յիրաւի պատժիցի՝ վասն անգիտակ թշնամութեան ընդ մարդոյն ունելոյ. զի ոչ եթէ որ փորձիցի ինչ եւեթ՝ ապա եւ յայտնապէս պատժոյ արժանի իցէ:*

*Նա եւ օձն, որ է սատանայ,*

*յիրաւի պատժեցաւ վասն[1] անագորոն թշնամութեան ընդ մարդոյն ունելոյ[2]:*

GS. 8. *Եւ արդ սկիզբն չարեաց զնախանձն ասացի, եւ զնախանձն՝ յառաւել Աստուծոյ զմարդն պատուելոյ: Եւ չարն է անհնազանդութիւնն, որով ընդ պատժովք անկաւ մարդն՝ յորժամ անսաստեալ զընկէց զպատուիրանն Աստուծոյ:*

*Եւ արդ սկիզբն չարեաց զնախանձն ասեմք, եւ զնախանձն՝ յառաւել Աստուծոյ[3] զմարդն պատուելոյ: Եւ զչարիսն յանհնազանդութենէն. զի Աստուած այնպէս առաւել զմարդն պատուեաց, եւ նորա անսաստեալ՝ զընկէց զպատուիրանն:*

S. *Ուստի զամենայն ինչ որ լինի չար, ոչ բնութեամբ չար գիտեմք, այլ զի առանց կամացն Աստուծոյ գործի: Եւ եթէ պարտ իցէ հաւանել՝ թէ չարիս գործել ոչ այլ ինչ իցէ,*

*Ուստի զամենայն ինչ որ լինի չար, ոչ բնութեամբ չար գիտեմք, այլ զի առանց կամացն Աստուծոյ գործին իրք ինչ՝ լինին չար:*

---

1 Տպ. վասն ընդ:

2 Եզնիկ չեղելով բնագրին գեղեցիկ պատճառաբանութենէն այս վերջին մասերու մէջ՝ ցուցման նպատակը կ'ոչընչացընէ, եւ խնդիր կ'ընէ այնպիսի բանի մը վրայ, որ խընդրոյ նիւթ չէր կրնար ըլլալ. այսինքն՝ եթէ Աստուած արգելած չըլլար ուտելն եւ մարդն ուտէր չէր մեռնէր: Հեղինակին այն խօսքն՝ թէ սատանայ եթէ անգիտութեամբ խաբելու ըլլար, չէր պատժուեր, Եզնկայ հաճոյ չ'երեւար. Եդ հատածի վերջինը դուրս կը թողու, եւ այստեղ ալ հակառակը կը հաստատէ՝ "անգիտակ"ը "անագորոն"ի փոխելով:

3 Տպ. չունի Աստուծոյ. ունի Իզմիրի տպ.:

եթէ ոչ անսաստել Աստուծոյ, ապա յայտ իսկ է, թէ այս իսկ է չարն: Քանզի էր երբեմն՝ յորժամ Աստուած պատուիրեաց առաջին մարդկանն մտանել յերկիրն խոստացեալ. եւ մարդիկ ոչ անսացին հրամանին Աստուծոյ, եւ ոչ կամեցան վայելել ի խոստմունսն: Եւ դարձեալ քանզի Աստուած արգել զնոսա ի մտանելոյ, նոքա ուսեալ՝ եթէ անսաստել կամաց Աստուծոյ չար է, ընդդէմ կամաց Աստուծոյ մտին ի ներքս եւ յիրաւի պատուհասեցան: Ապա եւ մեք ասեմք՝ թէ չիք ինչ չար բնութեամբ, այլ զի Աստուած ոչ կամի զի գործիցի չարն եւ մարդիկ ուսանիցին ոչ առնել զայն:

10. Այլ արդ ասել՝ եթէ Ընդ լինելն իսկ սատանայի՝ յԱստուծոյ գիտաց, եթէ անսաստել ումեք Աստուծոյ չար է — քանզի չարն է՝ անսաստել Աստուծոյ, — բարւոք թուի ինձ: Քանզի ոչ եթէ անմիտ ինչ ոք եղեւ նա յԱստուծոյ, եթէ չգիտէր՝ թէ որ ինչ ընդդէմ Աստուծոյ կամացն լինի՝ այն չար է:

11. Քանզի վասն այնորիկ ասեմ թէ յիրաւի տանջի,

Նա եւ ընդ լինելն իսկ սատանայի՝ յԱստուծոյ գիտաց[1], եթէ անսաստել ումեք Աստուծոյ չար է,

եւ ոչ բարի: Քանզի ոչ եթէ անմիտ ինչ ոք եղեւ նա յԱստուծոյ՝ եթէ չգիտէր, եթէ որ ինչ ըստ Աստուծոյ կամացն լինի՝ բարի է, եւ որ ինչ արտաքոյ քան զնորա կամսն՝ այն չար է:

Եւ վասն այնորիկ յիրաւի տանջէ զնա Աստուած, զի գիտէ նա զբարին, եւ ոչ առնէ, եւ հմուտ է չարին եւ ոչ խորշի: Եւ ոչ չար եւ չարչարիչ հաստատեաց

---

1 Տպ. սատանայէ յԱստուծոյ, գիտաց՝:

| | |
|---|---|
| | զնա Աստուած. եւ ոչ փորձիչ՝ եթէ նովաւ փորձեալ զարդարս գտեսցէ. եւ ոչ ինքն յանձնէ չար գտեալ, եւ ոչ անարար եւ Հակառակ Աստուծոյ. |
| զի մտաւոր եղեալ յԱստուծոյ եւ Հմուտ գիտութեան՝ թէ չար է Հակառակ կալ Աստուծոյ կամաց, եւ յայն՝ զոր գիտէրն, յանդգնեցաւ, զանսաստութենէն ասեմ: | այլ մտաւոր եղեալ յԱստուծոյ, եւ Հմուտ գիտութեան՝ թէ չար է Հակառակ կալ Աստուծոյ Հրամանին, եւ յայն՝ զոր գիտէրն թէ չար է, յանդգնեցաւ, զանսաստութենէն ասեմք |
| Իբր ոչ եթէ ասիցեմ՝ եթէ անձնաւոր[1] ինչ յառաջագիտ եՀաս ի գիտութիւնն սատանայի, այլ թէ կամեցաւ նա զի մի ինչ ի դիպացն[2] եղիցի: Նա եւ զմարդոյ յիրաւի ասեմ կրել պատուՀաս ընդ որոց գործիցէ. քանզի կամաւ երթայ յուսումն, յորմէ յորժամ եւ կամիցի՝ եւ մեկնել կարող է. քանզի եւ կամելոյն եւ չկամելոյն ունի իշխանութիւն. զորոյ զՀետ գայ՝ եթէ եւ կարէ զոր ինչ կամիցի առնել: | Եւ անսաստութիւնն ոչ եթէ անձնաւոր ինչ յառաջագիտ էՀաս ի գիտութիւնն սատանայի, այլ իբրեւ զմի ինչ եղեալ ի դիպաց կամեցելոյն[3]: Նա եւ զմարդոյ յիրաւի ասեմք կրել պատուՀաս ընդ որոց գործիցէ. քանզի կամաւ երթայ յուսումն այնպիսի իրաց, յորոց յորժամ եւ կամիցի՝ եւ մեկնել կարող է. քանզի եւ կամելոյն եւ չկամելոյն ունի իշխանութիւն. զորոյ զՀետ երթայ եւ կարելն զոր ինչ կամիցի առնել: |
| ԺԹ. Եփ. Իւ որովՀետեւ, ո՛վ բարեկամ, չարեաց արարիչ զԱստուած չկամիս ասել, այլ, ասես, ի մարդկանէ եղեալ թելադրութեամբ սատանայի ի Հնազանդելոցն նորա եւ ի խաբեցելոց, եւ յիրաւի, ասես, կրեն պատիժս, զի կարէին ի բաց դարձուցանել | ՈրովՀետեւ, ասեն, չարեաց արարիչ զԱստուած չկամիք ասել, այլ ի մարդկանէ եղեալ թելադրութեամբ սատանայի ի Հնազանդելոցն նորա եւ ի խաբեցելոց, եւ յիրաւի կրեն պատիժս, զի կարէին Հատանել եւ ընկենուլ ի բաց զչարիսն, եւ |

---

1 S տարր (Element):

2 Իմա՝ պատաՀականացն:

3 Իմա՝ կամեցողին:

զկամսն, եւ ոչ կամեցան. եւ արդ, վասն Նորին իսկ սատանայի կամիմ հարցանել: Այնպիսի՞ արդեւք արար զնա Աստուած, եթէ ինքն այնպիսի չէր, եւ յօժարեաց ի չարաբարել[1]:

Ուղղ. 2. Եթէ այնպիսի էր արարեալ զնա Աստուծոյ, պատիժս ի Նմանէ չէր պարտ պահանջել. զի պահեաց զպայման բնութեանն՝ յոր արարն զնա Աստուած:

Զի եթէ ոք հակառակ կամացն Աստուծոյ գործիցէ, ասեմք թէ յիրաւի պատժի, զի ոչ եկաց յայնմ՝ զոր Աստուածն կամի: 3. Ապա եթէ ոք յԱստուծոյ բարւոք եղեւ, եւ անձամբ յանձնէ դարձոյց զկամսն ի չար՝ հեռացուցեալ զինքն ի լաւէն, յիրաւի պահանջի ընդ որոց յանդգնեցաւն՝ պատիժս. զի զսատանայ ոչ յԱստուծոյ սատանայ եղեալ ասացի յառաջագոյն բանիւքս, այլ թէ նախանձըն եղեւ պատճառ ընտրութեանն:

4. Եւ զի խնդրես յառաջ մատուցանել զբանս, արարից սկիզբն: Ասեմ.

ոչ կամեցան. եւ արդ, վասն Նորին իսկ սատանայի հարցցուք: Այնպիսի՞ արդեւք արար զնա Աստուած, եթէ ինքնին այնպիսի չէր՝ եւ յօժարեաց ի չարաբարել:

Եթէ այնպիսի արարեալ էր զնա Աստուծոյ, պատիժս ի Նմանէ չէր պարտ պահանջել. զի պահեաց զպայման բնութեանն՝ յոր արարն զնա Աստուած: Եւ որ ոք ոչ կամօք ինչ գործէ, ընդ այնր պատիժ չպարտի կրել. բայց որ կամօք կարող է գործել, եւ գործ ինչ յոռութեան գործիցէ, յիրաւի պատժի, զի ոչ եկաց յայնմ՝ զոր Աստուածն կամի: Ապա եթէ յԱստուծոյ բարւոք եղեւ, եւ անձամբ յանձնէ դարձոյց զկամսն ի չար՝ հեռացուցեալ զինքն ի լաւէն, յիրաւի պահանջի ընդ որոց յանդգնեցաւն՝ պատիժս. զի զսատանայ մեք ոչ յԱստուծոյ սատանայ եղեալ գիտեմք. այլ զսատան անունն՝ վասն խոտորելոյն էառ իւր անուն. քանզի սատանայ յԵբրայեցւոց եւ յԱսորւոց լեզուէ "խոտորեալ" թարգմանի:[2]

---

1 Իմա՝ չարին դառնալ, ինք զինք չարին տալ:

2 Եզնկայ այս վերջին յաւելուածէն օգտուած կ'երեւայ Յաճախապատում (Վենետ. 1838, էջ 191). "Եւ սատանայ ի սկզբանն ոչ թշնամի արարաւ, այլ յանձնիշխան կամացն եղեւ հակառակ բարւոյ. զի ըստ Եբրայեցւոց բառիցն Հակառակ թարգմանի:"

Սատանայ ոչ եթէ բնութեամբ ստունգանող էր Աստուծոյ, այլ զօրութիւն իմն ծառայ լաւութեանց. եւ ի նախանձուէն ընդ մարդոյն ունելոյ, ասեմ, իւրն կամօք եղեւ սատանայ. զի թողեալ զԱստուծոյ հպատակութիւն՝ սկսաւ անսաստել, եւ հակառակ կալ Աստուծոյ հրամանացն ուսուցանել, եւ թողեալ զլաւութիւնսն՝ իբրեւ զապստամբ յետս եկաց յԱստուծոյ: 5. Եւ վկայէ բանիս աստուածական բարբառն, որ ապստամբ եւ վիշապ կոչէ զնա, եթէ՝ Հրամանաւ սպան զապստամբ վիշապն: Եւ արդարեւ իսկ Բանն Աստուած սպան զսատանայ, այնու զի յաղթելոյ նմա ետ իշխանութիւն երկրաւոր մարդոյ:

Այլ զօրութիւն իմն զգայուն լաւութեանց հաստատեցաւ յԱստուծոյ, եւ ի թշնամութենէ ընդ մարդոյն ունելոյ՝ իւրն կամօք եղեւ բանսարկու. թողեալ զԱստուծոյ հպատակութիւն՝ սկսաւ անսաստել, եւ հակառակ կալ Աստուծոյ հրամանացն ուսուցանել մարդկան, եւ իբրեւ զապստամբ յետս կացեալ թիւրեցաւ յԱստուծոյ: Եւ վկայէ բանիս աստուածական բարբառն, որ ապստամբ վիշապն կոչէ զնա, եթէ՝ Հրամանաւ սպան զապստամբ վիշապն[1]: Եւ արդարեւ իսկ Բանն Աստուած սպան զսատանայ, այնու զի կոխելոյն զնա ետ իշխանութիւն:

Եթէ նոյնպիսի՝ որպէս եղեւն յԱստուծոյ, կացեալ էր, եւ ոչ՝ թողեալ զիւր պայմանն՝ յայն, որ ոչն էր, անցեալ էր, ապա ոչ ապստամբ կոչէր զնա սուրբ Գիրն: Զի անունն ապստամբ՝ յայտ առնէ, եթէ չէ նա այն, որպէս էրն յառաջագոյն:

Արդ, ապստամբ կոչէ զնա Գիր. եթէ նոյնպիսի՝ որպէս եղեւն յԱստուծոյ, կացեալ էր, ապա ոչ ապստամբ կոչէր զնա. զի որ ապստամբի ոք, թողու զիւր պայմանն:

6. Որով եւ ոչ անարար իսկ ցուցանի. զի եթէ ան-

Որով ոչ անարար իսկ ցուցանի.

---

[1] Եզնիկ թարգմաներ է յոյն բնագիրն ինչպէս որ է: Հայ Աստուածաշունչն ըստ յունին ունի. (Եսա. ԻԷ. 1) “Ցաւուր յայնմիկ ածցէ տէր զսուրն սուրբ եւ զմեծ եւ զհզօր ի վերայ վիշապ օձին փախստեայ, եւ ի վերայ վիշապ օձին կամակորի եւ սպանցէ զվիշապն ի մէջ ծովուն,,: Վերջին “ի մէջ ծովուն,, յոյնն ոչ ունի, այլ եբր. եւ ասորին:

արար էր, ապա ոչ յիւրմէն բնութենէն փոխէր։ Եւ եթէ հաւանիցիմ թէ այժմ հնար իցէ լինել, այլ քանզի այժմ սատանայ չար է, հարկ իցէ ասել, թէ էր երբեք, յորժամ սատանայ չէր չար, որով եւ աստ եւս ցուցանի՝ թէ չէ նա բնութեամբ չար. քանզի չմարթի բնութեան իմիք, որ միշտ նոյն մնայցէ, մերթ բարի լինել մերթ չար։

զի եթէ անարար էր, ապա ոչ յիւրմէն բնութենէն փոխէր.

քանզի չմարթի բնութեան իմիք՝ առանց կամաց՝ մերթ բարի լինել մերթ չար։

Եփ. Իսկ արդ, եթէ ոչ էր անարար սատանայ, այլ եւ ոչ այսպիսի եղեւ յԱստուծոյ, այլ անձամբ զանձն դարձոյց ի լաւէ անտի ի յոռին, որ է ի հնազանդութենէ յանհնազանդութիւն, 7. ասասջիր. Զգիտէ՞ր Աստուած եթէ այնպէս լինելոց էր, եւ արար զնա. եթէ՝ գիտէր զհանդերձելոցն։ Զի եթէ գիտէր, զի՞նչ մեղ իցէ սատանայի. ապա թէ ոչ գիտէր՝ թէ ի լաւութեանցն դառնալոց էր նա, չմարթի մեղադիր լինել Աստուծոյ, այլ սակայն լինի նա վատթարագոյն քան զհեթանոսական հմայսն։

Իսկ արդ, եթէ ոչ էր անարար, ասեն, ըստ ձեզ սատանայ, եւ ոչ այնպիսի եղեւ յԱստուծոյ, եւ անձամբ զանձն դարձոյց ի լաւէ անտի ի յոռին, որ է ի հնազանդութենէ յանհնազանդութիւն, արդ զայն ասացէք. Գիտէ՞ր Աստուած՝ եթէ այնպէս լինելոց էր, եթէ չգիտէր։ Թէ գիտէր եւ արար, ինքն է պատճառ՝ նոցա ի լաւութեանցն դառնալոյ. ապա թէ ոչ գիտէր, զիա՞րդ առնէր զայն՝ զոր ոչն գիտէր՝ թէ որպիսի ինչ ոք լինելոց է։

8. Ո-ղղ. Անգիտութիւն կարծել զԱստուծոյ՝ ամենեւին անհեդեդ՝ թուի ինձ. զի անընտանի է այս աստուածական բնութեան։

Անգիտութիւն կարծել զԱստուծոյ՝ անհնարին յիմարութիւն է.

Ապա եթէ իբրեւ կանխագէտ հանդերձելոց՝ արար զսատանայ, ինքն է պատճառ չարեաց. այլ ասեմ եթէ եւ զայս անհեդեդ է ասել։

քանզի միայն ինքն կանխագէտ է հանդերձելոց։

9. Այլ ասեմ եւս զպատճառսն՝ որոց վասն Աս-

տուած, որ կանխագէտն էր հանդերձելոցն, արարեալ է զնա: Եւ ասեմ. Քանզի բարերար էութիւն է Աստուած, ոչ կամեցաւ զի ազնուականութիւնն[1] իւր ծածկեալ մնայցէ, եւ ոչ գայցէ ի ծանօթութիւն ուրուք: Վասն որոյ թէպէտ յառաջագոյն գիտէր զստատանայէ՝ եթէ թիւրելոց է եւ զմարդիկ յանցուցանելոց՝ առ ի չունկնդիր լինելոյ հրամանաց նորա, որով միանգամայն վասն անձնիշխանութեան մարդոյն երեւելոյ արար զնա Աստուած, զի առաւելութիւն բարերարութեաննորա յայտնի լիցի մարդկան վասն թողութեան տալոյ առաջնոցն յանցանաց[2], զի բնաւ միշտ կայցէ չարն՝ որոյ վասն անհնազանդ գտան նմա մարդիկ, եւ հնազանդեցան ծառայի արարածոյ: Վասն որոյ, ասեմ, թէ Աստուած, թէպէտ կանխագէտ էր թէ այսպիսի ինչ լինելոց է նա, արար զստատանայ, զի զբարերարութիւնն ցուցանիցէ մարդկան, եւ մարդիկ զշնորհն նորա գիտասցեն, եւ զազգի ազգի գործուածս նորա մարդիկ ծանիցեն:

Քանզի բարերար էութիւն է Աստուած, ոչ կամեցաւ զազնուականութիւնն իւր ծածկել. վասն որոյ թէպէտ[3] յառաջագոյն գիտէր զսատանայէ՝ եթէ թիւրելոց է եւ զմարդիկ յանցուցանելոց՝ առ ի չունկնդիր լինելոյ հրամանաց նորա, որով միանգամայն վասն անձնիշխանութեան մարդոյն երեւելոյ արար զնա Աստուած. զի առաւելութիւն բարերարութեան նորա յայտնի լիցի մարդկան վասն թողութեան տալոյ մարդկան յառաջագոյն գործելոցն մեղաց: Զի յորժամ զսատանայ ամպարշտացեալ տեսանիցեն եւ չքարձեալ ի միջոյ, եւ վասն իւրեանց մեղացն իմանայցեն՝ թէ գոյ հնար թողութեան ապաշխարութեամբ.

զի Աստուծոյ բարերարութիւնն ցուցանիցի, եւ մարդիկ զշնորհն նորա գիտասցեն:

10. Զի եթէ չարն չէր հակառակ կազմեալ, ապա

Զի եթէ այն այնպէս չէր լեալ,

---

1 Իմա՛ բարերարութիւն (Wohltat) ինչպէս վարը:

2 B կը դնէ Բ. Պետր. Ա. 9? "Ի մոռացօնս դարձուցանել զսրբութիւն առաջնոյ իւրոցն յանցանաց": Եզնիկ ունի ճշդագոյնս Հռոմ. Գ. 25 "Վասն թողութեան յառաջագոյն մեղացն գործելոց:"

3 Տպ. չունի Թէպէտ, զոր բնագիրն եւ իմաստը կը պահանջէ:

զբարին չէր հնար ճանաչել՝ թէ բարի իցէ. զի յայնժամ բարւոյ միայն խելամուտ լինէաք եւ ոչ ճանաչէաք զընտրութիւն լաւագունին: Այլ եւ մարդն զրկէր յանձնիշխանութենէ. զի յայնժամ զծառայելն միայն հնազանդութեամբ գիտէր. նա եւ այնու լինէր կատարած ամենայն մարդկան, այնու զի ընտրութիւն իւրաքանչիւր մարդոյ նոյն լինէր, եւ որ այսօր չարն է՝ զնոյն պարգեւ եւ նա պահանջէր:

Ի. Եր. Ապա եթէ Աստուած զիւրոյ զբարերարութեանն հանդէս ցուցանել կամեցեալ, եւ վասն թողութեան մեղաց, գիտելով զսատանայ իբրեւ զայնպիսի ոք՝ արարեալ իցէ զնա, նա բնաւ իսկ յետ իբրեւ չար երեւելոյ սատանայի եւ մարդկան զբարերարութիւն Աստուծոյ տեսանելոյ՝ ընդէ՞ր իսկ զնա ոչ եբարձ ի միջոյ, զի մի զայլ եւս մարդիկ սպանանիցէ:

Որ-դղ. 2. Ոչ եթէ չէր կարող Աստուած բառնալ զսատանայ ի միջոյ, եւ ոչ զի ուրախ լինի ընդ մահ մարդկան. այսպիսի ինչ չիք ամենեւին ասեմ զԱստուծով: Այլ զի՝ Նախ, չէր ինչ մեծ գործ Աստուծոյ զսատանայ ինքնին անձամբ սպանանել՝ զարարած մի փոքր, որ եւ չլինել կարէր, յոչինչ դարձուցանել:

եւ ոչ բարերարութեան նորա ոք խելամուտ լինէր:

Նա բնաւ իսկ, ասեն, յետ թիւրելոյն սատանայի եւ խաբելոյ զմարդն

ընդէ՞ր իսկ ոչ եբարձ ի միջոյ, զի մի՛ զբազումս սպանանիցէ:

Ոչ եթէ չէր կարող Աստուած բառնալ զսատանայ ի միջոյ.

քանզի չիք ամենեւին տկարութիւն զԱստուծով. այլ զի չէր ինչ մեծ գործ Աստուծոյ զսատանայ ինքնին անձամբ սպանանել, եւ զարարած մի զիւր փոքր յոչինչ դարձուցանել, զի մի՛ կարծիցի՝ թէ վասն չժուժալոյ չարութեանն նորա սպան զնա: Երկրորդ անգամ՝ զի ան-

3. Երկրորդ անգամ, զի անծանօթ եւս լինէր առ յապայ մարդկան Աստուծոյ բարերարութիւնն, եթէ յառաջագոյն սպանանէր զսատանայ: Քանզի ամենայն ոք, ոչ ինչ հաւաստեաւ գիտակ անձինն, զանձն բարի կարծէր, եւ կամէր Աստուծոյ նման լինել, այնու զի ընդ նմա ունէր զնոյն հանգամանս:

Վասն որոյ ոչինչ փոյթ էր նմա զսատանայէ, զի մարդիկ լաւութեանցն հմուտ լինիցին. եւ զի յաղթեսցեն նմա այնու առաջին յաղթութեամբ:

Զի այն իսկ մեծ եւ զարմանալի է՝ զի մարդն Աստուծոյ՝ յԱստուծոյ իսկ ուսեալ զմարտն, յաղթիցէ սատանայի: 5. Որպէս մարտուսոյց[1] ոք ամենայն հնարիւք հնարեալ զիւր աշակերտն թեքել առ ի ցուցանելոյ զհանգամանս մարտիցն, որով մարթիցեն յաղթել ախոյանից, եւ առաքիցէ զնոսա ի հրահանգս կռուանոցաց մրցել ընդ ախոյանսն. եւ յաղթութեանն ուշ առնել խրատիցէ եւ վասն նորա ճգնել, մինչեւ զկեանս անգամ արհամարհել, զի մի բնաւ անյաջողութեան դիպիցին:

ծանօթ եւս լինէր առ յապայ մարդկան Աստուծոյ բարերարութիւնն, թէ յառաջագոյն սպանանէր զսատանայ. զի ոչ ոք ունէր նշանակ ինչ յայտնի բարերար կոչելոյ զԱստուած: Այլ թերեւս եւ կարծիք ինչ ի մէջ մտանէին՝ թէ հաւասար ինչ ոք էր նա Աստուծոյ, եւ աճապարեաց ի միջոյ եբարձ:

Վասն որոյ պահեաց զնա, եւ ոչ կորոյս ի միջոյ, զի մարդիկ յորժամ լաւութեանցն հմուտ լինիցին, յաղթեսցեն նմա, փոխանակ այնոցիկ՝ որք յառաջնումն յաղթեցան ի նմանէ: Այն իսկ մեծ եւ զարմանալի է՝ զի մարդն Աստուծոյ՝ վառեալ Աստուծոյ օգնականութեամբն, պատերազմեալ յաղթիցէ սատանայի: Որպէս մարտուսոյց ոք ամենայն հնարիւք հնարեալ զիւր աշակերտն թեքել առ ի ցուցանելոյ զհանգամանս մարտիցն, որով մարթիցեն յաղթել ախոյանից, եւ առաքիցէ զնոսա ի հրահանգս մրցել ընդ ախոյանսն. եւ յաղթութեանցն ուշ առնել խրատիցէ, մինչեւ զկեանս անգամ արհամարհել. զի լաւ համարի թէ վասն անուան բարւոք մեռանիցին, քան թէ կենդանի կայցեն եւ վատանուն լինիցին:

---

1 Տ վարդապետ (ինչպէս վարը 6.), ուսուցիչ: Երբ օրինակիս յատուկ բառը՝ “մարտուսոյց,, հոլովել հարկ ըլլայ՝ Եզնիկ “վարդապետ,, միայն կը գործածէ, քաջահնչիւն չըլլալուն առաջնոյն հոլովեալը:

6. Արդ, որ պնդութեամբ զթելադրութիւնս վարդապետին ի մտի ունիցի եւ զնշան յաղթութեանն, գեր ի վերոյ լինիցի ախոյանին, եւ ուրախութեամբ տարեալ զպսակն առ վարդապետին հասանիցէ, եւ նշանակ ճգնութեան՝ զպարտութիւն ախոյանին առ նա բերիցէ: Ապա եթէ ոք զմարտուսոյցն զմտաւ ոչ ածիցէ, եւ զճգնութիւնն ընդ ախոյանին ի մոռացօնս առնիցէ, եւ բնաւ իսկ յաղթութեան ոչ ցանկանայցէ, կործանի վաղվաղակի յախոյանէ անտի, նկուն լեալ եւ հարեալ, յիրաւի այնուհետեւ թշնամանի. զի ճրգնութեան մարտին ոչ կարաց տանել:

7. Նոյնպէս եւ զԱստուծոյ իմանամ, թէ իւրովք պատուիրանօք վարէ գեղեցիկ զմարդիկ ի մրցութիւն ընդ ախոյանին. գովէ զյաղթողն՝ որ ոչ յամօթ արար զվարդապետութիւն բարիոք վարդապետին: Իսկ եթէ ոք յոչինչ զԱստուծոյ զպատուիրանսն համարիցի, յորժամ մրցել ընդ բանսարկուին մատչիցի, վաղվաղակի կործանի. քանզի չունի զօրինակ յաղթութեանն, յիրաւի կրէ պատիժս պատուհասից այնպիսին. զի ոչ նմանեալ ընկերին՝ ճգնեցաւ:

8. Արդ, վասն այնորիկ ասեմ, թողեալ է Աստու-

Եւ նոցա զթելադրութիւնս վարդապետին ի մտի եդեալ, եւ զպարգեւս ընդ յաղթութեանն, գեր ի վերոյ լինիցին ախոյանին, եւ պսակեալ առ վարդապետին հասանիցեն, եւ նշանակ ճգնութեան ընդ ախոյանին՝ առ նա զպսակն բերիցեն:

Ապա եթէ զմարտուսոյցն զմտաւ ոչ ածիցեն,

եւ յաղթութեան եւ պսակի ոչ ցանկանայցեն,
կործանին վատանուն յախոյանէ անտի.
յիրաւի այնուհետեւ թշնամանին եւ տանջին, եւ մահու պատիժ փոխանակ ընդ վատութեանն կրեն:

Նոյնպէս եւ զԱստուծոյ իմանալի է, թէ իւրովք պատուիրանօք վարէ գեղեցիկ զմարդիկ՝ առ ի պսակելոյ զյաղթողն եւ յամօթ առնելոյ զվատացեալն:

Իսկ եթէ ոք յոչինչ զԱստուծոյ զպատուիրանսն համարիցի, յորժամ մրցել ընդ բանսարկուին մատչիցի[1], վաղվաղակի կործանի. քանզի չունի զնշանակս յաղթութեանն, եւ յիրաւի կրէ պատիժս[2] պատուհասից այնպիսին. զի ոչ նմանեաց ընկերին՝ որ կռուեցաւ եւ յաղթեաց:

Արդ, վասն այնորիկ թողեալ է Աստուծոյ զա-

1 Տպ. մարտնչիցի:
2 Տպ. ունի պատիժ. Իզմիրին՝ պատիժս:

*ծոյ զսատանայ իբրեւ ի հրահանգս կռուանոցաց յաշխարհի կռուել ընդ աշակերտսն Աստուծոյ։ Եւ սատանայ յաղթեալ ի նոցանէ՝ կործանի, եւ պարծանք առաջնոյ յաղթութեանն նորա քակեցին յայժմուն յայնպիսեացն մարդկանէ. քանզի ամենեւին իսկ տկար է ի կռուել ընդ պատկերին բարւոյ, որ ուսեալն է անձնիշխանութեամբ տանել զյաղթութիւնն։ Քանզի կոխան արկեալ ընդ ոտիւք մերովք՝ անկեալ դնի մեռեալ, առ ի լաւութեանցն ցանկութեան ի պարտութիւն մատնեալ։ — Աստ լիցի կատարած խնդրոյ զչարէն։*

*ԻԲ.[1] Եր. Այլ կամիմ վերստին ի խնդիր հիւղեայն գալ, եւ նոյնպէս եւ զքեզ աղաչեմ՝ ի կատարումն ածել զայս խնդիր. եւ զի՞նչ իցեն պատճառք՝ զի հիւղն այժմ իցէ, որ երբեմն չէր ասա՛ ինձ համարձակ։ Զի եթէ հիւղն ոչ էր ընդ Աստուծոյ, ընդէ՞ր կամեցաւ Աստուած գալ զաշխարհս առնել։*

*Ո—ղղ. 2. Զպատճառ կամացն Աստուծոյ գտանել՝ կարծեմ թէ անհնար է մարդոյ եւ աւելորդ իսկ. զի եւ ոչ ի միտս ընկերին խելամուտ լինել ոք կարիցէ։ Այլ զի տէրն ամենայնի զայսպիսի ինչ պտուղ սիրոյն՝ որ առ մարդիկ՝ եցոյց, մինչեւ զյայտնութիւն*

*տանայ իբրեւ ի հրահանգս կռուանոցաց յաշխարհի, զի յորժամ իւր նահատակեալքն կռուիցին եւ յաղթիցեն նմա՝*

*պարծանք առաջնոյ յաղթութեանն նորա քակեսցին յայժմուն յայնպիսեացն մարդկանէ, որ լաւութեանցն ցանկութեամբ պարտիցեն զնա, եւ նշան յաղթութեան զնահատակութեանն կանգնիցեն։*

*Քանզի կոխան արկեալ ընդ ոտիւք մերովք՝ անկեալ դնի մեռեալ, եւ կործանի՝ առ ի լաւութեանցն ցանկութեան մերոյ ի պարտութիւն մատնեալ։*

---

1 Այսպէս ի Տ փոխանակ ԻԱ։

| | |
|---|---|
| մնաց եւ բոց ի բազում իրս սերմանել. վասն որոյ ասեմ համարձակ, զոր ինչ գիտելն կարծիցեմ: | |
| | *Եզնիկ էջ 236—9:* |
| G. S. 3. Արդ, ասեմ՝ եթէ բազում պատճառք էին Աստուծոյ, որով պատշաճ էր նմա գալ զարարածն առնել: | Եւ բազում պատճառք էին Աստուծոյ, որով եկն զարարածն առնել: |
| Նախ զճարտարութեանն խելամտութիւն[1] չէր պարտ դատարկ թողուլ. զի մի իբրեւ զոկար զտանիցի հզօրն՝[2] առ ի չկարելոյ առնել զայնս, զորոց խելամտութիւնն յինքեան ունէր: | Նախ զճարտարութեանն[5] խելամտութիւն չէր պարտ դատարկ թողուլ. զի մի իբրեւ զոկար ոք պարտեալ ինչ գտանիցի՝ առ ի չկարելոյ առնել զայնս, զորոց խելամտութիւնն յինքեան ունէր կանխակալ գիտութեամբ: |
| Երկրորդ անգամ՝ քանզի բարերար է բնութեամբ, չէր բարւ ոք զբարերարութիւնն անօգտակար պահել: Եւ այլ ինչ բազում նման սոցին էր զԱստուծով, վասն որոց կազմածոյ աշխարհի արար սկիզբն: | Երկրորդ անգամ՝ քանզի բարերար է բնութեամբ, չէին իրաւունք զբարերարութիւնն անօգտակար պահել: Եւ այլ ինչ բազում նման սոցին էր զԱստուծով, վասն որոց կազմածոյ աշխարհի արար սկիզբն: |
| 4. Որպէս ոք եթէ ճարտարութիւն[3] իւրաց ինչ գիտիցէ, եթէ զնուագածութեան[4] եւ եթէ զբժշկութեան, եթէ զհիւսնութեան, եւ արդեամբք ի գործ ինչ չմատչիցի եւ զճարտարութիւնն[1] չցուցանիցէ, ի զուր ունի զճարտարութիւնն, ուստի ոչ ինքն վայելեսցէ եւ ոչ այ- | Որպէս ոք եթէ ճարտարութիւն իւրաց ինչ գիտիցէ, եթէ զնուագածութեան եւ եթէ զբժշկութեան. եթէ զհիւսնութեան, եւ արդեամբք զճարտարութիւնն չցուցանիցէ, ի զուր ունի զհանգամանս ճարտարութեանն, ուստի ոչ ինքն վայելեսցէ, եւ ոչ այլոց |

1 Բնագրին իմաստն է՝ ճարտարգիտութիւն, արուեստագիտութիւն:

2 G չունի:

3 Իմա՝ արուեստագիտութիւն:

4 S ունի Musik.

5 Տպ. զճշմարտութեանն:

լոյ զգործ արուեստին ցուցանիցէ. վասն որոյ այնպիսին նման է այնմ՝ որ եւ ոչ զսկսանելն գիտիցէ, այնու զի ճարտարութիւնն արդիւնս բնաւ ոչ ցուցանիցէ: Զի ամենայն ճարտարութիւն գործովն յայտնի, եւ այսպէս ասացից՝ գայ ի լինել:

զգիտութիւն արուեստին ցուցանիցէ:

5. Նոյնպէս եւ որ լաւ ոք իցէ, եւ չունիցի զոք՝ որում բարերարութիւն ցուցանել կարիցէ, ի զուր իցէ լաւն լինել: Զի բարերարութիւն այն է՝ յորժամ այլքն ի նմանէ վայելեսցեն: Եթէ չիցեն՝ որոց վասն բարերարութիւնն սկիզբն առնուցու լինելոյ, ապա չէ ինչ բարիոք՝ զի բարերարութիւնն ծածկիցի ի նմա, որ զնայն ունիցի. քանզի չէ ինչ ծանօթ սկիզբն լինելոյ բարերարութեանն այնոցիկ՝ որ կարօտն իցեն նովաւ: Իսկ եթէ իցեն՝ որոց կարիցէ ցուցանել զբարերարութիւնն, ապա եւ նորա բարերարն լինել յայտ առնի: Այլ եւ հաճոյ լիցի այն նմա՝ որ բարերարն իցէ բնութեամբ, զի բազումք ի բարերարութեանն վայելիցեն:

Նոյնպէս եւ որ բարերար ոք իցէ, եթէ բարերարութեանն վայելելիք չիցեն, ո՞ւմ շահ իցէ բարերարութիւնն: Զի բարերարութեանն առաքինութիւն այն է՝ յորժամ այլքն ի նմանէ վայելեսցեն. եւ եթէ չիցեն՝ որք վայելիցեն ի բարերարութեանն, զի՞նչ շահ իցէ ի բարերարութենէ անտի:

6. Նոյնպէս եւ զԱստուծոյ պարտ է իմանալ. զի որ զամենայն արուեստագիտութիւն ունէր յինքեան, եթէ չէր արարածս արարեալ՝ ի զուր կարծէր[1] ունել զարուեստագիտութիւնն.

Նոյնպէս եւ Աստուծոյ՝ որ զամենայն ճարտարութիւն արուեստագիտութեան ունէր յինքեան, եթէ չէր արարածս արարեալ՝ ի զուր կարծէր ունել զճարտարութիւնն, յորժամ չէին՝

1 Իմա՝ կը կարծէր:

զի չէին՝ որոց կարիցէ ցուցանել եթէ ինքն ճարտարագէտ իցէ. վասն որոյ, ասեմ, եկն ի գործ, զի զարուեստն իւր ի գործսն ցուցանել կամեցաւ: Քանզի չէր բաւական գիտել Աստուծոյ միայն, առանց այնոցիկ՝ յորս լինել գիտութեան պատշաճ էր. զի անօգուտ թուեցաւ նմա, նա եւ դատարկ իսկ՝ այնպէսն մնալ: Եւ զօրութիւն անգործ չէ ինչ հաճոյ այնմ՝ որ զնայն ունիցի. այլ ինքն՝ իցէ թէ բարերար իցէ, այլ ոչ վայելէր ի բարերարութեանն, յորժամ չէր ոք որ կարօտէր նորա:

7. Վասն որոյ, քանզի բարերար էր, եկն յառնել արարածս, եւ ած զչգոյսն ի գոյ. քանզի կամեցաւ ցուցանել զբարերարութիւնն՝ յառաջ քան զցուցանելն այսպէս արդեամբք: Զի անչափ բարերար բնութեան է՝ զչգոյսն ի գոյ ածել, այլ եւ խոստանալ զլաւագոյնսն գոյացելոցն ի նմանէ. զի ոչ միայն զլինելն շնորհեաց նոցա, այլ եւ ի լաւութիւնսն վայելել, որով զիւրոյ զբարերարութեանն հանդէս ցուցանել կամեցաւ. քանզի բարերարութիւն յայնժամ երեւի՝ յորժամ ունիցի եւ զայնպիսի՝ որ ի նմանէ կարօտիցին:

8. Դարձեալ, թէ չէր Աստուծոյ ի սկզբանէ զարարած աշխարհի արարեալ, եւ գիտէր իսկ ոք ոչ՝ թէ բնաւ իցէ Աստուած, յոր-

որք ի ճարտարութենէ անտի երեւէին:

Նա եւ ոչ բարերարութիւնն բարերարութիւն ցուցանէր, եթէ արարածս չէր արարեալ՝ որք ի բարերարութեանն վայելէին:

Այլ նա այնպէս բարերար է

զի ոչ միայն զառնելն շնորհեաց նոցա, այլ եւ յուրախութիւնս լաւութեանց վայելել:

Դարձեալ, թէ չէր Աստուծոյ արարածս արարեալ, եւ գիտէր իսկ ոք ոչ՝ թէ բնաւ իցէ Աստուած, յորժամ չէին ի

ժամ չէին ի միջի՝ որք զնա ճանաչել կարէին։ Ուստի, քանզի յիւր գիտութիւնն ածել կամեցաւ, եւ թէ է՛ ինքն՝ ցուցանել, արար արարածս, զի ծանիցեն զնա S եւ զի կարող իցեն վայելել ի նմա եւ ի բնութեան նորա։ GS Իսկ զայլ իրս աշխարհիս, ասեմ, վասն մարդոյ արար ի սպասաւորութիւն ամենայն իրաց կարեւորաց, եւ զմարդն յիւր փառս· զի փառաւորեսցէ զտէրն, եւ բարերարութիւնն Աստուծոյ ի մարդն երեւեսցի։

միջի՝ որք զկարողութիւն գիտութեան ստանային։ Ուստի, քանզի յիւր գիտութիւնն ածել կամեցաւ, եւ թէ է՛ ինքն՝ ցուցանել, յօժարեաց առնել[2] արարածս առ իւրոյ գիտութեանն ընծայեցուցանելոյ, զի վայելիցեն ի բարերարութեանն[3] նորա։ Իսկ զպէտս աշխարհիս վասն մարդոյ արար ի սպասաւորութիւն ամենայն իրաց կարեւորաց, եւ զմարդն յիւր փառս, զի փառաւորեսցէ զտէրն եւ ծանիցէ զբարերարութիւնն։

9. Իսկ զայս եւս ասեմ, զի Աստուած յառաջ քան զարարիչն լինել՝ ուրախ լինէր յայն, զոր առնելն կամէր։ Զի ոչ երբէք էր Աստուած դատարկ՝ միշտ ի մտի նկարեալ զգեղեցկութիւն իւրոյ արուեստագիտութեանն։ Վասն որոյ ասեմ, եթէ ոչ երբէք արուեստագիտութիւն նորա անօգուտ էր նմա. զի նա զգործ իւր ունէր ի սկզբանէ ըստ կարողութեանն[1]. այլ ասեմ եթէ ոչ էր ի սկրզբանէ ի զուր բարի։ S Իսկ խորհրդովք իսկ յառաջ քան զարարչութիւնն՝ բազում ինչ գեղեցիկս արար. այլ ոչ կամեցաւ, զի մինչեւ ցվճիռ միայն իցէ այն ի

Իսկ այսպէս ոչ երբէք էր Աստուած դատարկ յարարչութենէ, քանզի միշտ ի մտի նկարեալ ունէր զորս առնելոցն էր։

Իսկ զի չէր ի դէպ կամօքն եւեթ եւ խորհրդովք[4] ունել զկարողութիւնն.

---

1 S ունի Potenz.

2 Տպ. չունի առնել. Իզմիրինն ունի՝ յօժարեաց. Վասն շարադրածս։

3 Երեւի ձեռագրի սխալ՝ փխնկ. բնութեան։

4 Տպ. խորհրդօք։

նմա եւ վճիռն չգայցէ ընաւ ի լինել. քանզի այնպէս իմն համարեցաւ՝ եթէ չիցէ այն կատարեալ: Դարձեալ եւ այսպիսի գործք իւրոյ արուեստագիտութեանն ծածկեալ մնային: Վասն այնորիկ զիւր զարուեստագիտութիւնն, զբնութիւնն եւ զկարողութիւն ցուցանել եւ յայտնել կամեցեալ՝ արար զմարդ, որ կարողն էր իմանալ զբարերարութիւն Աստուծոյ:

վասն այնորիկ առ յայտնելոյ զկամսն եւ զխորհուրդս՝ ած յայտ զարարածս, զի իւր կարողութիւնն երեւեսցի եւ արարածք ի նորա բարերարութեանն վայելեսցեն:

GS 10. Արդ, մի՛ ինչ ասիցես, ո՛վ մարդ, եթէ իցէ ինչ ինքնակաց եւ ընթերակաց Աստուծոյ, եւ մի՛ ինչ ի մեծութենէ զօրութեան նորա հանիցես կամ խախտիցես: Այլ մանաւանդ նա շնորհեաց զլինելն՝ որոց ոչն էին յառաջագոյն, եւ որք ոչ ի սկզբանէ ունէին զհաստատութիւն: Կամիցի՞ս բնաւ թէ նա արուեստագէտ միայն իցէ. ընդէ՞ր զշնորհս նորա ի միջոյ բառնալ կամիցիս, որպէս թէ նա՝ միայն զարուեստն[1] ստացեալ իցէ հիւղեայն, եւ ոչ եթէ ի չգոյէ ի գոյ ածեալ: 11. Չգոյր ինչ ժամանակակից Աստուծոյ, եւ ոչ նիւթ ինչ՝ ուստի առեալ՝ զարարածս կազմեալ իցէ Աստուծոյ, եւ ոչ այժմու մարդկան յառաջագոյն նմանեալ. քանզի նա անչափս առաւել բարերար է քան զբնութիւն մարդկան: Քանզի ոչ՝ միայն կերպարանաց կազմիչ

Արդ, մի՛ ոք ինքնակաց զաշխարհս իշխեսցէ համարել, եւ մի՛ ընթերակաց ինչ Աստուծոյ, զի մի՛ զմեծութիւն զօրութեան նորա խախտիցէ: Այլ ամենեցուն նա շնորհեաց զլինելն, որք ոչն էին յառաջագոյն:

Ընդէ՞ր զզօրութիւնն նորա ի միջոյ բառնալ կամիցին, եւ արուեստագէտ միայն նիւթոյ իմիք զնա համարիցին, եւ ոչ ի չգոյէ ի գոյ ածեալ զհաստս ամենայնի: Չգոյր ինչ ժամանակակից Աստուծոյ, եւ ոչ նիւթ ինչ՝ ուստի առեալ զարարածս կազմիցէ. այլ ինքն է ամենայն բնութեանց արարիչ,

եւ ոչ՝ միայն կերպարանաց կազմիչ, եւ ոչ՝

1 Այսինքն՝ զկազմութիւն կերպարանաց:

է, եւ ոչ՝ էութեան իրիք ընդ այլ էութեան խառնիչ։ Քանզի նա է ամենայն գոյացելոցն գոյարար։

Տ. 12. Զայսպիսիս պարտին ասել մարդիկ եւ այսպիսի մեկնութեանց լինել պատմիչք, որով Աստուած փառաւորի, որպէս նայն կամի։ Զի ոչ կամիմ ամպարիշտ մեկնութեա՛նց ունկնդիր լինել։

էութեան էականաց իրիք խառնիչ, այլ գոյանալոյ գոյացելոցն գոյարար։

Զայսպիսիս պարտին ասել մարդիկ զԱստուծոյ եւ այսպիսի պատմութեանց լինել պատմիչք. որով Աստուած փառաւորի, եւ մարդիկ ոչ վնասին։

Ս. Մեթոդիոսի "Վասն անձնիշխանութեան գրքէն„ Եզնկայ առած մասերն ամբողջ յառաջ բերինք համեմատօրէն։ Այս համեմատութենէն Եզնկայ անձին եւ իր գրութեան մասին յաջորդ հետեւութիւնները յառաջ կու գան։

1. Համեմատութիւնս կը ցուցնէ՝ որ Եզնկայ գործոյն ձեռագիրն այնչափ աղաւաղեալ չէ, որչափ կը կարծուէր առ հասարակ եւ ինչպէս մեր ուրիշ մատենագրաց ձեռագրաց վրայ կ՚երեւայ։ Քանի մը նախդիրներ, քանի մը բառեր ինկած են ձեռագրէն, որոնք կրնան նաեւ տպագրութեան միջոցին յառաջ եկած ըլլալ։ Յետեւառաջութիւն տեղ մը միայն կ՚երեւայ, որ անշուշտ ընդօրինակողէ մը կը վերաբերի։ Առ հասարակ բնագիրը գրեթէ անարատ մնացած է. վասն զի նիւթն այնպիսի է՝ որ սակաւաթիւ ընթերցող, հետեւաբար եւ ընդօրինակող ունեցած է։

2. Եզնիկ իր այս աղբիւրը բոլորովին կը լռէ, եւ կ՚աշխատի ամենայն եղանակաւ իր

աղբեր տրամախոսական ձեւը ջնջել, օտարի հետքը ծածկել՝ բայերու դէմքերն ըստ կամի յերիւրելով, եւ անգոյ հակառակորդներ են-թադրել տալով ընթերցողին։ Այս լռութիւնը եւ լռելու կերպը կրնայ իրաւունք տալ ենթա-դրելու՝ որ իւր գրութեան մէջ ուրիշ այսպիսի աղբիւրներ ալ ծածկուած պիտի ըլլան։

3. Եզնիկ իւր աղբեր այնպէս ստրկօրէն կապուած է, որ կ'աշխատի առ հասարակ չշեղիլ աղբերէն։ Աղբերէն շեղումներն, որոնց տեղ տեղ հանդիպեցանք, են ա. Յապաւել, թողուլ այն մասերն՝ որ յուզուած խնդրոյն էապէս չեն վերաբերիր, այլ տրամախոսական ձեւն, եւ որոնք կրնային աղբիւրը մատնել։ Եւ կամ կը թողուին մասեր՝ որոնք խնդրոյն լուծումն կամ մեկնութիւնքն են, զորոնք Եզնիկ կա՛մ բոլորովին դուրս կը թողու եւ կա՛մ կարճ խօսքով կամ բառով մը կ'ամփոփէ։ բ. Յաւելուլ. որ միջոցին Եզնկայ տկարութիւնը յերեւան կ'ելլէ. վասն զի յաւելուածներն ամէնքը կրկնութիւն կամ մեկնութիւն են (Մեթոդ. Է. 7, Ը. 12, 13, ԺԸ. 11 եւն) արդէն ըսուածներուն, եւ շատ անգամ բոլորովին անկապ կը մնան։ (Հմմտ. Մեթ. Գ. 6, Թ. 2, ԺԸ. 5, 6 եւն։)

4. Եզնիկ կը շեղի նաեւ իւր աղբերէն, երբ հեղինակին կարծիքները քրիստոնէական վարդապետութեանց պայծառ եւ յայտնի վար-դապետութիւններէն չեն եւ քիչ մ'աղաւաղեալ կը հնչեն, սակայն ըստ ինքեան հակառակ ալ չեն եկեղեցւոյ վարդապետութեան. եւ կամ

այնպիսի իրեր են, զորոնք իւր ընթերցողներուն ծանօթացընել պատշաճ չի տեսներ: Այսպէս (Մեթ. Գ. 5) առասպելաբանութեանց յիշատակութիւնը զանց կ'առնէ եւ ընդհանուր խօսքերով (. . . մահք տարաժամք եւ ախտք չարաչարք.) բնագրին իմաստը կը յայտնէ: Ս. Մեթոդիոս կ'ըսէ՝ որ եթէ սատանայ անգիտութեամբ մոլորեցընելու ըլլար զմարդն՝ չէր պատժուեր: Այս ընդունելի չ'երեւար Եզնկայ. դուրս կը թողու նոյն կտորն, մանաւանդ թէ քիչ մը վար յանդէպս կը հաստատէ՝ թէ "յիրաւի պատժեցաւ:„ (Մեթ. ԺԲ. 6, 7:)

5. Եզնիկ կ'ոստնու այն նուրբ միտքերու եւ ցուցմանց ձեւերու վրայէն, որոնք հեղինակին քով գեղեցիկ եւ տրամաբանօրէն կապուած են եւ ամբողջ վիճաբանութիւնը ջղոտ եւ զօրաւոր կը յարդարեն: Եզնիկ այս ցուցումներն կ'ընդհատէ, եւ տեղ տեղ բռնազբօսեալ կերպով խօսքին շարունակութիւնը Մեթոդիոսի եւ անոր հակառակորդին խօսքերն իրարու կապելով կը յարմարցընէ, որով ցուցումը կ'ոչնչացընէ. (այսպէս Մեթ. Է. 4, Ժ. 6—ԺԱ. 2, 6, ԺԲ. 4, 7) եւ երբեմն ալ սխալ կամ անյարիր եզրակացութիւններ յառաջ կու գան:

Ինչ ինչ յաւելուածներէն կ'երեւայ նաեւ Եզնկայ համեստութիւնն ու կրօնական եռանդն. այսպէս (Մեթ. Դ. 3,) կը յաւելու "ըստ մերում տկարութեան ապաւինեալ յԱստուծոյ շնորհսն„: Իւր եռանդը զինքը չի կրնար ետ կեցընել չկաթողիկէ վարդապետութեան դէմ ամէն

ութին հաստատելու՝ թէ “յետնոյ ամպարշտութեան է։„

Տեսնուեցաւ ուրեմն որ Եզնիկ Ս. Մեթոդիոսի “Վասն անձնիշխանութեան„ գիրքն ամբողջ, ի բաց առեալ Ա. եւ Բ. հատածները, ինչ ինչ փոփոխութեամբ՝ մինչեւ վերջը թարգմանած եւ իւր գործոյն մէջ տեղաւորած է. այսինքն՝ առաջին մեծ մասն Ա. Գրքին մէջ՝ 40 երես ի տպագրութեան (էջ 19—58), եւ վերջին մասն Գ. Գրքին մէջ՝ իբր 4 երես (էջ 236—9)։ Ս. Մեթոդիոսի ուրիշ գործերէն օգտուած չէ Եզնիկ, բաց ի մէկ գրքէն, որմէ իմաստներ առած կ'երեւայ։ Այս մասերն ի յաջորդս կը դիտենք։

Ս. Եպիփանէն առնուած կտորները մեր ցոյց տուած կտորներուն հետ միացընելու ըլլանք՝ Եզնկայ գրոց տպագրեալ 50 էջերն իբրեւ բառական թարգմանութիւն կը ներկայանան մեզի։

### 3.

### Ս. Հիպպողիտոս։

Երրորդ դարու Եկեղեցւոյ նշանաւոր Ս. Հայրերէն մէկն էր աշակերտն Ս. Իրենէոսի՝, Ս. Հիպպողիտոս յոյն քահանայն, որ ի Հռոմ Նոյետիոսի եւ Սաբելլայ հակերրորդական մոլորութեանց դէմ զօրաւոր գրութեամբ կռուեցաւ։ Սակայն այս վիճաբանութեան մէջ քիչ մ'աւելի յառաջ երթալով՝ Բանին ի Հօրէ զանազանութեան եւ Ս. Երրորդութեան կարգին մէջ

չափազանցութեան յանգելուն, Կալիստոս Հռոմայեցի քահանայն իրեն դէմ ելաւ եւ ժողովրդեան մէջ այնչափ համակրութիւն գտաւ՝ որ Զեփիւռինոս քահանայապետին մահուանէն ետեւ (218) քահանայապետ ընտրուեցաւ։ Հիպպողիտոս ալ իր կողմնակիցներէն հակառակաթոռ ընտրուեցաւ։ Կալիստոսի մահուանէն ետեւ՝ (223) Հիպպողիտոս ետ առաւ իր վարդապետութիւնը, եւ յետոյ (235 կամ 236) Սարդինիա կղզին՝ Պոնտիանոս քահանայապետին հետ աքսորանքի մէջ մարտիրոսացաւ։

Ս. Հիպպողիտոս բազմաթիւ կրօնական գրութիւններ թողուց (յունարէն լեզուաւ), որոնց ցանկը 1551ին գտնուեցաւ ի Հռոմ՝ իր գերեզմանին մարմարեայ քարին վրայ արձանագրուած։ Սակայն այս գրութիւններէն շատ քիչերն ցայսօր երեւան ելած են, եւ այն՝ միայն մանր նշխարներ։

Մեր մատենագրութեան մէջ “Հիպողիտայ„ անուամբ կան այլեւայլ գրութիւններ[1], որոնց մէկ մասն անհարազատ է, եւ յետին դարուց թարգմանութիւն[2]։ Ի մէջ այլոց՝ Պարիսի Ազգային մատենադարանի թիւ 46 (P. Martin 80) հայ ձեռագրին (գրեալ յամի Տեառն 1307 ի Կաֆա) էջ 110բ—111ա կայ հատուած մը, “Հիպպողիտա ասացեալ„ վերնագրով[3]։ Այս

[1] Տես Հյկկն. Թարգմ. Նախնեաց, Վենետ. էջ 554—557։

[2] Նոյնպէս Ն դարու թարգմանութիւն են “Արարատ„ լրագրի 1896 էջ 60 հրատարակուած չորս կտոր Հիպպողիտայ ընծայեալ գրութիւնները։

[3] Ուրախութեամբ կը կատարեմ շնորհակալութեանս

հատուածն, զոր վարն ամբողջովին պիտի դնենք, ինչպէս ամէն Ոսկեդարեան անմիջապէս կը տեսնէ, Ի դարու ընտիր հայերէն թարգմանութիւն է, եւ կարծես Եզնիկ ինքն է որ կը խօսի. այնպէս զուտ բառական մթերքով, այնպէս կանոնաւոր քերականութեամբ, այնպէս ճկուն եւ զօրաւոր։

Հատուածս յայտնապէս կ'երեւայ իբրեւ բեկեալ նշխար ամբողջ գրութեան մը։ Հատուածիս վերնագիրը Հիպպողիտոսը մատնանիշ կ'ընէ։ Սակայն Ս. Հիւպպողիտայ ծանօթ գործերուն մէջ այս հատուածս չենք գտներ։ Այս հատուածս եթէ ստոյգ Հիւպպողիտայ է, պիտի ըլլայ Φιλοσοφούμενα կամ "Ընդդէմ ամենայն հերետիկոսութեանց„ 10 գրքերէն, որոնց երկրորդ եւ երրորդ գրքերը կորսուած են, եւ կամ հաւանականագոյնս՝ բոլորովին կորսուեալ հետեւեալ երկու գրքերէն՝ "Վասն Աստուծոյ եւ վասն յարութեան մարմնոյ,„ կամ "Վասն բարւոյ եւ վասն սկզբան չարեաց։„ Ս. Հիւպպողիտոս ունի նաեւ համառօտ գիրք մը՝ "Ընդդէմ ամենայն հերետիկոսութեանց„ եւ նաեւ գիրք "Ընդդէմ Մարկիոնի։„ Այս գործերն որչափ ալ մօտ կ'երեւան այս նոր հատուածին եւ առ հասարակ Եզնիկայ գործոյն նիւթին, սակայն դժբախտաբար բնագիրն ի սպառ կորուսեալ ըլլալուն՝ կարելի չէ որեւէ հաւանականութիւն մը հաստատել։ Կը մնայ լուծումը ժամանակին։

---

պարտքը մեր Յարգելի բարեկամ Պր. Կ. Յ. Բասմաջեանին, որ յանձն առաւ նոյն հատուածն ընդօրինակել եւ ղրկել։

Ս. Հիւպպողիտայ ընծայուած այս հատուածն, ինչպէս ըսինք, կատարեալ Եզնկայ լեզուն է, այնպէս որ ընթերցողը կը կարծէ՝ թէ Եզնկայ «Ընդդէմ աղանդոց» գիրքը կը կարդայ։ Եթէ Եզնիկ չէ այս հատուածիս թարգմանիչն, դէթ ստոյգ է որ այս հատուածս Եզնըկայ ծանօթ է։ Կարելի է որ Եզնիկ այս հատուածիս նմանող տեղերն ամբողջովին ուրիշ աղբերէ մ՚առած ըլլայ. սակայն քանի որ չունինք միջոց մը զայս հաստատելու, կարող ենք գէթ ըսել՝ որ հատուածիս ցուցմունքներէն օգտուած է Եզնիկ։ Համեմատութիւն մը կարող է մեր ըսածն հաստատել։ Հիւպպողիտայ հատուածն ամբողջ կը դնենք եւ Եզնկայ հետ նոյն տեղերը նոտրգիր կը տպենք[1]։

*Հիւպողիտա ասացեալ*
*[2]Վասն եթէ անմահ եւ մահկանացու արար Աստուած զմարդն՝ մարթացի[3] ասել:*

Ոմանք ի Հարցն անմահ ասացին, հայեցեալ յայն՝ որ ասէն. «Ես ասէ՝ թէ աստուածք էք եւ որդիք Բարձրելոյ»[5]. եւ միւսն զոր Ամենափրկիչ[ն] ասէ, եթէ «Աստուած զմահ ոչ արար, եւ ոչ խնդա[յ] ընդ կորուստ

*Եզնիկ* 75[16]—76. Եւ դարձեալ ինքն իսկ ասէ. «Ես ասացի թէ աստուածք էք եւ որդիք Բարձրելոյ ամենեքին

*Եզնիկ* 75[17—26]։ Այլ զի

[1] Ուղղանկիւն [ ] փակագծի մէջ գրուած տառերն ու բառերը ձեռագրին մէջ կը պակսին, եւ մեր յաւելուածքն են։
[2] Ձեռագրին (= Ձ) մէջ բնագրին հետ միայար գրուած։
[3] Ձ ունի մարթայցէ։
[4] Ձ ասէն։
[5] Սաղմ. ՁԱ 6. «Ես ասացի թէ աստուածք իցէք, եւ որդիք Բարձրելոյ ամենեքեան։»

կենդանեաց[1]. այլ հաստատեաց զմարդն յանեղծութեան Աստուած[2]:" "Բայց նախանձու բանսարկուին եմուտ մահ [յ]աշխարհ[3]:" Նա եւ անդ եւս յայտնէ զոր ասէն. թէ Ցորում աւու[ր] չէր կերեալ [ի] պտղոյն՝ ոչ մեռանէր:

Իսկ այլք անմահ ասեն, եւ ոչ մահկանացու, այլ ընդունիչ կամ մահու կամ կենաց:

Բայց այլք եւ վճին եւս՝ եթէ մահկանացու եղեւ եւ մեղանչելի, որպէս թէ Աստուած պարտ իցէ մահու նորա եւ մեղաց, որ քաւ եւ մի լիցի. եւ զայն ոչ գիտեն՝ եթէ անմիտ Վաղենդիանոսացն են, որք բնութեամբ եւ ծննդեամբ ասեն զմեղսն: Եւ զնոյն հաստատեալ ասեն սոքա՝ եթէ Որ անմահ ոք է՝ ոչ մեղանչէ. որպէս թէ ասացեն թէ Որ մեղանչելի ոք է, նմա չէ մարթ ոչ մեղանչել. զի պարտ մահու եւ մեղաց զԱստուած դնիցեն, որ ամբարշտութիւն է կարծել զԱստուծոյ, թէ մեղաց եւ կորստեան արարիչ իցէ:

Այլ ուղղոց մնաց այն է՝ թէ արար Աստուած

Աստուած մահուան չէ պատճառ՝ վկայեսցէ Աստուածաբանեալ իմաստունն՝ որ ասէ եթէ "Աստուած զմահ ոչ արար եւ ոչ խնդայ ընդ կորուստ մարդկան. այլ հաստատեաց Աստուած զմարդն յանեղծութիւն պատկերի իւրոյ մշտնջենաւորութեանն, եւ նախանձու բանսարկուին եմուտ մահ յաշխարհ:"

Եզնիկ 76[3]. Այսինքն՝ եթէ Եւ զձեզ անմահս արարի,

---

1 Իմաստ. Ա. 13. "Աստուած զմահ ոչ արար եւ ոչ խնդայ ընդ կորուստ կենդանեաց:"

2 Զ ունի Աստուած բառ բայց: Անշուշտ գրիչն յաջորդ բայցին բառն կրկնած է:

3 Իմաստ. Բ. 23—24. "Զի Աստուած հաստատեաց զմարդն յանեղծութիւն, եւ ի պատկերի իւրոյ բարերարութեանն արար զնա: Նախանձու բանսարկուին եմուտ մահ յաշխարհ:"

զմարդն ընդունիչ պատուիրանաց կենաց եւ մահու. որպէս Իմաստունն ասէ, եթէ «Եդ առաջի քո զհուր եւ զջուր, եւ յոր ինչ կամիցիս ձգել զձեռն[1]», այն քո է եւ ոչ Նորա. զի զոր աւրինակ պատուիրանազանցութեամբն արար զնա մահկանացու, նոյնպէս եւ հրամանապահութեամբն կարող էր պահել զնա անմահ. եւ ոչ՝ որպէս նոքա ասեն, զի թէ ոչ լինէր մահկանացու, ոչ մեռանէր. որպէս զի եւ զանմահն զոր արար, թէ կամիցի, ոչ կարէ եղծանել: Զի՞նչ[2] է իմանալ [զ]այնպիս[ու]ոյ մտաց, եթէ ոչ [զ]Վաղենդիանոսի հերձուածն, որ ասեն՝ թէ Վասն զի ոչ կարեն փոխել մարմինք ընդ հոգւոյ, յայն սակս մեռանին[3] մահուամբ. զի կենդանիքն ի կենդանութիւն երթիցեն, եւ մահկանացու մարմինք ի հող անշունչ իջցեն: Որով նաեւ զմարմնոյ յարութեան խափանեն, եւ սոքա[4] ի նոյն խարխափ անկեալ դանդաչին[5]. զի եթէ որ մահկանացու հաստատեալ է, անմահ [ոչ] կարիցէ լինել, ապա եւ [ի] յարութեանն մի՛

եթէ կացեալ էիք յիմում հրամանին. բայց որովհետեւ ոչ կացէք յիմում պատուիրանին, «Դուք իբրեւ զմարդիկ մեռանիք, իբրեւ զմի յիշխանաց անկանիք[6]:» Եզնիկ 72²¹— : Կէսքն ասեն՝ թէ չէր մարթ մարմնաւորի անմահ կալ: Եւ այլքն ասեն՝ Վասն զի ոչ փոխեր մարմինն ընդ հոգւոյն յերկիր ծնանելոյ կեալ, հարկ է անդէն ապականութեամբ մեռանել: Այլ զառաջինսն յանդիմանեն Եղիա եւ Ենովք, որ ցայժմ կենդանի են, եւ զայլսն՝ համարակաց համօրէնն յարութիւն: Զի եթէ այժմ վասն զի անտեսական են մարմինք՝ յայն սակս մեռանին, ապա եւ ի յարութեանն՝ ըստ նոցա բանին, չգոյան ընդ հոգւոյն. եւ այսու յայտ առնեն՝ թէ զյարութեան իսկ մարմնոյ խափանել կամին:

---

1 Սիրաք ԺԵ. 17 «Եդ առաջի քո հուր եւ ջուր, ուր եւ կամիս՝ ձգես զձեռն քո:»

2 Զ ինչ:

3 Զ մեռնին:

4 Զ նոքա:

5 Համմտ. Եզնիկ էջ 111³⁻⁴ «ի նոյն խարափ անկեալ եւ աղանդոցն.» ուղղէ այս սխալ ընթերցուածն՝ խարխափ: Նոյնպէս Եզնիկ էջ 241¹⁶ խորխան, ուղղէ խործխան. էջ 257²¹ խորհելք, ուղղ. խորելք. էջ 298³ վխոյժ, ուղղ. փխոյժ:

6 Սաղմ. ՁԱ. 7:

կայցէն որ կենդանի կային. այնու զի մի անգամ[1] մահկանացու արար[եւ][2] մարդկան բնութիւն, եւ ոչ է հնար, ըստ նոցա մոլորութեանն, մահկանացուին անմահ լինել։ Այլ յանդիմանէն զնոսա Ցենովքէ–Եղիա, որ մինչեւ ցայսօր կենդանիք են. եւ Տէր մեր ասելով՝ եթէ “Յայնժամ աւուր իցեն երկու ի մի ագարակի, մինն առցի եւ միւսն թողուցու[3].„ որով յայտ է՝ եթէ ի գալստեան Նորա կենդանիքն կան եւ ոչ մեռանին. զորմէ եւ Առաքեալ ասէ, ոչ զանձին՝ այլ զայնժամու կենդանեացն. եթէ “Մեք որ կենդան[ւ]ոյն մնացեալ իցեմք ի գալստեան Նորա, նոքօք հանդերձ յափշտակեսցուք ընդ յառաջ Տեառն յաւդս[4].„ որով յայտ է եթէ կեն[դանի կան, թէպէտ մահկանա]ցու[5] արարաւ մարդն։ Այլ. ասեն, գրեալ է, եթէ “Ո՞վ է մարդ որ կեցցէ եւ ոչ տեսա-

---

1 Զ անկամ։

2 Զ արար են։

3 Մատթ. ԻԴ. 40. “Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին առնուցու եւ միւսն թողուցու։„

4 Ա. Թեսաղ. Դ. 14—16 “Մեք որ կենդանիքս եմք մնացեալք՝ ի գալստեան ի Տեառն ոչ ժամանեմք ննջեցելոցն . . . Ապա եւ մեք որ կենդանւոյն մնացեալ իցեմք՝ նոքօք հանդերձ յափշտակեսցուք ամպովք ընդ առաջ Տեառն յաւդս։„

5 Զ մէջ կէն [Նոր էջ 111ա] ցու։ Յայտնի է որ ընդօրինակողն նոր էջ սկսած ժամանակ իւր (երկաթագիր) գաղափար օրինակին մէկ տողն ի բաց թողած է եւ յաջորդնոյն (ցու) բառով սկսող տողը շարունակեր է։ Մենք դրինք մեր կողմանէ դուրս մնացած տողը մեզի հաւանական երեւցած եղանակաւ։

ցէ զմահ.»[1] զի այնու զամենայն մարդիկ ընդ մահուամբ փակեսցեն. իսկ եթէ եւ[2] լուիցեն անդրատին ի Դաւիթէ. «Ոչ ոք է արդար եւ ոչ մի. ոչ ոք է որ առնէ զարդարութիւն[3]..» բայց չկարեն ասել, եթէ Չիք երկիւղած ի Տեառնէ: Եւ կայն զի առնիցեն եթէ չկա...[4]:

Մաղաքէիւ մարգարէիւտա[յ] Աստուած զաւետիս, թէ «Ծագեցից ձեզ երկիւղածաց անուան իմոյ արեգակն արդարութեան[5].» որով յայտ է եթէ ոչ զամենեցուն զմահուանէ ասէ, այլ զբազմութենէ. զի սովոր են գիրք զբազմութենէ «ամենայն» ասել. որպէս ի միում Սաղմոսին ասէ. եթէ «Ամենայն շուն[չ]ք աւրհնեսցեն զՏէր[6].» եւ դարձեալ ասէ. «Ոչ արդարանա[յ] ամենայն կենդանի առաջի Տեառն...[7] եւ դարձեալ յայտ առնէ՝ եթէ «Ծագեսցեն արդարքն իբրեւ զարեգակն յարքայ-

---

1 Սաղմ. ՁԸ. 49:

2 Զ մէջ կ'երեւայ այստեղ բառ կամ խօսք դուրս մնացած է:

3 Սաղմ. ԺԳ. 3. «Ոչ ոք է որ առնէ զքաղցրութիւն, եւ ոչ ոք է մինչեւ ի մի», ԾԲ. 2, «Ոչ ոք է որ առնէ զքաղցրութիւն», 4. «Ոչ ոք է որ առնէ զբարի, եւ չէ ոք մինչեւ ի մի», Հռոմ. Գ. 11 «Ոչ ոք է արդար եւ ոչ մի.» 12. «Ոչ ոք է որ առնէ զքաղցրութիւն, ոչ ոք է մինչեւ ի մի»

4 Այսպէս Զ. կ'երեւայ շարունակութիւնը դուրս մնացած է:

5 Մաղ. Դ. 2. «Ծագեսցէ ձեզ երկիւղածաց անուան իմոյ արեգակն արդարութեան»

6 Սաղմ. ՃԾ. «Ամենայն հոգի՛ աւրհնեցէք զՏէր:»

7 Սաղմ. ՃԽԲ. «Ոչ արդարանայ առաջի քո ամենայն մարմին» (Ըստ Ժամագրոց՝ «ամենայն կենդանի»)

*ութեանն[1].„ եւ դարձեալ՝ “Երթիցեն արդարքն [ի] յաւիտենից կեանս, եւ մեղաւորքն [ի] յաւիտենից տանջանս[2]:„*

*Եւ արդ, չէ Աստուած պարտ մահու եւ մեղաց, ըստ այնմ՝ զոր Գիրն ասէ. եթէ “Աստուած հաստատեաց զմարդն յանեղծութիւն[3].„ եւ Մարգարէն ասաց յերեսաց Աստուծոյ. “Ոչ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալն նորա եւ զկեալն[4].„ եւ Առաքեալն ասէ. “Կամիմ զամենայն մարդ[ի]կ [կ]ե[ա]լ[5] եւ ի գիտութիւն ճշմարտութեան գալ[6].„ եւ Յովէլիւ մարգարէիւ ասէ. “Հեղից յոգւոյ իմոյ ի վերայ ամենայն մարմնոյ[7].„ մինչ կարիցես ասել՝ թէ եւ ի մարմին անասնոյ:*

*Ինչպէս դրուած համեմատութեննէն կ'երեւայ, Եզնիկ այս հատուածէն անկախ չէ. կայ նոյնութիւն երկուքին ցուցմանց, վկայութեանց, բացատրութեանց, բայց մանաւանդ լեզուի:*

*Կարելի է նաեւ՝ որ Եզնիկ Հիւպպողիտայ վերոյիշեալ կորուսեալ գործերէն մէկն ունե-*

---

1 Մատթ. ԺԳ. 43:

2 Մատթ. ԻԵ. 46. “Երթիցեն նոքա ի տանջանսն յաւիտենականս, եւ արդարքն ի կեանս յաւիտենականս:„

3 Իմաստ, Բ. 3:

4 Չ Ի— ըՒԸ: Եզեկ. ԺԸ. 23. “Մինթէ կամելո՞վ կամիցիմ զմահ մեղաւորին, ասէ Տէր Տէր, որպէս զդառնալ նորա ի չար ճանապարհէն եւ զկեալն:„

5 Չ մորթել:

6 Ա. Տիմ. Բ. 4. “Զամենայն մարդիկ կամի զի կեցցեն, եւ ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն.„

7 Յովէլ Բ. 28:

ցած ըլլայ առջեւը, որոնք նոյն տեսակ նիւթերու վրայ կը ճառէին անշուշտ, ինչպէս Ս. Մեթոդիոսի գործոյն մէջ տեսնուեցաւ։ Արդէն մինչեւ հիմայ ցուցուածներէն կարելի է հետեւցընել՝ թէ Եզնիկ, որ Ա. Գրքին մէջ ստէպ նիւթը կը փոխէ եւ առարկութեան ձեւի տակ նոր նոր նիւթեր յառաջ կը բերէ, շատ հեղինակներէ կազմած է իւր գեղեցիկ փունջը, այնպիսի հին եւ առաջին կարգի հեղինակներէ, որոնց բնագիրներն այս օրս տակաւին հրապարակ ելած չեն։

---

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

*ԵԶՆԿԱՅ ԳԵՐՄ. ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ, տպ. 1900:*

---

*Եզնկայ “Ընդդէմ աղանդոց„*[1] *գիրքը թէեւ ցայժմ հայ բնագրին վրայէն ուրիշ լեզուի մը թարգմանուած չէ. ի բաց առեալ Լը Վայեան դը Ֆլորիվալի անճիշդ՝ եւ այս պատճառաւ քիչ գործածուած եւ գրեթէ անգործածելի*[2] *ֆրանսերէն թարգմանութիւնն*[3] *եւ ինչ ինչ դրքերու եւ լրագիրներու մէջ լոյս տեսած քանի մը հատակոտոր քաղուած-*

---

1 *Ձեռագիր օրինակին մէջ գիրքս վերնագիր չունի, Զմիւռնիոյ տպագրութեան վրայ դրուած է “Գիրք ընդդիմութեանց„ վերնագիրը, իսկ Վենետկոյ տպագրութեան վրայ “Եղծ աղանդոց„: Երկու վերնագիրներն ալ կամայական են, իսկ “Ընդդիմութիւնք„ կամ “Եղծ„ բառերը դասական չեն: Վիեննայի Մխիթարեանները աւելի ճիշդ՝ “Ընդդէմ աղանդոց„ կը կոչեն մատենիկս: Համմտ. Հ. Գալէմքեարեան, “Նորագոյն աղբերք Եզնկայ„ էջ 3, ծան. 1: Այսպէս նաեւ Եզնկայ գործածած Եպիփանու* Panarion*ը պարզապէս“ Ընդդէմ հերձուածոց„ վերնագիրն ունի: Հ. Տաշեան, Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, Վիեննա,* 1895, *էջ* 81, *ծան.* 5:

2 V. Langlois, Collection, Paris, 1869, Բ. 372 *կը գրէ. “Ֆլորիվալի թարգմանութիւնը դժբախտաբար շատ անհաւատարիմ է եւ մատենկանս արժանիքին վրայ շատ անկատար գաղափար մը կու տայ:*

3 Réfutation des différentes sectes, Paris 1853.

ները, հանդերձ այսու շնորհիւ բազմաթիւ մանաւանդ գերմանացի հայագէտներու[1], նոյնին բովանդակութիւնը համեմատաբար ընդարձակագոյնս ծանօթացուած եւ նկարագրուած է։

Ի մասնաւորի վերջերս Ուսուցչապետն Սիմոն Վէբէր ի Ֆրէյբուրգ ի Բրայսգաու՝ մատենկանս բովանդակութիւնը քաջ ուսումնասիրած եւ բազմաթիւ յօդուածներ հրատարակած է, որոնցմով ցոյց տուած է մատենկանս կարեւորութիւնն ու նշանակութիւնը նկատմամբ “Աստուածաշունչի արժէքին Հայերու քով„[2] եւ “Քրիստոնէական ճշմարտութեան ջատագովութեան հին Հայերու քով[3]„, եւ նաեւ մատենկանս “գրութեան ժամանակին եւ վաւերականութեան վրայ„[4] հիմնովին ճառած է։

Եւ արդեամբք այսպիսի մտադիր ուսումնասիրութեան արժանի է մատեանս. վասն զի հեղինակն՝ Եզնիկ, բազմարդիւն “Թարգմանիչներու„ կարգին մէջ է եւ հայ գրականութեան հիմնադիրներուն առաջինն է[5]։ Թէ՛ թանկագին բովանդակու-

---

[1] C. Fr. Neumann („Hermes“ 33դ. Հատ. Լէյպցիգ 1829, էջ 177, եւ „Zeitschrift für die historische Theologie“, 4դ Հատ. Լէյպցիգ 1834, էջ 71—), Windischmann („Bayer. Annalen“, Միւնխէն 1834, էջ 81–), Harnack („Zeitschrift für wissenschaftl. Theologie 19դ Տարի, Լէյպցիգ 1876, էջ 84–102), Florival, Armand de Wickering („Revue de l'Orient“ Paris 1857, էջ 207—216), Dulaurier, Gatteyrias, Revillont, („Journal asiatique“ Է. 5, 515), Langlois, Հ. Գարեգին, Martin, Ermoni („Revue de l'Orient chrétien“ 1896, էջ 461–480) Կ. Եզեան (Պետերբուրգ 1858 ռուսերէն)։ Casartelli, Himpel (Kirchenlexikon v. Wetzer u. Welte, 2դ տպ. էջ 1163—1166) Հ. Տաշեան, Հ. Գալէմքեարեան, Vetter, Weber.

[2] „Tüb. Theol. Quartalschr. 1896, էջ 463–489։

[3] „Katholik“, Մայնց, 1898, Ա. էջ 214–230 եւ էջ 311–325։

[4] „Tüb. Th. Quart.“ 1897, էջ 367–398։

[5] Վէբէր, „Tüb. Th. Quart.“ 1897, էջ 368։

թեան ու գործած հնագոյն հեղինակներուն պատճառաւ, եւ թէ չքնաղ ոճոյն ու զուտ հայկական-քերականական ասացուածներուն նրբութեան պատճառաւ վերին աստիճանի կարեւորութիւն ունի։ Զայս կը հաստատեն Եզնկայ վրայ գրողները կամ զայն ուսումնասիրողները, ի մասնաւորի Վիեննայի Մխիթարեանները, որոնք զԵզնիկ ի սկզբանէ հետէ իբր մի միակ դասական հայ հեղինակ ճանչցան եւ անոր լեզուն "ոսկեղէն դարուն" լեզուին ամենավճիտը հռչակեցին։

Այսպէս յիշենք միայն քանի մը հնագոյն եւ նորագոյն եւրոպացի հեղինակներ։ Կ. Ֆր. Նէօյման կը գրէ՝ Եզնկայ մասին. "Եզնիկ Ս. Սահակայ եւ Մեսրոպայ ընտրելագոյն աշակերտներէն մէկն էր. Ասորիքի եւ Յունաստանի այլեւայլ դպրոցներուն մէջ դաստիարակութիւն առաւ, եւ ինչպէս կ'երեւայ՝ յոյն, ասորի եւ պարսիկ լեզուներուն քաջ հմուտ էր։ Իւր երկն հայագէտներու քով շատ մեծ յարգ ունի թէ զարդարուն եւ նուրբ բացատրութիւններուն եւ թէ նախադասութիւններուն կանոնաւոր շարքին պատճառաւ։ Գիտնական Մխիթարեանն Հ. Յարութիւն Աւգերեան ի Վենետիկ սովոր էր ըսել. "Ով որ հայերէնի ամէն նրբութիւնները ճանչնալ կ'ուզէ, պէտք է յարատեւութեամբ Եզնիկ կարդալ"։ Եզնիկ մէկն էր, մանաւանդ թէ ամէնէն նշանաւորն այն մարդերէն՝ որոնք Սահակայ եւ Մեսրոպայ դպրոցէն ելան, եւ մարդկային գիտութեան ամէն ճիւղերուն մէջ իբրեւ թարգմանիչ եւ հեղինակ համբաւաւոր եղան[2]։ Այս թարգ-

---

1 „Hermes“ 33դ հատ. Լէյպցիգ 1829, էջ 201։ C. Fr. Neumann որ հեղինակն է Versuch der Geschichte der armenischen Litteratur գրքին (Լէյպցիգ 1836), հայերէն սորվելու համար երկար ատեն Վենետիկ, Մխիթարեաններու քով կեցած է։

2 „Hermes“ էջ 196։

մանիչներու մասին կը գրէ նոյն Կ. Ֆր. Նէօյման[1]. "Թարգմանիչներն հայ ազգին նաեւ դասական հեղինակներն եղան. եւ այն թարգմանութիւններն՝ ինչպէս Աստուածաշունչի թարգմանութիւնը, իրենց զուտ եւ անպաճոյճ լեզուին, զարդարուն եւ ճկուն բացատրութիւններուն պատճառաւ հայ ասացուածքի իբր նախատիպ օրինակներ կը դրուատուին:" Այսպէս Ե. դարը, "Թարգմանիչներու" ժամանակը, հայ լեզուի եւ մատենագրութեան "ոսկեղէն" դարն է:

Եզնիկ, հայ մատենագրութեան ամենանշանաւոր գրական հեղինակն է՝ թէ՛ իր ոճոյն եւ հմտութեանը համար, եւ թէ՛ իր զուտ, ազնիւ եւ յաճախ նաեւ ճարտասանութեան պատճառաւ[2]: Թէպէտ Եզնիկ ունի բացատրութիւններ եւ նկարագրութիւններ, որոնք մեր տեսութիւններուն եւ սովորութիւններուն քիչ մը շատ ազատ եւ մերկ կ'երեւան, սակայն կարելի է զանոնք արդարացընել՝ նկատելով որ Արեւելք այս մասին նուազ նուրբ եւ նուազազգոյն չափաւորեալ բացատրութիւններ ունի, եւ թէ Եզնիկ ստիպուած էր հեթանոսական մոլորութիւններն իրական եւ բնական պարագաներովը խախտելու եւ այսպէս հեթանոսներու, մոգերու եւ Պարսիկներու հետ իրենց սեպհական ճակատատեղւոյն վրայ մարտնչելու: Բայց ասկէ՝ երկասիրութեան բովանդակութեան ծանրութիւնն եւ զուտ գիտնական նկարագիրն ինքնին կը պահանջեն՝ որ այսպիսի կտորները կարդացողներն՝ յատուկ պարագաները նկատողութեան առնուլ գիտնան եւ չգայթագղին քանի մ'ազատ եւ նիւթապաշտական բացատրութիւններէն ու նկարագրութիւններէն, զորոնք թարգմանութեան մէջ կարելի չէր զանց առնել:

---

1 Անդ. 195:

2 Հմմտ. Florival, անդ էջ Դ:

Վիկտոր Լանգլուա [1] գաղղիացին երկասիրութիւնս կ'անուանէ "Թանկագին գիրք մ'այլեւայլ պատճառներու համար. վասն զի Ե. դարու Հայ հեղինակներուն, ի մասնաւորի Եղիշէի եւ Ղ. Փարպեցւոյ Մազդեզանց վրայ տուած տեղեկութիւնները կ'ամբողջացընէ:" Եւ դարձեալ կ'ըսէ[2]. "Եզնիկ իւր երկասիրութեան չորս գրքերուն մէջ՝ իւր ժամանակին յուզուած փիլիսոփայական եւ կրօնական խնդիրներու քաջ հմտութիւն ցոյց կու տայ":

Նոյնպէս կը խօսի Դիւլորիէ[3], որ զԵզնիկ "իւր ազգին գիտնականագոյն ուսուցիչներէն մէկը" կը կոչէ:

Յ. Ա. Գատտէյրիաս[4], որ զինք "մշակ առաջին ժամուն" կ'անուանէ, եւ ուրիշ եւրոպացի եւ Հայ հեղինակներ անոր երկասիրութիւնը վերին աստիճանի կարեւոր գիրք կը կոչեն:

Վիւրցբուրգի Աւագերէցն Նիրշլ անով արդիւնաւոր եղաւ՝ որ առաջին անգամ Հայ գրականութիւնը՝ որով նաեւ Եզնիկայ երկն Ուսուցչապետ Ֆէսսլէրի աշխատակցութեամբն իւր Հայրախօսութեան մէջ առնլով՝ Հայրագիտութեան մասն ըրաւ: Ֆէսսլէր նոյն տեղն Եզնիկայ վրայ կը գրէ այսպէս[5]. "Եզնիկայ երկն Հայրագիտութեան մէջ եզական երեւոյթ մըն է: Իւր ոճն Հայ դասական լե-

---

[1] Collection, էջ 372: Langlois իւր Collectionին մէջ Բ. Հատ. էջ 369–382, հրատարակած է Բ. Գրքին առաջին 11 Գլուխներուն գաղղիերէն թարգմանութիւնը, որ թէեւ իմաստին կողմանէ հաւատարիմ է, բայց ամէն տեղ բառական չէ: Թարգմանիչն է Վենետիկի Մխիթարեան մը:

[2] Անդ, էջ 372:

[3] Cosmogonie des Perses d'après Esnig, „Revue de l'Orient", Paris 1857, էջ 253, 254:

[4] J. A. Gatteyrias, L'Arménie et les Arméniens, Պարիս 1882, էջ 76:

[5] Nirschl, Lehrbuch der Patrologie, Mainz, 1885, Գ. Հատ. էջ 231:

զուին թերեւս ամենէն ազնիւ օրինակն է, վճիտ՝ դիւրահաս, անպաճոյճ։„

Վերջապէս Ուսուցչապետն Վեբեր ի Ֆրէյբուրգ ի Բրայսգաու[1], որ ինչպէս ըսինք՝ այլեւայլ յօդուածներով Եզնկայ գրեթէ ամբողջ բովանդակութիւնն ընդարձակագոյնս եւ յաջողապէս ուսումնասիրած եւ թարգմանած է, նոյնը կ'անուանէ "ջատագովական երկ մը, որ ոչ միայն Հայ մատենագրութեան զարդը կը մնայ, այլ նաեւ նոյնին մէջ երեւցած նրբամտութեամբ, բովանդակած գիտութեամբ, եւ ասացուածոց փայլովը դասական հնութեան մատենագրական արտադրութիւններուն մէջ պատուաւոր դիրք մը գրաւել կրնայ։ Եզնիկ իւր ժամանակին ջատագովական մարտավայրին վրայ կը կենայ իբրեւ մարտուսոյց։ Նաեւ Հայ պատմութեան յաջորդ դարերը չեն աւանդեր ուրիշ անուն մը, որ անոր փառքը նսեմացընէ։„

Այսպիսի են այն հեղինակներուն դատողութիւններն՝ որոնք Եզնկայ «Եղծ-ըներ»ը տակաւին քննած չէին։ Հ. Գալէմքեարեանի նորագոյն հետազօտութիւններուն համեմատ՝ Եզնիկ, ինչպէս վարը պիտի տեսնենք, օտար շատ կարեւոր աղբիւրներ՝ առանց ակնաղբեր անունը տալու, իւր երկին համար առատօրէն գործածած է. այնպէս որ իւր երկին մէջ մթերուած գիտութեան ամէնը միայն իրեն սեպհական կարելի չէ նկատել։

Թէ Եզնիկ համանուն երկին հեղինակն է, ոչ ոք կը հակառակի. եւ Վեբեր համոզիչ կերպով ապացուցած է զայս։ Այն իրականութենէն՝ թէ սոյն երկս ծրագրին, յօրինուածութեան եւ գրութեան կողմանէ (թէեւ այլեւայլ գրքերէ շատ քաղուածներ ունենայ,) յինքեան միաբուն ամբողջութիւն մը կը կազմէ, իրաւամբ կը հետեւցընէ Վեբեր, թէ մի միակ հեղինակի գործ պէտք է որ ըլլայ, եւ այս

---

1 „Katholik“, Մայնց 1898, էջ 215։

անձն է մի միայն Եզնիկ Կողբացի, Բագրեւանդայ եպիսկոպոսն։ «Թարգմանիչն» ու ջատագովն Եզնիկ Կողբացի եւ Եզնիկ «եպիսկոպոսն» Բագրեւանդայ երկու զատ անձնաւորութիւն չեն, այլ երկուքն միեւնոյն անձն են։[1]

Եզնիկ՝ բարեկամն Կորեան՝ որ Ս. Մեսրոպայ վարքը գրեց եւ իրեն պէս Ս. Մեսրոպայ աշակերտն էր, ծնած էր Հայաստանի Կողբ գիւղը, Տայոց գաւառը[2]։ Եզնիկ պատմութեան մէջ երկու անգամ կը յիշուի[3]. Նախ իբրեւ եպիսկոպոս Բագրեւանդայ եւ անգամ 449ին Աշտիշատայ Սիւնհոդոսին[4]։ Երկրորդ անգամ կը յիշուի Եզնիկ Է. կամ Ը. դարուն՝ Մովս. Խորենացւոյ քով, որ կը գրէ Եզնկայ վրայ[5]. «Մեսրոպ եւ Մեծն Սահակ զՅովսէփ եւ աստ ընկերն Եզնիկ անուն՝ Կողբ գեղէն, կը ղրկեն Միջագետք Եդեսիա քաղաքը, Նախնի սուրբ Հայերէն գրուած հոն գտնուող ամէն գրքերը մեր լեզուին թարգմանելու եւ շուտով բերելու համար, որպէս զի կարող ըլլան զիրենք միեւնոյն նպատակի համար Բիւզանդիոն ղրկել։ . . . Ասոնք անմիջապէս Բիւզանդիոն գացին . . . եւ կրթուեցան յունարէնի մէջ եւ սկսան թարգմանել եւ գրել։» Եզնիկ Կ. Պոլիս մնաց մինչեւ Եփեսոսի Սիւնհոդոսին վերջը (431), որմէ. ետեւ եկաւ Աշտիշատ (Տարօն) ուր

---

1 „Tüb. Th. Quart.“ 1897, էջ 385։

2 Փէտտէր առ Nirschl, անդ։

3 „T. Th. Quart.“ 1897, էջ 367։

4 Վէբէր, „T. Th. Quart.“ 1897, էջ 392։ Եղիշէ, Վենետ. 1864, էջ 46։ Ղ. Փարպեցի, Վենետ. 1891, էջ 138։

5 Մ. Խորենացի, Վենետ. 1881 էջ 544։ Գերմ. թարգմ. ի Lauerէ, Ռեգէնսբուրգ 1869, էջ 224։ Ըստ Նորագոյն հետազօտութեանց Կարիերի (Nouvelles sources de Moïse de Korène, Վիեննա, Մխիթ. տպ. 1893։ Supplément անդ, 1894) Գարագաշեանի, Փէտտէրի, Խալաթեանց, Տէր Մկրտչեանց, Տաշեանի, Դաղբաշեանի. եւն Մովս. Խորենացի իւր Պատմութիւնն իբր Է. կամ Ը. դարուն գրած է։

դտաւ իւր ուսուցիչներն, որոնց յանձնեց Եփեսոսի Սիւնհոդոսի թղթերն ու վեց գլխէ բաղկացեալ կանոնները, եւ Աստուածաշունչի վաւերական գրչագիրներ, որոնց վրայէն Սահակ († 440) եւ Մեսրոպ († 441) յիշեալ աշակերտներուն հետ վերստին թարգմանեցին Աստուածաշունչը, զոր նախ վերիվերոյ թարգմանած էին[1]: Մծբին ուղեւորած ժամանակ Եզնիկ իբր 30 տարեկան պիտի ըլլար[2], հետեւաբար Արտաշատու Սիւնհոդոսին ժամանակ իբր 50 տարեկան ըլլալու էր:

Վերջապէս նոյն երկն ալ անոր անունը կը կրէ իբր հեղինակի[3], եւ նաեւ շարունակեալ աւանդութիւնը զանիկա գիտէ հեղինակ նոյն երկին[4]: Հազիւ Է. դարուն կը յիշուի ուրիշ Եզնիկ մը, որ կը կոչուի "Երէց"[5], որ սակայն ամէն պարագաներու համեմատ նոյն երկին հեղինակը չի կրնար ըլլալ:

Եզնիկ Կողբացի, մին առաջին "Թարգմանիչներէն", Սահակ Կաթողիկոսին (390—440) ձեռքին տակ գործեց, գլխաւորաբար յունական-աստուածաբանական մատենագրութիւնն իւր ազգին մէջ տարածելու նպատակաւ: Հայերն ինչպէս որ քրիստոնէութիւնը Յոյներէն առին — Ս. Գր. Լուսաւորիչ Կեսարիոյ Ղեւոնդիոս յոյն եպիսկոպոսէն Հայերու հովիւ ձեռնադրեցաւ[6] — այսպէս ալ

---

1 Մ. Խորենացի, անդ էջ 547:

2 Վէբէր, „Tüb. Quart." 1897, էջ 391:

3 "Եզնկայ Վ.ի Կողբացւոյ Ընդդէմ աղանդոց:"

4 Վէբէր. անդ էջ 369:

5 Նոյն անդ էջ 387:

6 Նէօյման („Zeit. f. d. hist. Th." Դ. էջ 172, ծան. 77.), "Անոր համար Հայերն երկար ատեն իբրեւ իրենց հոգեւորական մայրաքաղաքը կը նկատէին Կեսարիան; եւ Ս. Գր. Լուսաւորչի առաջին յաջորդները մինչեւ Ներսէս Ա. Կեսարիա առած են իրենց ձեռնադրութիւնը:" Նաեւ 410ին Մեսրոպայ՝ յունական գեղագրութեան քաջավարժ Հռուփինոս ճգնաւորին հետ կազմած հայ այբուբենքն անտարակուսելի է

գլխաւորաբար յունական (եւ ասորական) մատենագրութեան գանձերէն իրենց մատենագրական առաջին դաստիարակութիւնն առին[1]։ Այս մատենագրութիւնն հայ ազգին փոխանցելու կոչում ունեցողներուն մէջ Եզնիկ առաջինն էր, որ հմուտ էր յոյն, ասորի եւ պարսիկ լեզուներուն, եւ մին էր Աստուածաշունչն եւ այլ գրքեր յունարէնէ իրենց մայրենի լեզուին թարգմանողներէն, այն լեզուին՝ որ 410էն ի վեր Ս. Մեսրոպայ ձեռօք յատուկ այբուբենք ունեցած էր։ Եւ նոյն իսկ այս երկը կը բովանդակէ բազմաթիւ կտորներ, զոր Եզնիկ ինքնին յունարէնէ (եւ ասորերէնէ) թարգմանած, իւր նպատակին յարմարապէս գործածած, կերպաձեւած եւ երկին միացուցած է, թէեւ անոնց յոյն (եւ ասորի) ծագումն ու հեղինակները յիշատակած չէ։

Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան. Վիեննական Մխիթարեան, ... յամին 1893 Եզնկայ յոյն հեղինակներէն փոխառութիւններն առաջին անգամ գտաւ եւ իւր հետազօտութիւնները "Հանդէս Ամսօրեայի„ մէջ (Հոկտ. 1893 էջ 289 եւն) եւ առանձին տպագրութեամբ[2] հրատարակեց։ Եզնիկ Ա. Գրքին մէջ Վենետիկի տպագրութեան համեմատ (1826) էջ 19 տող 7էն մինչեւ էջ 58 տող 26,

---

թէ յունական այբուբենքի վրայէն ձեւուած է։ Հմմտ. Hübschmann H., Ueber Aussprache und Umschreibung des Altarmenischen (ZDMG, Հտր. Լ. էջ 53–73) եւ V. Gardthausen, Ueber den griechischen Ursprung der armenischen Schrift (էջ 74–80)։

[1] Նէօյման („Hermes“. ԼԳ. Հտր. էջ 194). Ե. եւ Զ. դարերուն հայ եւ մանաւանդ դասական մատենագրութիւնն Աթէնքի եւ Եդեսիոյ, ուր գլխաւորաբար քերականական ուսմունք կը ծաղկէին, Աղեքսանդրիոյ, Բիւզանդիոնի եւ Անտիոքի յունական դպրոցներէն յառաջ եկած է։ Ցուսալիր երիտասարդներն այն տեղերը կը ղրկուէին։

[2] Հ. Գալէմքեարեան, Նորագոյն աղբերք Եզնկայ, Վիեննա։

դարձեալ Գ. Գրքին մէջ էջ 236 տող 6էն մինչեւ էջ 239 տող 24 Մեթոդիոս Ողիմպիացւոյն "Վասն անձնիշխանութեան" գիրքը գրեթէ բառ առ բառ թարգմանուած է յայտնապէս եւ շատ յաջողութեամբ իւր երկին հիւսած, ինչպէս որ Հ. Գալէմքեարեան Մեթոդիոսի եւ Եզնկայ բնագիրները դէմ առ դէմ դնելով անվիճելի օրինակաւ յայտյանդիման ցոյց կու տայ[1]: Մեթոդիոսի գործն ընդհանրապէս, ինչպէս կ'ըսէ Բոնվէչ[2], "այն յատուկ բախտն ունեցած է, որ "Վասն անձնիշխանութեան" գիրքը ծանօթանալէն քիչ ետքն Ադամանտիոսէն՝ "Վասն ուղիղ հաւատոյ"[3] դիմառնութեան հեղինակէն (ինչպէս նաեւ ուրիշներէն) ըստ կարի շատ գործածուած է, թէպէտ այն հեղինակն (ինչպէս նաեւ ուրիշները) իւր աղբիւրը յիշած չէ:" ինչպէս նաեւ Եզնիկ նոյնը չի յիշատակեր, այլ ընդհակառակն գրութեանը մէջ այնպէս կը հիւսէ եւ կը շարամանէ, որ իբրեւ իւր ստացուածքը կ'երեւայ, այնպէս որ մինչեւ Հ. Գալէմքեարեանի գիւտը՝ ոչ ոք այս փոխառութեան վրայ չնչին կասկած մ'ունեցած էր: Բայց աւելի, ինչպէս Հ. Յովհ. Վ. Թորոսեան[4], Վենետիկի Մխիթարեան, մատադիր կ'ընէ, ինչ ինչ տեղեր Բարսեղ Կեսարացիէն, դարձեալ Հ. Գալէմքեարեանի համեմատ՝ Հիպպողիտոսէն եւ Արիստիդիսէն[5], եւ Հ. Գարեգինի, Հ. Թորոսեանի

---

1 Նոյն, անդ էջ 22–89:

2 Bonwetsch, Methodius von Olympus. I. Erlangen u. Leipzig 1891, էջ Ե.:

3 Caspari, Kirchenhistorische Anekdota, I. Քրիստիանիա 1883. ասոր մէջ կան Եզնկայ հետ համաձայնող կտորներ, էջ 67–92:

4 Հմմտ. "Բազմավէպ", Վենետ. 1889, էջ 14, 108, 199, 313, 385:

5 Ասոր վրայ ֆէտտէր „Tüb. Quart." 1894 (էջ 529–539) յատուկ յօդուած մը գրած է՝ "Արիստիդէսէ վկայութիւններ Հայ մատենագրութեան մէջ": Ասոր մէջ կ'ընդունի ֆէտտէր թէ երկուքին մէջ (Եզնկայ եւ Արիստիդէսի) թէեւ

եւ Հ. Տաշեանի համեմատ՝ Եպիփանու "Ընդդէմ հերետուածեանց„ (Panarion) գրքէն[1] օգտուած է, նոյնպէս առանց աղբիւրն յիշատակելու։ Դարձեալ քանի մը տեղ կան հետքեր Ս. Գր. Լուսաւորչի վերագրուած Յաճախապատում[2] գրքէն, որ ըստ Ֆէտտէրի՝ Ս. Մեսրոպայ († 441) երկասիրութիւնն ըլլալու է[3]։ Վինդիշման[4] կանխաւ յայտնած էր իւր այն կասկածը՝ թէ Եզնիկ ընդդէմ Մարկիոնի Դ. Գրքին մէջ սորի գնոստիկեան Բարդեծանի ընդդէմ Մարկիոնի գրքէն, եթէ ոչ նոյն իսկ Մարկիոնի Հակադրութենէն (Antithese), եւ կամ անոր աշակերտներէն մէկուն գրութենէն օգտուած ըլլայ, որուն դէմ գրեց Հառնակ։[5] Եւ սակայն ցայսօր

---

նոյնաբանութիւններ կան, սակայն Եզնկայ Արիստիդեսէ յառակապէս կախում ունենալն (ընդդէմ Հ. Գալէմքեարեանի) ապացուցուած չի համարիր (անդ էջ 530), այլ Եզնիկ միայն օգտուող է անկէ՝ անկախ մնալով (անդ էջ 534)։

1 Հ. Տաշեան, Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, Վիեննա, 1895, էջ 76–100։

2 Reden und Lehren des hl. Gr. des Erleuchters գերմ. թարգմ. J. M. Schmid, Ռեգենսբուրգ 1872։

3 Ֆէտտէր առ Նիրշլի, Հայրախօսութիւն Գ. էջ 221 եւ „Tüb. Quart." 1894, էջ 535։

4 „Bayer. Annalen" 1834, էջ 82։

5 Harnack (Zeitschrift f. wiss. Theol." ԺԹ. Հտր. Լէյպցիգ, 1876։ Beiträge zur Geschichte der marcionitischen Kirchen. I. Armenische Marcioniten des V. Jahrhunderts. Der Bericht des Ezniks էջ 91,) կ'ըսէ, թէ Եզնկայ նոյն աղանդին վրայ գրուածն իւր անձնական կարծիքն է. նաեւ հաւանական է որ հեթանոսներէն, Պարսիկներէն եւ յոյն փիլիսոփաներէն եւքը՝ միայն Մարկիոնեաններու (եւ Մանիքեաններու) դէմ չէր գրեր, եթէ սոնք այն ժամանակ իւր աշխարհին եկեղեցւոյն չսպառնային։ Ասով սխալած չենք ըլլար, եթէ ընդունինք՝ թէ Եզնկայ աւանդածն յետագոյն ժամանակի հայ հետեւողի մը մարկիոնեան վարդապետութենէն քաղուած մը եւ նոյն աղանդի մասին իւր գիտցածն է միայն„ (անդ էջ 92)։ Համմ. Եզնիկ Դ. Գիրք, Գլ. 15 եւ Վէբէր „Tüb. Quart." 1897, էջ 373։

ծանօթացած փոփոխութիւնները նկատելով՝ չի կրնար անհիմն ըլլալ այն կասկածը՝[1] թէ Եզնիկ իւր գործքին ցայսօր ծանօթ տեղերէն զատ, ուրիշ մասեր ալ մեզի մինչեւ հիմայ անծանօթ մնացած գրքերէն քաղած ըլլայ, որ սակայն գործքին ի մասնաւորի հայրագիտական արժէքն ոչ միայն չի նուազեցըներ, այլ ընդ հակառակն շատ աւելի կը բարձրացընէ. վասն զի, Վէբէրի հետ խօսելով՝[2] "անոր վրայ հնագոյն աւանդութեան հովանին կայ:„ Եզնկայ իբրեւ "Թարգմանչի„, շատ բնական էր ծանօթ օտար գրքերը գրութեանն համար գործածել. եւ այն պատեն տակաւին վարժած չէին հիմակուան պէս՝ աղբիւրներն ամենայն ճշդութեամբ նշանակելու։

Գործոյս քրոնիկոն ժամանակին վրայ Վէբէր առանձին յօդուած մը հրատարակած է[3], որուն համեմատ՝ 441էն (կամ 445էն) մինչեւ 448ին յետ Ք. ի գրուած ըլլալու է. եւ այս՝ նախներքին պատճառներու համար, ըստ որում գրքին քանի մը տեղերը ժամանակակից դէպքերու հետ յարաբերութիւն ունին։ Յամենայն դէպս գիրքս 449էն ետքը գրուած չի կրնար ըլլալ, վասն զի Եզնիկ կ'ըսէ (էջ 141) թէ մոգերու վարդապետութեան վրայ գրաւոր յիշատակարան մը չկայ։ Արդ Յազկերտ Բ. Պարսից թագաւորը 442ին Միհրներսեհի հրովարտակին մէջ սոյն վարդապետութիւնը գրել տուած է ու նոյնն Հայերու մէջ տարածած, եւ Արտաշատու Սիւնհոդոսին մէջ 449ին, որուն մասնակցեցաւ նաեւ Եզնիկ, նոյն վարդապետութեան հերքումը գրուեցաւ. ուրեմն Եզնկայ գիրքն այս 442ի հերքմնագրին ծանօթանալէն յառաջ գրուած

---

1 Հմմտ. Վէբէր, „Tüb. Quart.“ 1897, էջ 374։

2 Նոյն, անդ, էջ 372։

3 Նոյն, անդ, էջ 367–398։

էր (՞)[1]։ Միւս կողմանէ գիրքս 431էն յառաջ ալ գրուած չի կրնար ըլլալ. վասն զի թէեւ Եզնիկ Սասանեան Հարստութիւնն եւ Թէոդոս Բ.[2] կայսրը կը յիշէ, բայց ոչ Արշակունի Հայ Հարստութիւնը, որուն շուքն արդէն 428ին մարած էր[3]։ Մարկիոնի մոլորութիւնը Ս. Մեսրոպայ մահուանէն (441) ետքը սպառնայ Հայ եկեղեցւոյն. անոր յարձակման դէմ գրեց Եզնիկ նոյն մոլորութեան հերքումը։ Այս եւ նման պատճառներ կը յորդորեն զՎէբէր գործոյս գրութիւնն իբր 441էն, ճշդագոյն 445էն մինչեւ 448ի միջոցին մէջ դնելու։

Եզնիկ այս գրութեան դրդուած էր՝ ժամանակին կռուելու ստիպող պարագաներէն, որոնք բարձրաւանդակի վրայ կեցող Հայ եպիսկոպոսն ստիպեցին քրիստոնէական վարդապետութիւնն յոյն փիլիսոփաներու, Մանիքեցիներու, մոգերու եւ գնոստիկեաններու դէմ գիտնականօրէն պաշպանել[4]։ Մէկ կողմանէ քրիստոնէական վարդապետութեան կը սպառնային հետզհետէ հրապարակ ելող յոյն փիլիսոփայական դրութիւնները. միւս կողմանէ՝ արեւելքէն, նոյն իսկ ի Քրիստոս հաւատքն վտանգուած էր մազդեզանց պարսիկ վարդապետութեամբն կամ մոգերու քէշովը, զոր Հայ-

---

1 Համմ. ասոր դէմ բնագրին մէջ էջ 113 ծան. 1 որուն համեմատ Եզնկայ աւանդածն Միհր Ներսեհի 442ի հրովարտակին հետ բաւական տեղ կը համաձայնի։ Ուրեմն Եզնիկ 442էն ետքը գրած ըլլալու է։ Կ'երեւայ թէ Հայերուն այս հրովարտակէն զատ ուրիշ գրաւոր աւանդութիւն մը ծանօթ չէր։

2 Տես այս մասին բնագրին մէջ էջ 156, ծան. 135 (որուն համեմատ հաւանական է որ Թէոդոս Ա. ըլլայ Եզնկայ ակնարկածը։)

3 Յամին 428 Հայաստան զրկուեցաւ իւր ընդոծին համաքուն Արտաշէս իշխանէն, եւ երկիրն Յոյներու եւ Պարսիկներու մէջ բաժանուեցաւ։

4 Վէբէր. „Katholik“, Մայիս 1898, էջ 214։

կակղանպետութեան նոր ինքնակալը՝ Պարսից Յազկերտ Բ. Թագաւորը, նոյն իսկ բռնական միջոցներով ի Հայս մուծանել կը ջանար: Ըւելցուր նաեւ գնոստիկեան Մարկիոնի մոլորութեան մուտքը. եւ այսպէս Եզնիկ իւր գործը չորս մասի բաժնելու ըստ ինքեան ինքնին կը պարտաւորէր:

Գործոյս բովանդակութեան մասին, որուն վրայ Ֆէտտէր եւ Վէբէր ընդարձակագոյնս գրած են, հոս միայն համառօտիւ կը խօսինք[1]. այսինքն՝ Եզնիկ Ա. Գրքին մէջ գլխաւորաբար նիւթոյ յաւիտենական՝ եւ չարին գոյացական ըլլալուն հեթանոսական դրութեան դէմ կ'ելլէ: Բ. Գրքին մէջ Պարսից քէշին երկարմատեան դրութեան դէմ կը կռուի, որուն կը կցէ նաեւ ճառեր դիւախօսութեան վրայ, հեթանոսական ճակատագրութեան եւ քաղդէական աստղանշմարութեան դէմ: Գ. Գիրքը կը խօսի յոյն փիլիսոփայական դպրոցներուն վարդապետութեան եւ յոյն փիլիսոփաներուն Աստուածաշունչի հետ չմիաբանող աստղագիտական կարծիքներուն վրայ, ի մասնաւորի Պիւթագորեան, Պղատոնիկեան, Պերիպատիկեան, Ստոյիկեան եւ Եպիկուրեան դրութիւններուն վրայ, եւ անոնց վարդապետութիւնները կը հերքէ: Վերջապէս Դ. Գրքին մէջ նախ գնոստիկեան Մարկիոնի մոլորութիւնը համառօտիւ կը ներկայացընէ, եւ յետոյ իւրաքանչիւր նախադասութեան դէմ կռիւ կը մղէ:

Նիւթը դիւրաւ ըմբռնելու համար չորս գրքերուն իւրաքանչիւր գլուխներուն բովանդակած նիւթին համառօտ ցուցակը դրած եմ: Նոյնպէս Եզնկայ յիշած Աստուածաշունչի տեղիքն (մեծաւ մասամբ Հ. Գալէմքեարեանէ գրուած) նշանակած եմ, եւ ի վերջոյ դարձեալ ամբողջն ես քովէքով բերած դրած եմ:

---

1 Ըստ Ֆէտտէրի առ Նիրշլ, Հայրախօսութիւն Գ:

Եզնկայ գործոյն յետ–գրին վրայ Թարգմանութեանս գործակիցն Հ. Գալէմքեարեան ի Կ. Պոլիս իւր իսկ բառերովն այսպէս կը գրէ[1].

“Եզնկայ առաջին տպագրութիւնն ի Զմիւռնիա 1762, ունի յառաջաբան մը՝ գրուած Կ. Պոլսոյ Յակոբ Նշանաւոր Հայ Պատրիարքէն († 1764)։ Այստեղ կը յիշուի միայն՝ թէ Զմիւռնիոյ Աբրահամ Արքեպիսկոպոսը Պատրիարքին իմացուցեր է, որ Եզնիկ վարդապետի մէկ հետաքրքրական գործը ձեռք բերած է, եւ Պատրիարքը նոյն գրքին վրայ զմայլած՝ տպել տուեր է ի Զմիւռնիա։ Նոյն տեղ կ՚իմացընէ Պատրիարքը՝ թէ ձեռագրին ընդօրինակութեան սխալներր սրբագրած (°) է, եւ թէ միահետ գրութիւնը 76 գլուխներու բաժնուած է։

“Թէ այս ձեռագիրն ինչ եղած է, գրաւոր աւանդութիւն մը չկայ. կայ բերանացի աւանդութիւն մը, թէ նոյնը 1845ի Զմիւռնիոյ մեծ հրդեհին ժամանակ այրած է։ Եզնկայ այս գործոյն ուրիշ մէկ ձեռագիրը չի յիշատակուիր բնաւ աշխարհի եւ ոչ մէկ մատենադարանին մէջ, որոնց ցուցակներն հրատարակուած կամ ծանօթ են։ Նաեւ որեւէ հեղինակ մ՚այս մասին յիշատակութիւն չ՚ըներ։*

“Եզնկայ երկրորդ տպագրութիւնը, զոր կատարած են Վենետիկի Մխիթարեանք 1826ին ի Վենետիկ, 18 տողեան փոքրիկ յառաջաբան մ՚ունի, յորում սոյն տպագրութեան համար գործածուած ձեռագրին վրայ սաչափ կ՚ըսուի. “Օրինակ տպագրիս ձեռագրեալ է ի թուիս Հայոց ՌԻԹ, յոր յանխորշելի վրիպակաց տառիցն՝ որ ինչ ուրեք յայտնի գուշակէրն՝ ուղղեալ, զկարեւորսն՝ որպէս էր յօրինակին՝ աստղանիշ ներքոյ դրոշմեցաք, եւ

---

1 Նամակ ի Կ. Պոլսոյ ի 15 Դեկտ. 1898.

* Վահրամ Վ. (ԺԳ. դար) “Հարցմունք եւ պատասխանիք„ գրութեանը մէջ Եզնկայ ԻԴ. եւ ԻԵ. գլուխներուն յայտնի ակնարկութիւն կ՚ընէ: Ծ. ԹԱՐԳՄ.

պանյօղաւոր զմիահետ գրչագիրն արարաք ի գիրս եւ ի գլուխս։„ Այս յառաջաբանին համեմատ կը կարծուէր, որ Վենետիկի Մխիթարեանց մատենադարանին մէջ կայ Եզնկայ ձեռագիր մը, որ Քրիստոսի 1280 թուականին գրուած ըլլայ, եւ թէ այս ձեռագրին վրայէն Վենետիկի առաջին տպագրութիւնն եղած ըլլայ։ Վենետիկի Մխիթարեանք մինչեւ այսօր ալ աւելի յայտնի կերպով չբացատրեցին իրը, թէեւ առիթներ հանդիպեցան։

“Յամին 1897 Սեպտ. Վենետիկ գացի՝ Եզնկայ ձեռագիրն հետազօտելու, որ եւ ինձ առանձինն բարեյօժարութեամբ թոյլ տրուեցաւ։ Եւ ահա խնդրական ձեռագիրն ուրիշ բան չէր՝ եթէ ոչ Զմիւռնիոյ առաջին տպագրութիւնը, որ ձեռագրի մը հետ համեմատուած էր եւ ընթերցուածոյ տարբերութիւնները վրան նշանակուած։ Ճակատին երկրորդ երեսին վրայ գրուած էր. “Եզնկայ գիրքս ուղղագրեալ ըստ ձեռագրի միում գրելոյ ի թուին Հայոց ՉԻԹ. ձեռամբ տիրացու գէորգի տէր յօհաննիսեան, եհաս առ մեզ յամին 1784 ի հոկտ։„ Այս ծանօթութիւնն ապահովապէս Վենետիկի Մխիթարեանց այն ժամանակի մատենադարանապետին է։ Օրինակին վերջը կը գրէ Գէորգ Տէր Յովհաննիսեան, որ նոյն համեմատութիւնը կատարած էր, իր իսկագրովը. “Շնորհօք եւ ողորմութեամբն աստուծոյ կատարեցի զգիրքս եզնկայ ես ապիկար Թովմա վարդապետս ի վայելումն ամենագով վարդապետին Ներսէսի, ի թուիս Հայոց ՉԻԹ։ Յոր ապա եւ մեք հայեցեալ ուղղագրեցաք զտպեալս զայս, եւ ձեռագիր օրինակն այն էր, յորմէ զտպեալն հանեալ էին ի թուականութեան Հայոց ՌՄԺԱ. յիզմիր քաղաքին.„ Այս ծանօթութիւնն երկու մաս ունի։ Առաջին մասն (մինչեւ “ի թուիս Հայոց ՉԻԹ„) Թովմաս գրչին է. իսկ երկրորդ մասն Տէր Յովհաննիսեանին՝ որ նոյնը տպագրութեան հետ համեմատած է։ Այժմ յայտնի է ուրեմն՝ որ մի

միակ ծանօթ ձեռագիրն, զոր 1280ին Թովմաս Վ. ընդօրինակած է, Զմիւռնիոյ 1762ի առաջին տպագրութեան նախագաղափարն է, եւ թէ յետոյ Գէորգ Տէր Յովհաննիսեան նոյն ձեռագիրը վերըստին համեմատելու համար ձեռքն ունեցած է, եւ թէ իր սրբագրեալ տպագիր օրինակը 1784ին Վենետիկի Մխիթարեանց մատենադարանը մտած է։ Իսկ նախագաղափար ձեռագիրն այսօրս անհետացած է, կամ թերեւս 1845ին ի Զմիւռնիա այրած է։ Երկրորդ ձեռագիր մը, — եւ ոչ իսկ հատուածներ — մինչեւ ցայսօր երեւան եկած չէ։„

Հայ բնագրին տպագրութեան վրայ Հ. Գալէմքեարեան անձամբ այսպէս կը գրէ[1].

“Ա. Տպագրութիւն։ Առաջին տպագրութիւնը (272 էջ փոքր 8ածալ) եղած է ի Զմիւռնիա յամին 1762 “ի տպարանի Մահտեսի Մարկոսի„, Կ. Պոլսոյ Յակոբ Հայ Պատրիարքին ձեռքով։ Հրատարակիչը միահետ գրութիւնը 76 գլխոյ բաժնած է եւ սրբագրութիւններ ներմուծած, որոնց մեծագոյն մասը կամայական եւ վրիպական է։ Այս հրատարակութեան Վենետիկի հրատարակութենէն ունեցած տարբերութիւնները գրուած են Հ. Գալէմքեարեանի պատրաստած հայ բնագրին քննական հրատարակութեան մէջ, զոր Վիեննայի Մխիթարեանք “Քննական հրատարակութիւն մատենագրութեան եւ թարգմանութեան Նախնեաց Հայոց[2]„ հրատարակութեան Բ. Հատորին մէջ ի մօտոյ ի լոյս պիտի հանեն։ Այս տարբերութիւնները սոյն թարգմանութեան մէջ նկատողութեան առնուած են։ Այս Ա. Տպագրութիւնն ստգտանելի է, եւ առանց Տէր Յովհաննիսեանի համեմատութեան՝

---

1 Անդ։

2 Աստ Ա. Հտր.ը լոյս տեսած է՝ Գաթրճեան-Տաշեան, Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, Վիեննա 1897, Մխիթ. Տպ.։

սկզբնագիրը, մանաւանդ հայերէն լեզուի տեսակէտէն, շատ թերի պիտի մնար„։

“Բ. Տպգր. Այս հրատարակութիւնը (298 էջ փոքր. 16 ածալ) Վենետիկի Մխիթարեանք կատարած են (գրքին վրայ հրատարակչին անունը չկայ. ուրիշ կողմանէ սակայն ծանօթ է, որ հրատարակիչն է Հ. Արսէն Բագրատունի,) եւ իրենց տպարանը դրոշմած։ Այս հրատարակութիւնը խնամքով եղած է[1], ինչպէս վերն ըսինք՝ նախագաղափարին հետ համեմատուած եւ ուղղագրուած Ա. Տպագրութեան վրայէն։ Հրատարակութեանս եւ իր գաղափար օրինակին (իմ ըրած) մէկ համեմատութիւնը կը ցուցընէ, որ ասիկա ալ իր գաղափար օրինակէն քանի մը՝ թէեւ ոչ կարեւոր, տարբերութիւններ ունի, եւ սրբագրութիւններ կատարուած են՝ առանց վրան ծանօթութիւն դնելու։ Այս մասին տես յետոյ հայ բնագրին քննական հրատարակութեան մէջ։

“Գ. Տպգր. Ի Վէննա. Ճշդիւ Բ. Տպգր. վրայէն, ի բաց առեալ բնագրին մէջ քանի մ'ուղղագրական սրբագրութիւնները։ Այս տպագրութեան վրայ թէեւ 1826 թուականը կայ, բայց 1850ին լոյս տեսած է։

“Դ. Տպգր. Ի Պարիս 1860, ի տպարանի Ճանիկի Արամեան, նոյն իսկ տպարանապետէն հրատարակուած (274 էջ փոքր 8 ածալ), ճշդիւ Վենետիկի հրատարակութեան վրայէն տպուած, առանց որեւէ շեղման կամ սրբագրութեան։

“Ե. Տպգր. դարձեալ ի Վենետիկ ի Մխիթ. տպարանի, ճշդիւ Բ. Տպգր. համեմատ, ի բաց առեալ քանի մ'ուղղագրական շեղումները։ Թուա-

---

1 Դիւլորիէ անդ, էջ 253. ծան. 1. “Այս տպագրութիւնը նախընթացէն շատ աւելի լաւագոյն է՝ բնագրին սրբագրութիւններուն պատճառաւ։„

կանը թէեւ դարձեալ 1826 է, բայց ուրիշ կողմանէ յայտնի է որ 1863ին կատարուած է։

"Զ. Տպգր. Ի Կ. Պոլիս (274 էջ) 1864։ Հրատարակիչ եւ տպագրիչ նոյն Արամեան, որ Դ. Տպգր. ի լոյս հանած է։ Դ. Տպգր. հաստատատիպական (stereotype) հրատարակութիւնն է։

"Է. Տպգր. Ի Կ. Պոլիս 1869։ Զ. Տպգր. հաստատատատիպական հրատարակութիւնը։

"Ը. Տպգր. Ի Կ. Պոլիս (367 էջ) 1871։ Տպագրիչ եւ հրատարակիչ Յ. Գավաֆեան. Պոլսոյ հրատարակութեան վրայէն տպուած։ Այս հրատարակութեան համար ըսող կայ՝ թէ 1884ին վերստին տպուած ըլլայ. թէեւ ես շատ հետամուտ եղայ, բայց չկրցայ եւ ոչ օրինակ մը տեսնել։

"Թ. Տպգր. Ի Կ. Պոլիս 1879. Դ. Տպգր. հաստատատատիպական հրատարակութիւնը։

"Ժ. Տպգր. քննական. զայս պատրաստած է Հ. Գալէմքեարեան, եւ իմօտոյ պիտի հրատարակեն Վիեննայի Մխիթարեանք։ Այս հրատարակութեան բնագիրը կազմուած է Տէր Յովհաննիսեանի վերոյիշեալ համեմատեալ բնագրին վրայէն, յետոյ համեմատուած Զմիւռնիոյ եւ Վենետիկի հրատարակութիւններուն հետ։ Այլեւայլ բնագրայոյզներու սրբագրութիւններն որ գրքերու եւ յօդուածներու մէջ լոյս տեսած են, սոյն հրատարակութեան մէջ նշանակուած են եւ ընթերցուածոյ նոր սրբագրութիւններ եղած, որոնց մասին ընդարձակագոյն հայ բնագրին յառաջաբանին մէջ պիտի խօսուի։„[1]

Այս գրքին թարգմանութիւնը յանձն առնելուս սկզբնապատճառն եղաւ իմ յարգելի բարեկամս՝ Հ. Գր. Վ. Գալէմքեարեան... Մխիթարեանը,[2]

---

[1] Այս բնագիրն, որուն ձեռագիրը պատրաստ է, սոյն թարգմանութեան հիմն եղած է։

[2] Նամակ ի Վիեննայէ ի 6 Փետր. 1897

որ նաեւ թարգմանութիւնն ուղղեց ու սրբագրեց, մանաւանդ դժուարին եւ մթին տեղերը (ընկերակցութեամբ Վիեննայի Մխիթարեան Հ. Ռափայէլ Վ.ի Պարոնչ) եւ ինձ Վիեննայի Մխիթարեանց մատենադարանէն այս նիւթիս վերաբերեալ այլեւայլ հրատարակութիւններ ընծեռեց։ Թարգմանութիւնս, որ այսպէս միայն աշխատակցութեամբ կատարուած է, նոր ժամանակիս պահանջումներուն համեմատ խստիւ հայ բնագրին կապուած է, որպէս զի կարելի ըլլայ գերման ընթերցողին պայծառացուցընել Եզնկայ գրութեան ոճն եւ ասութիւնները եւ անոր գաղափարներուն անարատ պատկերը։ Վենետիկի տպագրութեան վերջը կայ (էջ 299—313) "Խրատք", զոր մենք ի բաց թողուցինք, վասն զի ատոնք Եզնկայ չեն, այլ Ս. Նեղոսի կը վերագրուին։

Այս գրքիս բովանդակութեան վրայ Ֆէտտէրի[1] եւ Վէբէրի[2] գեղեցիկ յօդուածներովը շատ բան ծանօթանալէն ետքը, անշուշտ Աստուածաբաններու եւ Հայրագէտներու եւս աւելի ցանկալի էր այլ եւս սոյն իրաւամբ մեծահամբաւ գրքիս ամբողջ բնագիրն ըստ կարի բառական գերմաներէն թարգմանութեամբ ալ կարդալ։ Բառական թարգմանութիւնն ի մանաւորի հայերէն սորվող սկսնակներու շատ հաճոյական պիտի գայ։ Երկասիրութիւնս անշուշտ բարեհաճ եւ համակրական քննութեան եւ ընդունելութեան կ'արժանանայ։ Quod Deus bene vertat!

*Փրոնշտէտտէն, առ Դեկկենդորֆ (Բաւարիա)*
*ի 11 Մայիսի 1899.*

*ԿԱՆՈՆԻԿՈՍ ՊԱՑՈՒՌՈՑ ՅՈՎՀ. ՄԻՔ. ՇՄԻԴ*
*ժողովրդապետ:*

---

[1] Ֆէտտէր. առ Նիրշլ, անդ։

[2] Վէբէր „Tüb. Quart." 1896, էջ 463—489, եւ „Katholik" 1898 Ա. էջ 214—230 եւ էջ 311-325։ Ֆէտտէր եւ Վէբէր նոյն տեղերն Եզնկայ քանի մը կտորները գերմաներէն թարգմանած են։

# ՀԱՅԵՐԷՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՔ

## ԵԶՆԿԱՅ ԳԵՐՄ. ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

---

### Եզնիկի Գերմաներէն Թարգմանութիւնը:

**Մեր** անցեալ թղթակցութեանց մէկուն մէջ ըսած էինք թէ շնորհակալութեամբ ստացեր ենք Եզնիկի Գերմաներէնի թարգմանութիւնը՝ գործ Շմիտ քահանային, մի եւ նոյն ժամանակ խոստացեր էինք մեր գործակալութեան բոլոր ճիւղերուն մէջ գրել այդ թարգմանութեան մասին: Արդէն 15 օրէ աւելի է որ Եզնկայ մասին գրեցինք եւ թարգմանելով ղրկեցինք մեր բոլոր ճիւղերուն եւ ամէն լեզուով, իսկ եթէ մինչեւ այսօր Հայերէն բան մը չգրեցինք պատճառը այն էր որ տեղը կը պակսէր միշտ:

Շմիտի անունն կրող գերմաներէն թարգմանութիւնը մեծ ութածալ հատոր մ'է 210 էջերէ բաղկացած. սկիզբը կը գտնուի ընդարձակ ներածութիւն կամ առաջաբան մը, իսկ վերջը կը գտնուին մի քանի համեմատութեանց ցանկեր Եզնիկի Ս. Գրքերէն առած օրինակներուն: Թուղթը եւ տպագրութիւնը պատիւ կը բերէ Վիեննայի Մխիթարեանց տպարանին, այսինքն շատ մաքուր եւ գեղեցիկ է:

Գալով թարգմանութեան՝ անմիջապէս ըսենք թէ նա մինչեւ այսօր եղած բոլոր թարգմանական փորձերուն ամենակատարեալն կրնայ համարուիլ, ո՛չ որովհետեւ հեղինակը յայտնի է իւր հայագիտութեամբ — Շմիտ՝ որչափ որ գիտենք մինչեւ օրս անծանօթ մ'է հայերէնի տեսակէտով — այլ մանաւանդ այնու զի նա իրեն օգնական ունեցեր է՝ ինչպէս ինքն ալ կը խոստովանի՝ Հ. Գալէմքեարեանը որ Եզնիկի վրայ ամենալուրջ քննադատութիւնները գրած է:

**Մեր** գաղափարը այն է թէ այդ թարգմանութիւնը կատարողը ո՛չ թէ Շմիտն է այլ Հ. Գա-

*լէմքեարեանը, որովհետեւ շատ քիչ եւրոպացիներ կրնան գտնուիլ որ կարենան Եզնիկի արքայական բարձր ոճը հասկնալ. — Մենք դժբախտաբար փորձառութիւնը ունեցեր ենք մի քանիսին վրայ։ — Եզնիկը միայն այն կրնայ պէտք եղածին պէս հասկնալ, որն երկար տարիներ անով զբաղած է, զայն ուսումնասիրած է՝ որպիսին է Հ. Գալէմքեարեանը, իսկ Շմիտ՝ հաւանականաբար՝ գերմաներէնի ոճը սրբագրած կը լինի — թէպէտ մեր լսածին համեմատ Հ. Գալէմքեարեանը լաւ գերմանագէտ ալ է։ — Եւ արդէն գրքին մէն մի էջին ծանօթութեանց մէջ Մխիթարեան Վ. Հօր անունը կը յիշուի։*

*Վերջացնենք ըսելով թէ Գալէմքեարեան-Շմիտ թարգմանութիւնը շատ գեղեցիկ եւ գնահատելի գործ մ'է, այնու զի մեր մատենագրական ամենայայտնի փառքերէն մին կը ծանօթացնէ Եւրոպայի։*

*Այս առթիւ յիշենք թէ քիչ ատենէն — եթէ Տէրն կամեցի — Բարիզ պիտի սկսի հրատարակուիլ Եզնիկի հայերէն աշխարհաբար թարգմանութիւնն ալ, որն չորս ուրոյն հատորներ պիտի ունենայ։*

ՄԵԼԻՔ Ս. ԴԱՒԻԹ-ԲԷԿ

Paris-Nouvelles, 7 Մայիս 1900։

Paris-Nouvelles, *Մայիսի 7ի թուէն առնելով տեղեկութիւններ հրատարակեցին՝*

Արեւելք (*թ.* 4311), Բիւզանդիոն (*թ.* 1081), Ծաղիկ (153), Սուրհանդակ (357), *երեքն ալ* 29 Ապրիլ 1900 *թուականաւ։*

*Քննադատութիւնք երեւցան նաեւ հետեւեալ հայերէն թերթերուն մէջ՝* Հանդէս Ամսօրեայ, 1900 *թիւ* 5—6. Մասիս 1900 *թիւք* 24, 28, 31, *որուն պատասխանուեցաւ նոյն թերթին մէջ թիւք* 26, 30։ Բիւրակն, 1900 *թ.* 30։

---

# ԵՒՐՈՊԱԿԱՆ ԼԵԶՈՒԱՒ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՔ

## ԵԶՆԿԱՅ ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

## 1.

### *Եզնկայ Ընդդէմ աղանդոց:*

(*Քննադատութիւն* N. Bonwetsch*ի:*)

Արդէն շատոնց ծանօթ էր՝ թէ հին եկեղեցւոյ հերետիկոսներու պատմութեան համար թանկագին աղբիւր մըն է հայազգի Եզնկայ "Ընդդէմ աղանդոց„ գիրքը, որ նաեւ անոր ազգակիցներէն մեծապէս գնահատուած է՝ իբրեւ հայ մատենագրութեան ոսկեղէն դարուն յատկապէս դասական երկը: Բայց դժբախտաբար մինչեւ այսօր, — թո՛ղ Ֆլորիվալի գաղղիերէն անբաւական թարգմանութիւնը, Պարիս 1853, — չկար ամբողջ գործոյն թարգմանութիւնը, այլ միայն մէկ քանի հատակոտորները: Արդ ուրեմն Ֆրոնշտէտտի ժողովրդապետ Յովհ. Միքայէլ Շմիդ ըստ կարի բաւական թարգմանութիւն մ'ի լոյս հանեց:* Շմիդ, որ ծանօթ է իբրեւ թարգմանիչ "Յաճախապատում Ս. Գր. Լուսաւորչի„ գրքին (Ռէգէնսբուրգ 1872) իւր թարգմանութիւնը կատարած է Վիեննայի Մխիթարեան տպարանի վարչին եւ այժմ նոյն Միաբանութեան Կ.Պոլսոյ վանատան Մեծաւորին՝ Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեանի պատրաստած, բայց տակաւին լոյս չտեսած

---

* Des Wardapet Eznik von Kolb Wider die Sekten. Aus dem Armenischen übersetzt und mit Einleitung, Inhaltsübersichten und Anmerkungen versehen von Joh. Michael Schmid, Pfarrer in Frohnstetten, Ehrenkanonikus an der griechisch-melkitisch-katholischen Kathedralkirche von Panéas (Caesarea Philippi). Wien 1900. Druck und Verlag der Mechitharisten-Congregation. X, 210 S. 6 Mk.

Հայ բնագրին վրայէն:* Հ. Գալէմքեարեան Ըմիդի թարգմանութիւնը, մանաւանդ դժուարին կտորները կարդացած եւ սրբագրած է: Հ. Գալէմքեարեանի հրատարակութեան, որ լոյս պիտի տեսնէ "Քննական հրատարակութիւն մատենագրութեան եւ թարգմանութեան նախնեաց Հայոց" գործոյն մէջ, հիմն եղած է Գէորգ Տէր Յովհաննիսեանի՝ 1280ին գրուած եւ այժմ կորուսած կամ հաւանաբար այրած մէկ գրչագրին հետ համեմատելով պատրաստած բնագիրը, որ եւ 1784ին Վենետիկի Մխիթարեանց մատենադարանը մտած է, եւ աստից 1826ին հրատարակած տպագրութեան հիմն եղած: (Եզնկայ առաջին անբաւական տպագրութիւնն՝ եղած է վերոյիշեալ ձեռագրին վրայէն 1762ին ի Զմիւռնիա:) Հ. Գալէմքեարեան նաեւ ցոյց տուած է ("Հանդէս Ամսօրեայ" թերթին եւ իր առանձին տպագրութեան մէջ, որոնք ինձ անմատչելի են,) թէ Եզնիկ իր գործոյն մէջ Ննաֆոյն երկեր գործածած է, եւ ըստ մասին պարզապէս թարգմանած: Գլխաւորաբար գործածած է Արիստիդէս, Հիպպողիտոս, Մեթոդիոս եւ Բարսեղ: Հ. Տաշեան "Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք" Վիեննա 1895 (ինձ անմատչելի) աստից վրայ աւելցուց նաեւ Եպիփանու Panarionը, իբրեւ Եզնկայ գործածած աղբիւրներէն մէկը: Եզնկայ գիրքն ըստ Վէբէրի (Tüb. Theol. Quart. 1897 էջ 367—, Եզնկայ "Ընդդէմ աղանդոց" գործոյն յօրինման ժամանակն ու վաւերականութիւնը"**) գրուած է 441ին կամ 445—448ին մէջերը: Սոյն հնագոյն գրքերէն փոխ-

* "Հայ բնագրին վրայէն" այստեղ տպագրական վրիպմամբ դուրս է մնացեր, եւ նոյն Theol. Literaturblatt թերթին յաջորդ 20դ թուին մէջ (էջ 240) ծանօթացուեր է: ԾԱՆ. ԹԱՐԳՄ.

** Հայերէն թարգմանութիւնը տես "Հանդէս Ամսօրեայ" 1898, էջ 22, 110, 201: Ծ. ԹԱՐԳՄ.

առութեամբ՝ Եզնկայ գրքին արժէքն էապէս կը բարձրանայ մեզի համար, ինչպէս նաեւ թարգմանութեան արժէքը, որ նոյն փոխառութիւնները մեզի մատչելի կ'ընէ։ Փէտտէր Եզնկայ Արիստիդէսէ կախում ունենալն առանձինն հետազօտեց (Tüb. Theol. Quart. 1894 էջ 529 "Արիստիդէսի վկայութիւններ հայ մատենագրութեան մէջ„)։ Փէտտէր կը հաւանի Հ. Գալէմքեարեանի՝ թէ Եզնկայ ջատագովութիւնը Ա. Գիրք Գ. ընդդէմ արեգական, լուսնոյ, հողմոյ, հրոյ, երկրի եւ ջրոյ երկրպագութեան, աչքի զարնող համաձայնութիւն մ'ունի Արիստիդեայ (4—6, էջ 339— հմտր. Seeberg,) հետ, (որուն մէջ սա կարգաւ է՝ երկիր, ջուր, հուր, հողմ, արեգակն, լուսին,) եւ հետեւաբար պէտք է ընդունիլ՝ թէ Եզնիկ Արիստիդէսէ կախում ունի նոյն տեղ։ Բայց այս ցուցումը կը բարձրանայ ա՛լ յառաջ մինչեւ հրէական ջատագովութիւնը. համեմատէ օրինակի համար իմ հրատարակութիւնս "Յայտնութիւն Աբրահամու„ Գ, էջ 18—, ուր հուր, ջուր, երկիր, արեգակն եւ լուսին (հողմ կը պակսի) իրարու կը յաջորդեն, եւ Մեկնութիւնն Midrasch Bereschit rabba Ծննդոց ԺԱ. 28 (Վիւնշի թարգմ. էջ 172—)։ Բայց շատ շատ աւելի նշանաւոր է Եզնկայ Մեթոդիոսէն օգտուիլը։ Իրօք Մեթոդիոսի "Վասն անձնիշխանութեան„ գիրքը, ինչպէս Եւսեբիոս եւ Ադամանտիոս ի Դիմառնութեանն, այսպէս նաեւ Եզնիկ գրեթէ ամբողջ ե-բառական բառական թարգմանութեամբ իւր երկին մէջ (առանց անունն յիշատակելու) առած է։ Ասիկա շատ կարեւոր է մանաւանդ Մեթոդիոսի գրքին հատուածներուն համար, որոնք միայն հին սլաւական թարգմանութեամբ մեզի հասած են. Եզնիկ Ա. գիրք Դ—ԺԴ եւ Գ. գիրք ԺԸ զՄեթոդիոս (Վասն անձնիշխանութեան Գ—ԻԱ եւ ԻԲ 3 ցվերջ) ընդօրինակած է։ Հին սլաւական

թարգմանութիւնը բնականապէս աւելի հաւատարմութեամբ բառ առ բառ թարգմանուած է քան Եզնիկայն, սակայն վերջնոյս կարելի է առաջինն ստուգել. եւ նաեւ սկզբնագիրը կազմելու համար Եզնկայ թարգմանութիւնն աննշանակ պիտի չըլլայ։ Թերեւս Շմիդի թարգմանութեամբ կարելի պիտի ըլլայ Եզնկայ աղբիւրներուն ուսումնասիրութիւնն ալ յառաջ տանիլ եւ նորանոր արդիւնքներ ձեռք բերել։ Շմիդի թարգմանութեան գիտնականօրէն յաջողեալ ըլլալն ի վիճակի չեմ վճռելու, բայց անոր վրայ մեծ վստահութիւն ունիմ։ Այն թարգմանութիւնն յամենայն դէպս ուրախութեամբ եւ շնորհակալութեամբ ընդունելու է. վասն զի նոյնն արդեամբք Եզնկայ երկին վրայ անդրագոյն հետազօտութիւններ կը հրաւիրէ։

*N. Bonwetsch.*

Theol. Literaturblatt, Leipzig 1900, Nr. 19.

## 2.

(*Քննադատութիւն* P. Vetter*ի:*)

Իբր 1760ին Զմիւռնիոյ մէջ հայերէն ձեռագիր մը գտնուեցաւ, որ կը բովանդակէր Եզնկայ Կողբացւոյ՝ Ե. դարու առաջին կիսուն անուանի հայ "Թարգմանչին„ մինչեւ այն ատեն անծանօթ մէկ գործը, այն է "Ընդդէմ աղանդոց„ գրութիւնը։ Ասիկա 1762ին Զմիւռնիա տպագրեցաւ։ Այս Առաջին Հրատարակութեան յաջորդեցին ուրիշ ութը հրատարակութիւններ. իսկ տասներորդ քննական Հրատարակութիւնը, զոր բազմարդիւն հայ գիտնականն Հ. Գր. Վ. Գալէմքեարեան պատրաստած է, մօտերս լոյս պիտի տեսնէ։ Սակայն այս հրատարակութիւններուն թւոյն չի համապատասխաներ թարգմանութեան թիւը։ Եզնկայ ջատագովական գրութիւնը մինչեւ այս գերմ. հրատարակութիւնը՝ իբրեւ ամբողջական գործ մի անգամ

միայն թարգմանուած է, այն է ի գաղղիերէն՝ ի ձեռն Լը Վաեան դը Ֆլօրիվալի (Պարիս 1853)։ Բայց այս թարգմանութիւնը շատ թերի էր եւ անճիշդ։ Անոր համար նոր՝ մանաւանդ գերմաներէն թարգմանութեան լոյս տեսնելն ուրախութեամբ կ'ողջունենք։ Եզնիկը լաւ թարգմանել դիւրին գործ չէ։ Կանոնիկոս Շմիդ, որ արդէն ծանօթ է հայ Հայրերու գործերէն կանխաւ հրատարակած թարգմանութիւններով՝ (Ճառք Յովհ. Մանդակունւոյ 1871. Յաճախապատում ճառք Ս. Գր. Լուսաւորչի 1872) այս գործին ատակ կը տեսնուի։ Իւր թարգմանութիւնը, որուն աշխատակցած են երկու գիտնական Մխիթարեաններ՝ Հ. Գր. Վ. Գալէմքեարեան եւ Հ. Յակ. Վ. Պարոնչ, բառական է, խնամեալ, իւրաքանչիւր կտոր լաւ կշռուած, եւ այսու հանդերձ՝ ընթեռնլի գերմաներէն գրուած, եթէ ի բաց առնուս քանի մ'անհարթ կտորները։ Կը կարծենք թէ թարգմանիչն այս գործով Աստուածաբաններն ու Մատենագրայոյզ պատմաբանները, որոնց այժմ մատչելի եղաւ բովանդակ հայրախօսական մատենագրութեան մէջ եզական այն ջատագովական գրութիւնը, մեծ շնորհակալութեան պարտական կացոյց։ Շմիդ թարգմանութեանս սկիզբը դրած է Ներածութիւն մը, ուր Եզնկայ վրայ ցայսօր գրուածներուն եւ հայ բնագրին հրատարակութեան վրայ ամբողջական տեղեկութիւն կու տայ։ Կը ցանկայինք սակայն՝ որ կէտ մ'ալ ուշադրութեան առնուած ըլլար, այսինքն գրքին վաւերութեան խնդիրը։ Վասն զի ջատագովական հրատարակութեանս հրապարակ ելլելուն արտաքին պարագաներն այնպիսի են, որ ի հարկէ կասկած մը յառաջ կու գայ՝ թէ մի՛ գուցէ կեղծ գրութիւն մ'ըլլայ։ Բնագիրը մի միակ ձեռագիր մ'ունի, որ իբր 150 տարի յառաջ բնաւ մէկու մը ծանօթացած չէ։ Եւ այս մի միակ ձեռագիրն ալ այնուհետեւ

անհետացած է, հաւանաբար Զմիւռնիոյ 1845ի մեծ կրակին մէջ այրելով։ Սոյն ձեռագրին հնութեան մասին տրամաբանելով միայն կարելի է եզրակացնել՝ թէ Ք.ի 1280 թուականը կը կրէր։ Դարձեալ 1762էն յառաջ բովանդակ Հայ մատենագրութեան մէջ Եզնիկէն կտոր մը բնաւ յառաջ բերուած չէ, եւ նոյն իսկ այն գրութեան գոյութեան վրայ վկայութիւն մը չկայ։ Ուրեմն ասոր արտաքին վկաներ կը պակսին բոլորովին։ Այնու հանդերձ գրութեանս վաւերութեան վրայ բնաւ տարակուսելու չէ. վասն զի այստեղ ներքին պատճառներն այնպէս համոզիչ են, որ վաւերութիւնը մինչեւ իսկ յայտյանդիման կը կացուցանեն։ Այս ներքին պատճառները հիմնովին յառաջ բերած է ժամանակին Սիմոն Վեբեր Տիւբինգէնի Quartalschrift թերթին մէջ (1897, էջ 367—398)։ Սոյն հիմնական յօդուածը կը ծանօթացընէ Շմիդ էջ 5. բայց կը կարծենք թէ իւր ընթերցողներն երախտապարտ ըրած կ՚ըլլար՝ եթէ Վեբերի ցուցումներուն մէկ հոծ ամփոփումն ընէր։ Այս ցուցումները թերեւս կարելի է առաւել բազմացընել մտադիր ընելով՝ որ Եզնիկ արտաքոյ կարգի յաճախ կ՚ակնարկէ Աստուածաշունչի ասորերէն թարգմանութիւնն եւ Եօթանասնից թարգմանութեան հետ ալ յարաբերութեան մէջ է։ Հեղինակը միայն այն ատեն կրնար այսպէս վարուիլ, երբ կարենար ենթադրել՝ որ իւր աստուածաբան ընթերցողներն Աստուածաշունչին թէ՛ ասորի եւ թէ՛ յոյն բնագիրներուն լաւ տեղեակ են։ Ե. դարուն կարելի էր ասիկա, բայց այնուհետեւ՝ ոչ։ Նաեւ միտ դնելու է՝ որ Ջատագովիս գործածած ասորի բնագիրը Պեշիտթայի հետ չի համաձայնիր։ Գէթ հեղինակը Յոբ ԻԶ 7, զոր՝ Գիրք Բ 25 ասորի բնագրէն Հայ թարգմանութեամբ յառաջ կը բերէ, չէր կրնար אלה բայց կարդացած ըլլալ, ինչպէս ունի Պեշիտթա. ապա թէ ոչ՝

թարգմանութիւնն ուրիշ կերպ ըլլալու էր: Դարձեալ ասորի յոդին (Jod) տառադարձութիւնը Հայերէն յով կը կատարէ, ինչպէս Եզն. Գիրք Դ, 7 կը տեսնուի, որ թէեւ Ե. դարու գործ ըլլալու նշան չէ, սակայն յամենայն դէպս հնագոյն ժամանակի մը կը վերաբերի, երբ Հայերէն յ՝ բառի մը սկիզբը տակաւին իբրեւ հագագային չէր հնչուեր: Վաւերութեան անուղղակի ցուցում մըն է նաեւ այն՝ որ հեղինակը բազմաթիւ հեղինակներ գործածած է, ինչպէս ցայժմ ապացուցուած է, (Արիստիդէս, Հիպպողիտ, Մեթոդիոս, Բարսեղ, Եպիփան.) վասն զի ասոնք առանց բացառութեան Ե. դարու Հայրեր են:[1]

Շմիդի թարգմանութիւնն, ինչպէս ըսինք, խնամեալ եւ ճիշդ է: Ներուի մտադիր ըլլալ քանի մը տեղերու՝ որոնց մէջ կը կարծեմ թէ սխալմունք մ'ըլլայ: Եզնիկ Ա. Գիրք 5 (էջ 34) ես սապէս կը թարգմանէի „ja, auch theilbar wäre er (Gott), wenn sie (die Materie) in ihm, wie in einem Orte, wäre“. Ա. 12 (էջ 50) „als Anfang des Bösen bezeichnen wir also den Neid, und zwar den Neid ob der grösseren Ehrung ... und das Böse, ausgegangen vom Ungehorsam des Menschen“. Ա. 19 (էջ 65) „aber obwohl Gott die Macht hatte, seiner Geschöpfe (թէ պէտք է բնագիրը յոքնակի կարդալ՝ յայտնի է յաջորդ ց[illegible] բառէն) Ringkampf mitanzusehen“. Ա. 23 (էջ 76) „schickte er ... die Engel in Menschengestalt nach Sodom ...“ Ա. 28

---

1 Ուրիշ աղբիւր մը, եւ այն՝ ասորերէն գրուած, վերջերս ցոյց տուաւ Ա. Կարրիեր (ի Թերթին Հանդէս Ամսօրեայ, Վիեննա 1900, էջ 183—186): Այս աղբիւրը նաեւ ասորի հեղինակ մը ԺԲ. դարուն՝ Թէոդոր Բարխունի գործածած է: Կը կարծենք թէ Կարրիեր սոսկ մատնացոյց ըրաւ անդրադոյն պիւտերու ճամբան:

(էջ 82) „ein Wahn ist es, dass sie sagen“ (փխնկ. vergeblich ist es). Բ. 3 (էջ 97) „beide sind Qualitäten, die aus Zufälligkeiten hervorgingen“ (դէպք կը կրկնուի վարը Բ. 6 ապահովապէս Zufälligkeit իմաստով, եւ նաեւ Շմիդ նոյնտեղ շատ ճիշդ կը թարգմանէ „Accidens“ բառով). Գ, 7 (էջ 185) կ'ուզէի նով յունարէն νը չիմանալ, այլ հայերէն ն յետադաս մասնիկը, իբրեւ ներկայացուցիչ յունական յօդին։ Եզնիկ οὐρανόν եւ οὐρανοῦի զանազանութիւնն ընել չ'ուզեր, այլ τρίτου եւ τοῦ τρίτουի զանազանութիւնը։

Ի վերջոյ ներուի նաեւ Հրատարակութեան ձեւին վրայ քանի մը դիտողութիւն ընել։ Էջ 19էն սկսող գերմաներէն բնագրին լուսանցքը դրուած են Վենետիկի 1826ի տպագրութեան էջերն ալ։ Ասիկա շատ գործնական բան է։ Գերմաներէն բնագրին եզերքը կայ նաեւ տողերու թուահամարները, որ նոյնպէս շատ գովելի է. բայց այս թուահամարներն իւրաքանչիւր էջին նոր չեն սկսիր հաշուըւիլ, ինչպէս սովորութիւն է, այլ կը շարունակուին անընդհատ՝ նոյն իսկ իւրաքանչիւր Գիրքն ամբողջ, այնպէս որ ջատագովութեանս Ա. Գիրքն 2025 տող ունի։ Տողերու թուարկութեան այս կերպը կարծենք տարօրինակ պիտի գտնեն մեզի հետ ուրիշ ընթերցողներ ալ։ — Մ. Խորենացի ըստ գրոց եւ գլխոց վկայութեան չի բերուիր, այլ նոր Հրատարակութեան եւ թարգմանութեան էջաթիւերով։ Բայց յայտնի է որ սով ընթերցողին դժուարին կ'ըլլայ նոյն տեղը բանալ նայիլ, մանաւանդ որ միշտ միեւնոյն հրատարակութիւնն ալ չի գործածուիր. զոր օր. էջ 67 Վենետիկի 1881ի հրատարակութիւնն յառաջ կը բերուի, իսկ էջ 83 1827ի հրատարակութիւնը։ — Կը կարծենք թէ ուղիղ յօրինուածութեան հակառակ կը գործուի՝ երբ էջ 79

որոշէր բառին մեկնութեան մէջ ոչ թէ բնագիր (Փաւստոս, Մ. Խոր.) վկայութեան կը բերուի, այլ երկրորդական հեղինակներ։ — Աստուածաշունչին վկայութիւնները մեծ խնամով ստուգուած եւ նշանակուած են. այս վկայութիւններէն միայն մէկ երկուքին վրայ դիտողութիւն կ՚ընենք։ Էջ 124 բնագրին խօսքին նկատմամբ՝ թէ թագաւորներու կարգն Յուդայէն սկսեալ կը շարունակուի "մինչեւ ցՄակաբէացիսն", Մակաբայեցւոց գիրքը ցոյց կը տրուի։ Բայց այս ճիշդ չէ, վասն զի Մակաբայեցւոց գրքերուն մէջ մակաբայեցի թագաւորներուն վրայ այլ եւս չի խօսուիր։ Մակ. Ա. Գիրքը կը վերջանայ Յովհ. Հիւրկանոսով։ Բայց ասիկա տակաւին թագաւոր չէր, այլ իւր որդին Արիստաբուղ առաջին անգամ թագաւոր կոչուեցաւ։ Էջ 127 փխնկ. Բ. Մնաց. ԼԶ 22 գնելու՝ յայտնի է որ Եսայ. ԽԳ. 28 գնելու էր։

Tübingen. *P. Vetter.**

„Allgemeines Literaturblatt“, 1. Sept. 1900, Nr. 17, Wien.

## 3.

*(Քննադատութիւն A. Meilletի։)*

Մ՚ատեանս կրկին պատճառաւ արժանի է ծանուցուելու. նախ՝ վասն զի լաւ է, եւ երկրորդ՝ վասն զի կը բովանդակէ երկու թանկագին խոստումներ. այսինքն՝ Մատեանս առաջին հատորն է Հայերէնէ Թարգմանութիւններու շարքի մը, որուն ձեռնարկած է Վիեննայի Մխիթարեան Միաբա-

* Բաց ի այս ընդարձակ քննադատութենէ Պրոֆ. Փէտտէր Եզնկայ սոյն թարգմանութեան վրայ նոյն իմաստով տեղեկութիւն տուած է ի թերթսն՝ Litterarische Rundschau (Freiburg) 1901, Sept. Nr. 9, եւ Theologische Quartalschrift, 1901 էջ 447–8. ԺԱՆ. Թ.

նութիւնը, եւ որուն գիտնական արժէքը ծանօթ է։ Յառաջաբանն ալ կը ծանուցանէ՝ թէ նոյն Միաբանութիւնը բնագիրներու քննական հրատարակութիւններու շարք մ՚ի լոյս պիտի ընծայէ։ Ծանօթ է որ հայ բանասիրութեան համար ամէնէն աւելի կարեւոր են քննական հրատարակութիւններն. արդէն Շմիդ քահանային հրատարակած թարգմանութիւնը կատարուած է... Հ. Գալէմքեարեանի Եզնկայ նոր մէկ հրատարակութեան համար հաւաքած նիւթերու օգնութեամբ, որ հրատարակութեան շուտով լոյս տեսնելը ցանկալի է։

Թէեւ Եզնկայ գիրքը կրօնի պատմութեան տեսակէտով այնչափ հետաքրքրական է, սակայն լաւագոյն թարգմանութիւն մը չգտնուելուն՝ մինչեւ ցայժմ ըստ արժանւոյն ուսումնասիրուած չէր. ամէնքը միաբան կը վկայեն՝ թէ Լըվայեան դը Ֆլորիվալի թարգմանութիւնը բոլորովին անբաւական էր։ Ընդ հակառակն Շմիդի թարգմանութիւնը նշանաւոր է, որ կատարուած է վերջին աստիճանի խնամքով, բարեփոխուած Մխիթարեան Հայրերէն ամէնէն նշանաւորներու աշխատակցութեամբը, մինչեւ կրցաւ Հ. Տաշեան նոյնն յանձնարարել ջերմապէս։ Ինչպէս այս կարգի ամէն աշխատութիւններու մէջ՝ բնական է որ լաւ խուզարկող մը կարենայ գտնել թեթեւ վրիպակներ։ Չենք իմանար, զոր օրինակ, թէ ինչու Շմիդ միշտ Zrovan կը գրէ, եւ ոչ՝ Zruan. Անտարակոյս լաւ կ՚ըլլար ծանօթութիւն մը դնել՝ թէ (թարգմանութեան) էջ 98 վարի նախադասութիւնը՝ Denn auch Zrovan... բնական վիճակի մէջ չէ, եւ անկարելի է կանոնաւոր շարադասութիւն մը կազմել. նոյն տեղը գէթ բառ մը կը պակսի, բնագրին բացատրութիւնն ամէն տեղ իր նկարչական անպաճուճութեամբը ներկայացուած չէ։ Էջ 106 Շմիդ կը թարգմանէ՝ der erste... stösst die anderen... ab, մինչդեռ բնագիրն ունի՝ („առաջին անկեալ սերմն զայլսն

իբրեւ զաւելորդս ի բաց թքանէ,„) le premier ... crache les autres.* Էջ 204 ստուգիւ մտքի հակասութիւն կայ, das neue Testament hält er für fremd dem alten und dem was darin geredet wurde (Նոր կտակարանքն օտար կը համարի հնէն, եւ ասոր մէջ բռուածէն), որ իրապէս ըլլալու է՝ et a celui qui y a parlé (եւ անոր մէջը խօսողէն), ինչպէս մատնանիշ կ'ընէ յոյն բնագիրն՝ որմէ Եզնիկ թարգմանած է, եւ ինչպէս կը պահանջէ հայ բնագիրը ("զնոր կտակարանս օտարոտի համարի ի հնոյն եւ յայնմանէ որ ի նմայն խօսէր„),** վասն զի Նմայն կրնայ այստեղ միայն Նոր կտակարանը ցուցընել, Հին կտակարանը՝ որ այս կտորին

---

* Բնագրին "ի բաց թքանել„ բառին վրայ է խընդիրը. մինչդեռ գերմ. թարգմանութեան մէջ նոյնն այլաբանական իմաստովն առնուած է եւ "ի բաց մերժել, վանել„ թարգմանուած է. մեծայարգ գիտնականն Meillet լաւագոյն կը նկատէ նիւթական իմաստին համապատասխանող cracher, գերմ. ausspucken բառով թարգմանել: ԾԱՆ. Թ.:

** Ուրեմն յարգելի քննադատին համեմատ այս կտորը հասկընալու է՝ "Նոր կտակարանքն օտար կը համարի հնէն, եւ Հին կտակարանին մէջ խօսողէն„: Այս մեկնութիւնն անիմաստ կ'երեւայ. վասն զի Մարկիոն Նոր կտակարանը կ'ընդունի եւ զՅեսու՝ Հին կտակարանին հեղինակը. իսկ Հինն եւ Նորին հեղինակը կը մերժէ, հետեւաբար կարելի չէ որ Հին կտակարանին հեղինակը մերժէ: Ու շատ կարեւորութիւն չունի յարգելի գիտնականին մտադիր ըրած նմայն եւ ամայն ցուցականներու տարբերութիւնը: Եզնիկ ուրիշ շատ տեղեր կը գործածէ զասոնք խառնիխուռն, այսպէս նա ըսուած է փոխանակ սա ըսելու՝ հայ բնագիր էջ 16 տող 11, էջ 76 տող 19-26, էջ 77 տող 18, էջ 172 տող 20–25 եւ այլն:

Յարգելի քննադատն Մէյէ 27 Օգոստոս 1901 թուակիր թղթեկովը կը ծանուցանէ մեզ, թէ ինքը յիշեալ խօսքով կ'ուզէր ըսել՝ Հին կտակարանին մէջ խօսողէն: ԾԱՆ. Թ.:

մէջ յիշուած է, պէտք էր նոյն բառով ցուցուիլ։ — Ինչպէս կը տեսնուի՝ այս քննադատութիւնները շատ չնչին բաներ են եւ նուազ կարեւորութիւն ունին։

Բնագրին կցուած ծանօթութիւններն ալ մեծ ծառայութիւն պիտի մատուցանեն, բնագրի տարբերութիւններուն մէկ մասը նշանակուած է ծանօթութիւններու մէջ, որով կարելի է աւելի համբերութեամբ սպասել խոստացուած հրատարակութեան։ Ծանօթութիւններուն մէջ կը գըտնենք նաեւ Գալէմքեարեան, Թորոսեան, Գարեգին եւ Տաշեան Հայրերուն համեմատ նշանակուած այն յոյն հեղինակները, զորոնք Եզնիկ թարգմանած կամ որոնց նմանած է։ Պատմական եւ մեկնողական ծանօթութիւնները նուազ կարեւորութիւն ունին, եւ ցոյց չեն տար միշտ ընդարձակ հմտութիւն մը, եւ ոչ ալ խորաթափանց քննադատութիւն մը։ Օրինակի համար հետաքրքրական էր յիշատակել էջ 89 եւ յջրդ. որ արդէն Նէօլդէկէ ցոյց տուած է (Festgruss an R. von Roth, էջ 34) թէ Եզնիկայ յիշատակած զրուանեան վարդապետութեան համառօտութիւնը միաբան է ասորի բնագիրներուն. Կարրիերի վերջին անգամ գտած Բար Խունիի բնագիրը, որ յաճախ բառ առ բառ կը համապատասխանէ Եզնիկայ բնագրին, պայծառապէս հաստատեց Նէօլդէկէի գիտուն արժէքը։ Էջ 93 ծանօթութեան մէջ Շմիդ ցոյց կու տայ եւ կը թարգմանէ Եղիշէ պատմագիրը, ուր աւանդուած են զրուանեան վարդապետութիւնները, բայց Եզնիկայ եւ Եղիշէի էական մէկ տարբերութեան մտադիր չ'ըներ։ Եզնիկայ քով Որմիզդ եւ Արհմն մօր մ'արգանդէն կ'ելլեն, իսկ Եղիշէի քով նոյն իսկ Զրուանայ արգանդէն։ Եզնիկայ աւանդածն ասորի հեղինակներու քով ալ կը գտնուի, իսկ Եղիշէի աւանդածը Թէոդորոս Մոպսուեստացւոյ քաղծանօթ բնագրին մէջ. այստեղ չմիաբանութիւն մը կայ, որ

կը դժուարացընէ մասնաւորապէս երկուքին աղբիւրներն որոշել: Շմիդ չէ թէ միայն այս կէտը չէ լուսաւորեր, այլ եւ Եղիշէն սխալ թարգմանելով կը ջնջէ նոյնը· Als auch der andere Sohn geboren war (երբ միւս որդին ալ ծնաւ) կը գրէ, մինչդեռ բնագիրն ունի՝ lorsqu'il (Zruan) eut enfanté l'autre fils („իբրեւ ծնաւ զմեւս եւս որդի„, [երբ զմիւս որդին ալ ծնաւ (Զրուան)]), որուն դէմ առարկութիւն մ'ընել կարելի չէ:

Այս մասնական կէտերն որպիսի ալ ըլլան, թարգմանութիւնն ընդհանրապէս վստահութիւն պէտք է որ ներշնչէ եւ պիտի ըլլայ Եզնկայ վրայ կատարուելի ուսումնասիրութիւններու խարիսխը, որ կը պակսէր: *A. Meillet.*

Revue critique, 12 nov. 1900, Nr. 46. p. 374—376.

## 4.

*(Քննադատութիւն* S. Weber*ի:)*

Անցեալ ամառն հասունացուց մատենագրական ձեռնարկութեան մը առաջին պտուղները, որ ըստ իս իրաւունք ունի կաթողիկեայ աստուածաբաններէն սրտագին ընդունելութիւն գտնելու: Ձեռնարկութիւնս է՝ „Մատենադարան մատենագրութեան նախնի Հայոց գերմ. թարգմանութեամբ, հրատարակեալ Վիեննայի Մխիթարեան Միաբանութենէն„, որուն առաջին հատորն Օգոստ. ամսոյն մէջ լոյս տեսաւ:

Առաջին անգամը չէ որ հին հայ մատենագրութեան մէկ բնագիրը Գերմանացիներուն կը ներկայացուի թարգմանութեամբ մը: Մինչդեռ յԻտալիա՝ Cappelleti, Teza, ի Գաղղիա՝ Le Vaillant de Florival, Langlois, St. Martin, յԱնգղիա՝ Whiston են պատմական եւ աստուածաբանական գործերը թարգմանութեամբ մատչելի ըրին, ի Գերմանիա՝ Welte, Vetter, Lauer, Schmid, Steck,

Neumann արդիւնաւոր եղան Հայերու հին մատենագրութիւնը՝ Փ. Բիւզանդացի, Մ. Խորենացի, Ց. Մանդակունի եւն, թարգմանութեամբ ծանօթացնելով։

Բայց դեռ շատ երկեր կան, որոնք թարգմանութեան կը սպասեն։ Այսօր ձեռնարկելն եւ ի գլուխ հանելը գործն է այն "Մատենադարանին", որուն այժմ ձեռնարկուած է եւ որուն Ա. Հատորը լոյս տեսած է։ Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան Ցարգ. Հայրերը՝ իրենց հայրախօսական-ջատագովական մատենագրութեան իբրեւ դուռն ընտրած են դասական երկ մը, այն է Եզնկայ Վ. ի "Ընդդէմ աղանդոց"։ Թարգմանութիւնը յանձնուած է գերմանացի հայագէտի մը, որ կանխաւ արդէն նոյնպիսի երկու աշխատութիւններով աստուածաբան հասարակութեան ներկայացած է, որ է՝ Յովհ. Միքայէլ Շմիդ, ժողովրդապետ ի Ֆրոնշտետէն (Պաւիերա) եւ Պատուոյ կանոնիկոս։ Տպագրութեան թոյլտուութիւն տուած է Պասաուի Եպիսկոպոսն, իսկ տպագրիչ եւ հրատարակիչ է Վիեննայի Մխիթ. Միաբանութիւնը։

Այս գիտնական քահանային նախորդ թարգմանութիւնները բաւական յառաջ լոյս տեսած են։ 1871ին ի Ռէգէնսբուրգ հրատարակած է Յովհ. Մանդականւոյ ճառերը, որ Ե. դարուն Հայերու կաթողիկոսն էր։ Այս արդիւնաւոր գործին յաջորդեց 1872ին նոյնպէս ի Ռէգէնսբուրգ՝ Հայերու Ս. Գր. Լուսաւորչին "Յաճախապատում" գիրքը, հաւաքածոյ մը՝ որ թէեւ հնագոյն հայ եկեղեցական մատենագրութեան կը վերաբերի, որուն սակայն հեղինակը յիշեալ Սուրբը չէ, այլ թերեւս Մեսրոպ։ Այս աշխատութիւններուն համար Վիեննայի գիտնական Մխիթարեանները անուանեցին զինք "նշանաւոր հայագէտ"[1], որ ատակ նկատուեցաւ թարգմանչական նոր ձեռնարկութեան սկիզբն ընե-

[1] Հանդէս Ամսօրեայ, Վիեննա, 1900 էջ 179։

լու։ Այս աշխատութիւնը կատարուած է խնամով, շրջահայեցութեամբ եւ ըստ ամենայն պահանջմանց։

Ով որ հայերէնի շրջանին մէջ հետամուտ եղած է հայրագիտական հետազօտութեանց, գիտէ թէ վերջին քանի տարիներու մէջ հայ հայրախօսութեան համար ինչպիսի՛ կենդանի եռանդ ցոյց տրուած է։ Արեւմտեան գիտուններ ի Գերմանիա եւ ի Գաղղիա ասոր թէեւ ռահվիրայքն եղած են, բայց նաեւ հայազգի գիտնականներ այս խնդիրներու մէջ սրամիտ եւ նախապաշարումէ ազատ հետազօտութիւններ կատարած են։ Հայերու գիտնական լրագիրներն՝ ինչպէս Հանդէս Ամսօրեայ, զոր Վիեննայի Մխիթարեանք կը հրատարակեն, Վենետիկի Մխիթարեաններու Բազմավէպ, երկուքն ալ արդի հայերէն, Մշակ, Արարատ, եւ այլն, կը բովանդակեն հայ հին մատենագրութիւններու ժամանակին, վաւերութեան եւ աղբիւրներու մասին հետազօտութիւններու առատ թիւ մը. Նոյնպէս առատ է այն հետազօտութիւններուն թիւն՝ որոնք իբրեւ ինքնակաց գործեր արդի հայերէն, նաեւ ըստ մասին ռուսերէն լեզուներով հրատարակուած են։

Այս պարագաներու շնորհիւ կրցած է թարգմանիչն Եզնկայ մասին կանխաւ կատարուած հետազօտութիւններու վրայ կառուցանել իր երկն, եւ հաստատուն քայլերով իր ճամբուն վրայ յառաջանալ. Նաեւ այս պարագային շնորհիւն է՝ որ այս երկն եղած է այնպիսի գործ մը՝ որ անխոնջ շրջահայեցութիւն եւ փոյթեռանդն յօրինումն կը պահանջէ։ Վիեննայի Մխիթ. Միաբանութիւնն այս մասին իրեն օգնական եղած է, եւ ի մասնաւորի Միաբանութեան հարուստ մատենադարանին դռները բացած է, այնպէս որ Հ. Տաշեանի հեղինակական վճիռն այն եղած է, թէ այս գործն ամէն կողմանէ գոհացուցիչ է[1]։

Գործս հետեւեալ եղանակաւ կազմուած է։

---

1 Հանդէս 1900, էջ 179։

Սկիզբը դրուած նիւթոց ցանկը գաղափար մը կու տայ Եզնկայ ճառած նիւթերուն վրայ (էջ I—X)։ Ասոր կը յաջորդէ Հայրախօսական Ներածութիւն մը, որուն մէջ Եզնկայ վրայ ամէն գրուածներէն օգտուելով ջատագովական երկիս ընդհանուր եւ աստուածաբանական տեսակէտէ ունեցած նշանակութիւնը ցոյց կը տրուի։ Այս հաւաքման մէջ հեղինակին կենսագրութիւնը համառօտիւ դրուած է. ցոյց կը տրուին ջատագովութեանս աղբիւրները, նկատողութեան կ'առնուին բնագրին ձեռագիրն եւ հրատարակութիւնները (էջ 1—18)։ Ասոր կը յաջորդէ թարգմանութիւնը (էջ 18—205)։ Եզերաց վրայ դրուած արաբացի թուանշանները ցոյց կու տան հայ բնագրին Վենետիկի 1826ի տպագրութեան էջերը. Նոյն տեղ դրուած են նաեւ Ս. Գրոց տեղիքը։ Բնագրին տակ դրուած բազմաթիւ ծանօթութիւններով աշխատասիրողը բնագրին մասին մեկնութիւններ կու տայ։ Գիրքը կը փակէ (էջ 205—209) Եզնկայ գործածած Ս. Գրոց տեղեաց պայծառ մէկ ցուցակը։

Եզնկայ ջատագովութեան արժէքին վրայ խօսած են Himpel ի Kirchenlexikon, եւ Vetter ի Հայրախօսութեան Nirschlի։ Նաեւ Bardenhever իր Հայրախօսութեան մէջ (էջ 550) Եզնկով զբաղած է։ Տողերս գրողն ալ Katholikի մէջ 1898 I, էջ 214—230, 311—325, ասոր բովանդակութեան վրայ տեսութիւն մը գրած է։ ... Հ. Գալէմքեարեան, որ այս թարգմանութեան սկզբնապատճառն եղած է, գիտնոց շրջանին մէջ շատ զգացուած պէտք մը լրացուցած է։ Holtzmann եւ Krügerի հրատարակած բողոքական աստուածաբանութեան աստուածաբանական տարեկան տեղեկագրին մէջ արդէն 1898ին այս "կարեւոր գործին" մէկ թարգմանութեան հրատարակութիւնը հարկաւոր կը հռչակուէր[1]։

---

[1] Էջ 245։

ԱՀաւասիկ այս թարգմանութիւնը, եւ ընթերցողը պիտի խոստովանի՝ որ այս գործը քրիստոնէական Հնութեան եւ Հին քրիստոնէութեան մտաւոր կեանքին Հետամուտ եղողին շատ թանկագին ծանօթութիւններ կու տայ, վասն զի զինքը կը փոխադրէ այն ճակատամարտին մէջ, ուր Հեթանոսական կրօնական սնոտիապաշտութեանց, Հեթանոսական փիլիսոփայութեան, պարսկական մոգակրօնութեան եւ մարկիոնականութեան դէմ մարտ կը մղուէր։ Այս առթիւ Եզնիկ յաճախ կը ներկայացնէ չարին սկզբան եւն խնդիրներուն դէմ Հնագոյն քրիստոնէական պատասխաններուն վերջին մնացորդները, զորոնք իւր երկին մէջ ամփոփած եւ առով կորստենէ պահած է։ Բայց նաեւ բնութեան եւ մարդուն կեանքին վրայ քրիստոնէաբար խորհելու այլեւայլ չքնաղ ծաղիկներ կը ներկայացնէ քրիստոնէական Հաւատոյ սրամիտ փաստաբանը, որուն կարողութիւնն երկին բովանդակութեան մէջ կը փայլի պայծառապէս, այնու որ իւր լեզուն դասական Հայերէնի ազնուագոյն օրինակն է։

Եկեղեցւոյ Հայրերու Մատենադարանը, զոր Raithmayr եւ Thalhofer ի Կեմպտէն Հրատարակեցին, կաթոլիկեայ եկեղեցականաց կողմանէ ջերմ ընդունելութիւն գտան։ Վիեննայի Մխիթ. Միաբանութեան մեզի մատուցածը՝ սոյն Հաւաքածոյին մասնական մէկ ճիւղն, ամբողջացուցումն եւ կատարելագործումն է։ Անոր Համար տեղեկագրողս կը կարծէ թէ պարտական էր տալ այս տեղեկութիւնները քաՀանաներու եւ եկեղեցական մատենադարաններու վերակացուներուն, որոնք ունին յիշեալ Հաւաքածոյն եւ նոյնն ամբողջացնել կ'ուզեն։

... Ոչ թէ այժմ կը ծնանի, այլ կը զօրանայ եւ կը սաստկանայ Հայ ազգին նկատմամբ տածուած Համակրութիւնը, թէեւ անոր անցեալը,

*եւ քրիստոնեայ անուան համար գործած բարեհամբաւ գործերն ու կրածներն ուրիշ անգամներէ աւելի կը ծանօթանան։*

*Երանի՜ թէ այս “Մատենադարանի„ հրատարակութիւնը, զոր ի լոյս կ'ընծայէ այն յարգելի Միաբանութիւնը՝ որ իւր ազգին եկեղեցական միութեան համար այնչափ աշխատած է եւ կ'աշխատի, այն պտուղն յառաջ բերէ՝ որ հայ եկեղեցին մեր ազգին մէջ գտնէ այն իրաւացի յարգութիւնը, որ ըստ մտաց Լեւոն ԺԳ. Քահանայապետին է, եւ որ եկեղեցական միութեան խարիսխը պիտի ըլլայ։*

Freiburg i. Br. *Prof. Dr. S. Weber.*

„Oberrheinisches Pastoralblatt“ 1900, Nr. 24, S. 351—353.

